# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8 | ՕԳՈՍՏՈՍ · 1966
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание









# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ

ՍՄԿԿ XXIII համագումարի արդյունքները, մի համագումար, որը լենինյան սկզբունքայնությամբ և գործարարությամբ որոշեց առաջիկա տարիներին ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրները, ջերմ հավանությամբ ընդունվեցին սովետական ամբողջ ժողովրդի կողմից: Համագումարի որոշումները քաղաքական ու աշխատանքային հսկայական վերելք առաջացրին երկրում, ե՛լ ավելի ուժեղացրին սովետական մարդկանց հայրենասիրական հպարտության կզացմունքը, նրանց ինտերնացիոնալ համերաշխությունը սոցիալիզմի երկրների ժողովուրդների, ամբողջ աշխարհի կոմունիստների, իմպերիալիզմի դեմ բոլոր մարտնչողների հետ: ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջերս տեղի ունեցած ընտրություններում միահամուռ կերպով իրենց ձայնը տալով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին, մեր երկրի աշխատավորները արտահայտեցին իրենց լիակատար հավանությունը կոմունիստական կուսակցության քաղաքականությանը, իրենց անսասան կամքը՝ պայքարելու կուսակցության XXIII համագումարի որոշումների կենսագործման, սովետական հայրենիքի հետագա բարգավաճման համար:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, որը հիմնադրվել է մեծ Լենինի կողմից, հայրենասերների կուսակցություն է, ինտերնացիոնալիստների կուսակցություն: Նա իր գործունեության առաջին իսկ քայլերից ելնում է այն բանից, որ բանվոր դասակարգի ազգային հպարտությունը նախ և առաջ նրա հեղափոխականության մեջ է, որ յուրաքանչյուր երկրի բանվոր դասակարգի կողմից ազգային շահերի ճիշտ ըմբռնումը զուգադիպում է նրա սոցիալիստական շահերին, մյուս բոլոր երկրների բանվոր դասակարգի շահերին:

Կոմունիստական կուսակցությունը Ռուսաստանի ճակատագրի համար իր վրա պատասխանատվություն է վերցրել այն կրիտիկական պահին, երբ տիրապետող դասակարգերն ու նրանց քաղաքական կուսակցությունները, երկիրը ծայրահեղ անկման և ընդհանուր քայքայման հասցնելով, նրան դրեցին ազգային աղետի եզրին: Կոմունիստական կուսակցությունը, ժողովրդական մասսաներին հանուն սոցիալիզմի պայքարի հանելով, երկիրը փրկեց աղետից: Մեր երկրի աշխատավորները Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով նվաճեցին իրենց իսկական, սոցիալիստական հայրենիքը: Ի հայտ եկավ հայրենասիրության որակապես նոր տիպ՝ սովետական հայրենասիրությունը:

Ի հակադրություն իմպերիալիստական բուրժուազիայի կեղծ հայրենասիրության, նոր տիպի հայրենասիրության մեջ մարմնավորված է աշխատավորների անսահման սերը դեպի սոցիալիստական հայրենիքը, նրա հզորությունը բազմապատկելու ձգտումը՝ հանուն իր երկրի շահերի, համաշխարհային սոցիալիզմի զարգացման շահերի:

Պայքարի այն փառապանծ ուղին, որ անցել է սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հայրենասիրական և ինտերնացիոնալիստական պարտքի կատարման վառ օրինակ է:

Լենինի առաջնորդությամբ մեր կուսակցությունը աշխատավորներին հասցրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակին, որը հիմնահատակ սասանեց համաշխարհային կապիտալիզմի ամբողջ շենքը, կայծեր արձակեց երկրագնդի բոլոր երկրները, մարդկության պատմության նոր դարաշրջան բացեց: Ջախջախելով ինտերվենտներին և սպիտակգվարդիականներին, սովետական մարդիկ պաշտպանեցին Հոկտեմբերի նվաճումները, բոլոր երկրների ու մայրցամաքների ժողովրդական լայն զանգվածների մեջ ամրապնդեցին հավատը պրոլետարական հեղափոխության անհաղթահարելի ուժի նկատմամբ: Սովետական իշխանության գոյության հենց առաջին, անհավատալիորեն ծանր տարիներին դրսևորվեց սովետական հայրենասիրության մեծ ուժը: 1920 թվականի դեկտեմբերին հանդես գալով սովետների VIII համագումարի ՌԿ (բ) Կ ֆրակցիայում, Վ. Ի. Լենինը ասել է՝ «Այն մարդու հայրենասիրությունը, որը ավելի լավ կհամարի երեք տարի սոված մնալ, քան Ռուսաստանը հանձնել օտարերկրացիներին, իսկական հայրենասիրություն է, առանց որի մենք երեք տարի չէինք դիմանա: Առանց այդ հայրենասիրության մենք չէինք կարող պաշտպանել Սովետական հանրապետությունը... Դա լավագույն հեղափոխական հայրենասիրություն է (Երկեր, հատ. 42, էջ 203, ռուս. հրատ.):

Լենինյան կուսակցության ղեկավարությամբ մեր երկրում վերացվեցին շահագործողական դասակարգերը, կառուցվեց սոցիալիզմ, ստեղծվեց ու ամրապնդվեց բանվոր դասակարգի ու գյուղացիության անխախտելի դաշինքը, սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը: Մարդկությունն ստացավ իրականապես գոյություն ունեցող սոցիալիստական հասարակություն և սոցիալիզմի կառուցման մասին փորձով ստուգված գիտություն: Գովերգելով նոր, կոմունիստական կյանքի հերոիկան, Վլադիմիր Մայակովսկին գրել է՝

*Ես նրանց հետ եմ,*
*որ կառուցելու դուրս եկան*
*Համատարած տենդում*
*առօրյայի,*
*Փառաբանում եմ հայրենիքս,*
*որ հիմա կա,*
*Բայց երիցս,*
*որը պիտի լինի:*

Լենինի դրոշով, կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովուրդը հայրենական մեծ պատերազմում հաղթանակ տարավ չարանենգ թշնամու՝ ֆա-



շիզմի դեմ: Ֆաշիստական Գերմանիայի հարձակումը Սովետական Միության վրա, մի հարձակում, որ նախապատրաստված էր ամբողջ համաշխարհային ռեակցիայի կողմից, իմպերիալիզմի փորձն էր՝ զենքի ուժով ոչնչացնելու աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը: Ֆաշիզմի դեմ մղած դաժան պայքարում սովետական ժողովուրդը և նրա զինված ուժերը արիաբար պաշտպանեցին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը: Թշնամու դեմ տարած հաղթանակի օրինաչափությունը պայմանավորված է սոցիալիստական հասարակարգի առավելություններով, կոմունիստական կուսակցության ղեկավար դերով, սովետական մարդկանց մեծ հայրենասիրությամբ, մեր պետության գերազանց ռազմական կազմակերպվածությամբ: Սովետական ժողովուրդը պատվով կատարեց իր ազատագրական միսիան, վճռական ավանդ մտցրեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից ամբողջ մարդկությունը փրկելու գործում: Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներ պոկվեցին կապիտալիզմի կապանքներից:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ժողովուրդը իր կուսակցության առաջնորդությամբ վերականգնեց քայքայված տնտեսությունը, նոր, մեծ հաջողությունների հասավ էկոնոմիկայի, գիտության, տեխնիկայի, կուլտուրայի զարգացման գործում, ձեռնամուխ եղավ կոմունիստական հասարակության ծավալուն կառուցմանը:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին կարևոր քայլ հանդիսացավ յոթնամյա պլանի կատարումը: Այդ ուղղությամբ նոր քայլ է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանը: Նոր հնգամյակի տնտեսական և սոցիալական նշանակությունը, ինչպես և նախորդ սովետական պլաններինը, մեր երկրի սահմաններից շատ հեռու է անցնում: Երկրագնդի բոլոր անկյուններում Սովետական Միության բարեկամները նոր հնգամյա պլանում տեսնում են այն ժողովրդի է՛լ ավելի մեծ հաջողությունների գրավականը, որը պատմության մեջ առաջին անգամ կառուցեց սոցիալիզմ և վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմ:

Համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ Սովետական Միության բաժինը կազմում է գրեթե 20 տոկոս: Սոցիալիստական էկոնոմիկայի և, առաջին հերթին, նրա առավել պրոգրեսիվ ճյուղերի աճման կայուն բարձր տեմպերը ՍՍՀՄ-ի, ամբողջ սոցիալիստական համագործակցության հզորության անշեղ աճի հուսալի երաշխիքն են: 1950 թվականի համեմատությամբ մեր երկրի արդյունաբերական արտադրանքը անցած տարում աճեց մոտավորապես 4,6 անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ երկու անգամ: Դա նշանակում է, որ Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների արդյունաբերական արտադրության մակարդակների միջև եղած ճեղքվածքը զգալիորեն կրճատվեց:

Կառուցելով կոմունիզմ, սովետական մարդիկ ապագայի ճանապարհն են հարթում ամբողջ մարդկության համար: Սովետական հայրենասիրությունն աճում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա: Այն հենվում է ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, բոլոր երկրների բանվոր դասակարգի, աշխատավորների հեղափոխական համերաշխության վրա: Իր ամբողջ գործունեության մեջ զուգակցելով հայրենասիրական և ինտերնացիոնալ խնդիրների լուծումը, կոմունիստական կուսակցությունն ինքը հանդիսանում է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության գաղափարների կենդանի մարմնավորումը: Նրա շարքերում են մեր երկրի 131 ազգերի ու ազգությունների լավագույն զավակները:

ՍՍՀՄ ժողովուրդների համախմբվածությունը միասնական եղբայրական ընտանիքում՝ կոմունիստական կուսակցության և սովետական իշխանության մեծագույն նվաճումներից մեկն է:

Մենք ցանկանում ենք ազգերի իրոք կամովին դաշինք, ընդգծում էր Վ. Ի. Լենինը, բնորոշելով սովետական հանրապետությունների եղբայրական դաշինքի ստեղծման ու ամրապնդման ուղիները, այնպիսի դաշինք, որը թույլ չտար ոչ մի բռնություն մեկ ազգի կողմից մյուսի նկատմամբ, որը հիմնված լիներ ամենալիակատար վստահության վրա, եղբայրական միասնության հստակ ըմբռնման, միանգամայն կամովին համաձայնության վրա:

Մեր կուսակցությունն անդադրում աշխատել և աշխատում է այդպիսի դաշինքի ամրապնդման և կատարելագործման համար: Նախկինում ճնշված ազգությունների աշխատավորները սեփական փորձի հիման վրա համոզվեցին, որ սովետական իշխանությունը ժողովուրդների ազատության ու իրավահավասարության միակ և հաստատուն երաշխիքն է: Հիմնված լինելով մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրության, բարեկամության և համագործակցության վրա, ՍՍՀՄ-ն դարձել է անհաղթելի ուժ:

ՍՍՀՄ-ի պատմական փորձը ցույց է տալիս, թե ինչպիսի հսկայական հաջողությունների կարող են հասնել ժողովուրդները սոցիալիստական ազգերի միասնական ընտանիքում: Մեր հզոր երկրում գոյացել է նոր, տարբեր ազգությունների մարդկանց մի հաստատուն ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը: Սովետական բոլոր մարդիկ միավորված են ընդհանուր տնտեսական ու քաղաքական կենսական շահերով, նրանք ունեն մեկ նպատակ՝ կոմունիզմի կառուցումը: Տարբեր ազգությունների սովետական մարդկանց մոտ ստեղծվել են հոգևոր կերպարի ընդհանուր գծեր, որոնք առաջացել են նոր տիպի հարաբերություններից և իրենցում մարմնավորում են ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների լավագույն տրադիցիաները:

Միավորելով իրենց նյութական ու աշխատանքային միջոցները, մեր բազմազգ երկրի ժողովուրդները լենինյան կուսակցության ղեկավարությամբ պատմականորեն կարճ ժամանակամիջոցում հաղթահարեցին դարավոր հետամնացությունը, վերջ տվին երբեմնի տնտեսական ու կուլտուրական անհավասարությանը: Ռուս ժողովրդի հսկայական օգնությամբ նախկինում հետամնաց շատ ժողովուրդներ, շրջանցելով զարգացման կապիտալիստական ստադիան, եկան դեպի սոցիալիզմ: Ներկայումս սովետական բոլոր ժողովուրդները չտեսնված բարգավաճման են հասել կյանքի բոլոր բնագավառներում:

Վերցնենք, օրինակ, Ուզբեկստանը: Ցարական Ռուսաստանի հետամնաց, ֆեոդալական-նահապետական կացութաձև ունեցող այդ երբեմնի ծայրամասը դարձել է մի ծաղկուն հանրապետություն, որի զարգացած արդյունաբերության ու առաջավոր գյուղատնտեսության արտադրանքները արտահանվում են աշխարհի 71 երկրներ: Ուզբեկական ՍՍՀ-ն, որի բնակչությունը ոչ հեռավոր անցյալում գլխովին անգրագետ էր, ներկայումս գիտա-տեխնիկական օգնություն է ցույց տալիս Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երիտասարդ զարգացող պետություններին, իր բուհերում ուսուցանում է այդ երկրների երիտասարդներին, կուլտուրական կապեր է պահպանում 91 երկրների հետ:

Զարգացած սովետական սոցիալիստական հանրապետություն է դարձել նաև Կիրգիզիան: Հանրապետության արդյունաբերական արտադրանքը արտահանվում է աշխարհի 50 երկրներ: Կիրգիզական ՍՍՀ-ի յուրաքանչյուր քառորդ բնակիչը ունի բարձրագույն կամ միջնակարգ կրթություն: Այստեղ աշխատում են գիտությունների մոտ հազար դոկտորներ և թեկնածուներ: Հանրապետության յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում են 74 բժիշկ և միջին բուժաշխատող:



ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության միասնական սիստեմում հաջողությամբ զարգանում է բոլոր միութենական հանրապետությունների էկոնոմիկան: Կառուցվում են նոր ձեռնարկություններ, էլեկտրակայաններ, անց են կացվում երկաթուղիներ, խողովակաշար ուղիներ, կառուցվում են նոր բնակելի թաղամասեր, ամբողջ քաղաքներ: Շինարարական հրապարակներ՝ ահա մեր հայրենիքի ժամանակակից տիպիկ համայնապատկերը Մոսկվայից մինչև ամենածայրամասերը:

Ընդհանուր միութենական շահերը յուրաքանչյուր հանրապետության շահերի հետ հարմոնիկ կերպով զուգակցելու հոգատարությունը ՍՄԿԿ ուշադրության կենտրոնում է: Ընդսմին մեր կուսակցությունը մշտապես ղեկավարվում է Վ. Ի. Լենինի այն ցուցումով, որ տարբեր ազգերի շահերի նկատմամբ ցուցաբերվող հսկայական ուշադրությունն է միայն ապահովում սովետական ժողովուրդների է՛լ ավելի մերձեցումը, նրանց փոխադարձ վստահությունն ու եղբայրական բարեկամությունը:

Նոր հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվները, կանխորոշելով բոլոր միութենական հանրապետությունների էկոնոմիկայի և կուլտուրայի է՛լ ավելի հզոր վերելքը, նախատեսում են, որ արդյունաբերական արտադրանքի ծավալը ՌՍՖՍՀ-ում, Ուկրաինական, Լատվիական և Էստոնական ՍՍՀ-ներում կաճի մոտավորապես 1,9 անգամ, Վրացական, Ադրբեջանական, Ուզբեկական, Կիրգիզական և Թուրքմենական ՍՍՀ-ներում՝ 1,6 անգամ, Բելոռուսական, Ղազախական, Լիտվական և Մոլդավական ՍՍՀ-ներում՝ 1,7 անգամ, Տաջիկական և Հայկական ՍՍՀ-ներում՝ 1,8 անգամ:

ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական կապերը դարձել են այնքան սերտ և ամուր, որ այժմ մեզ մոտ չկա մի հանրապետություն, որն իր գործունեության պտուղներից բաժին չհանի մյուս հանրապետություններին և, իր հերթին, չօգտվի նրանց աշխատանքի պտուղներից: Համատեղ օգտագործվում են բնական հարստություններն ու էներգետիկ սիստեմները, տրանսպորտային գծերն ու ոռոգիչ կառուցվածքները: Սովետական ժողովրդի արտադրական կոոպերացիան և եղբայրական փոխադարձ օգնությունը է՛լ ավելի մեծ չափով զարգացնելու օբյեկտիվ տենդենցը բխում է բուն կյանքից: Աշխատանքի ընդհանուր միութենական բաժանման մեջ՝ միութենական հանրապետությունների մասնագիտացման հիման վրա, այդպիսի սոցիալիստական կոոպերացիայի խորացումն ու կատարելագործումը մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևոր պայմանն է:

Վերջին ժամանակներս տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման բնագավառում միութենական հանրապետությունների դերը է՛լ ավելի է բարձրացել: Հանրապետությունների պետպլանները զբաղվում են ժողովրդատնտեսական պլանների մշակումով՝ նպատակ ունենալով կոմպլեքսայնորեն օգտագործել ունեցած միջոցները: Ելնելով յուրաքանչյուր միութենական հանրապետության տնտեսական առանձնահատկություններից և կոմպլեքսային զարգացման հնարավորություններից, այդ պլանները նախատեսում են է՛լ ավելի ամրապնդել ու կատարելագործել տնտեսական կապերը հանրապետություն-

ների միջև, հաշվի են առնում ՍՍՀՄ բոլոր եղբայրական ժողովուրդների շահերը
և ամբողջությամբ վերցրած՝ պետության շահերը:

Գնալով ավելի ինտենսիվ է դառնում հոգևոր արժեքների փոխանակությու-
նը սովետական հանրապետությունների միջև, որպիսի հանգամանքը է՛լ ավելի
է ամրապնդում ազգային կուլտուրաների ինտերնացիոնալ հիմունքը, նպաստում
սովետական սոցիալիստական ազգերի հոգևոր սերտ մերձեցմանը: Սովետա-
կան կուլտուրան առաջավոր, ինտերնացիոնալ կուլտուրա է: Այն հիմնված է
գաղափարական ընդհանրության վրա, տոգորված է հայրենասիրության ակ-
նիվ պաթոսով, պայքարով՝ հանուն կոմունիզմի գործի, խաղաղությամբ ու բա-
րեկամությամբ՝ ժողովուրդների միջև:

Սովետական սոցիալիստական բոլոր ազգերի բարգավաճումը տեղի է
ունենում մեկ բազմազգ պետության մեջ նրանց է՛լ ավելի սերտ մերձեցման հի-
ման վրա: Միևնույն ժամանակ ազգերի մերձեցումը արագանում է նրանց էկո-
նոմիկայի և կուլտուրայի բազմակողմանի ծաղկմամբ ու բարգավաճմամբ: Դրանք
կոմունիզմի ուղիով ընթացող սոցիալիստական ազգերի կարգացման փոխա-
դարձաբար կապված, միասնական պրոցեսի երկու պրոգրեսիվ կողմերն են:

XXIII համագումարում, ինչպես նաև միութենական հանրապետությունների
կոմկուսակցությունների համագումարներում ընդգծվեց, որ կուսակցական կազ-
մակերպությունները պետք է չթուլացող պայքար մղեն սոցիալիզմին թշնամի
ռեակցիոն պրոպագանդայի՝ նացիոնալիզմի ապականիչ գաղափարներն «ար-
տահայտելու», մեր երկրի ժողովուրդների միջև անբարյացակամություն սերմա-
նելու, սոցիալիստական համագործակցության երկրների միջև սեպ խրելու փոր-
ձերի դեմ: Համագումարը բոլոր կուսակցական կոմիտեներին պարտավորեցրեց
այսուհետև ևս անշեղորեն կենսագործել լենինյան ազգային քաղաքականությու-
նը, սովետական բոլոր մարդկանց դաստիարակել սովետական հայրենասիրու-
թյան և ՍՍՀՄ ժողովուրդների լավագույն, առաջադիմական ազգային տրադի-
ցիաները հարգելու ոգով, բոլոր եղբայրական սոցիալիստական երկրների ժո-
ղովուրդների, ամբողջ աշխարհի աշխատավորների հետ բարեկամության ոգով,
համառ պայքար մղել նացիոնալիզմի և շովինիզմի ամեն մի դրսևորման դեմ: Կո-
մունիստներին, բոլոր աշխատավորներին դաստիարակելով սովետական հայրե-
նասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, կուսակցական
կազմակերպությունները պետք է նրանց մեջ անհանդուրժողականություն ար-
մատավորեն ազգայնական էգոիզմի, տեղայնության մնացուկների նկատմամբ:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը իր մեջ մարմնավորում է ժողովուրդ-
ների եղբայրության ու համագործակցության, խաղաղության համար մղվող պայ-
քարի գաղափարները, բայց նա չի հանգում այդ գաղափարներին: Ինտերնա-
ցիոնալիզմի մյուս բոլոր տեսակներից պրոլետարական ինտերնացիոնալիզմի
որակական տարբերությունը այն է, որ նա արտահայտում է մարդկային պատ-
մության մեջ ամենաառաջավոր դասակարգի՝ բանվոր դասակարգի արմատական
շահերը: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության և քա-
ղաքականության բուն էությունն այն է, որ բանվոր դասակարգի, բոլոր աշխա-
տավորների ջանքերը միավորվեն միջազգային մասշտաբով՝ հանուն սոցիա-
լիզմի և կոմունիզմի հաղթանակի: Հենց այդ պատճառով է սոցիալիստական
հայրենասիրությունը օրգանապես զուգակցվում պրոլետարական ինտերնացիո-
նալիզմին:

Մեծ հայրենասեր և բոցավառ ինտերնացիոնալիստ Լենինը ազգային ու



ինտերնացիոնալ շահերը և բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների խըն-
դիրները երբեք չի հակադրել: Նա սովորեցնում էր, որ սոցիալիստական հեղա-
փոխության հաղթանակի և նոր հասարակության հաջող կառուցման համար ան-
հրաժեշտ է՝ յուրաքանչյուր երկրի *միասնական* ինտերնացիոնալ խնդիրներին
*կոնկրետ* մոտեցումների մեջ որոնել, կռահել, ուսումնասիրել ազգային առանձ-
նահատուկը, հետապոտել ազգային սպեցիֆիկը:

Վ. Ի. Լենինը մեր կուսակցությունը դիտում էր որպես միջազգային կոմու-
նիստական շարժման մարտական ջոկատներից մեկը, իսկ Հոկտեմբերի հաղթա-
նակը, հեղափոխության նվաճումների պաշտպանությունը, սոցիալիզմի և կոմու-
նիզմի շինարարությունը Սովետական Միությունում՝ որպես համաշխարհային
հեղափոխական պրոցեսի անբաժանելի բաղկացուցիչ մասը: «Գործով ինտեր-
նացիոնալիզմը մեկ և միայն մեկ է՝ անձնվեր աշխատանք *իր* երկրում հեղափո-
խական շարժման ու հեղափոխական պայքարը կարգացնելու համար, *նույնպիսի*
*պայքարին* և նույնպիսի գծին աջակցելու համար (պրոպագանդայով, համա-
կրանքով, նյութապես), և *միմիայն այդ պայքարին* աջակցելու համար առանց
բացառության *բոլոր* երկրներում» (Երկեր, հատ. 24, էջ 72): Հաղթանակած հե-
ղափոխությունը ամրապնդում ու կարգացնում է իր հաջողությունները, կապի-
տալիզմի հանդեպ սոցիալիզմի գերազանցությունը ապացուցում է ժողովրդի
ստեղծագործական աշխատանքով: «Այժմ միջազգային հեղափոխության վրա,—
ասել է Լենինը 1921 թվականի մայիսին,— մենք մեր գլխավոր ներգործությունն
անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ... Այս ասպարեզն է փոխա-
դրվել պայքարը համաշխարհային մասշտաբով: Կլուծենք այդ խնդիրը և այն
ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնա-
կանապես» (Երկեր, հատ. 32, էջ 562):

Մեր երկրում կոմունիստական շինարարության միջազգային նշանակությու-
նը այն է, որ նա ուժեղացնում է ամբողջ սոցիալիստական սիստեմի տնտեսա-
կան, քաղաքական և պաշտպանական հզորությունը, նպաստում է արդիականու-
թյան հեղափոխական ուժերի ամրապնդմանը: Բնական է, որ սեփական երկրում
կենսագործելով կոմունիստական շինարարության պլանները, սովետական մար-
դիկ միշտապես զգում են սոցիալիզմի եղբայրական երկրների ժողովուրդների,
միջազգային բանվորական և ազգային-ազատագրական շարժումների աջակցու-
թյունը:

Յոթնամյակի կատարումը, այն լավ ստարտը, որ վերցրել է հնգամյակը, ամ-
րապնդում են Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական համագոր-
ծակցության արտաքին քաղաքական դիրքերը: Սովետական Միության տնտե-
սական հզորության աճը, սովետական մարդկանց բարեկեցության հետագա վե-
րելքը, սոցիալիստական դեմոկրատիայի կարգացումը, սովետական ազգային
քաղաքականության հաջողությունները է՛լ ավելի են մեծացնում կոմունիզմի
գաղափարների ձգողական ուժը: Այդ բանը մատնանշեցին կոմունիստական և
բանվորական կուսակցությունների ներկայացուցիչները ՍՄԿԿ XXIII համագու-
մարում: Չիլիի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գըլ-
խավոր քարտուղար ընկ. Լուիս Կորվալան համագումարի ամբիոնից հայտարա-
րեց՝ «Մեծ է Սովետական Միության բազմակողմանի ավանդը մարդու ազա-
տագրման գործում: Բայց նրա ամենանշանակալի ավանդը կոմունիզմի կառու-
ցումն է: Կոմունիզմի կառուցմամբ Սովետական Միությունը՝ այդ հսկայական
բազմազգ երկիրը, խաղաղության պատվարը և ժողովուրդների ազատագրման

այդ մարտիկը է՛լ ավելի կիրառանա: Կոմունիզմի գաղափարները օրինակի ուժով կշարունակեն հիրավի վճռական ազդեցություն թողնել բոլոր երկրների միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորների գիտակցության աճի և պայքարի ելնելու վրա»:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը արտաքին քաղաքականության բնագավառում իր գործունեության մեջ ելնում է սովետական ժողովրդի արմատական շահերից և սոցիալիզմի եղբայրական երկրների, բոլոր երկրների աշխատավորների հանդեպ ինտերնացիոնալ պարտքից: Սովետական պետության արտաքին քաղաքականությունը նպատակ ունի՝

— մյուս սոցիալիստական երկրների հետ միասին ապահովել միջազգային բարենպաստ պայմաններ սոցիալիզմ և կոմունիզմ կառուցելու համար.

— ամրապնդել սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունը, նրանց բարեկամությունն ու եղբայրությունը.

— աջակցել ազգային-ազատագրական շարժումներին և բազմակողմանիորեն համագործակցել երիտասարդ հեղափոխական պետությունների հետ.

— հետևողականորեն պաշտպանել տարբեր սոցիալական կառուցվածք ունեցող պետությունների հետ խաղաղ գոյակցության սկզբունքը, վճռական հակահարված տալ իմպերիալիզմի ագրեսիվ ուժերին, մարդկությանը փրկել նոր պատերազմից:

Միջազգային թատերաբեմում տեղի ունեցող իրադարձությունների ընթացքը հաստատում է ՍՄԿԿ, ամբողջ կոմունիստական շարժման այն հետևությունը, որ ներկա դարաշրջանում պատմական զարգացման գլխավոր ուղղությունը որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, հասարակության սոցիալիստական վերակառուցման համար իմպերիալիզմի դեմ մարտնչող ուժերը: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը կզալիորեն ամրապնդվել է, մեծացել է նրա միջազգային հեղինակությունը, նրա ազդեցությունը մարդկության ճակատագրի վրա: Պրակտիկան ցույց է տալիս, որ կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմը ունի անվիճելի առավելություններ, որոնք հնարավորություն են տալիս ապահովել էկոնոմիկայի և կուլտուրայի արագ աճը, աշխատավոր լայն զանգվածների կենսամակարդակի մշտական բարելավումը:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը դարձել է սոցիալիզմի եղբայրական երկրների միջև պետական հարաբերությունների հաստատուն հիմքը: Մեր ժամանակներում դա ոչ միայն լոզունգ է կամ գաղափար, այլ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների միջև գոյություն ունեցող ու զարգացող տնտեսական և կուլտուրական հարաբերությունների մի նոր տիպ: Մեր կուսակցությունը, զարգացնելով սովետական ժողովրդի սերը դեպի իր հայրենիքը, դրա հետ միասին ելնում է այն բանից, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումով սոցիալիստական հասարակության քաղաքացիների հայրենասիրությունը մարմնավորվում է նվիրվածությամբ ու հավատարմությամբ դեպի իր հայրենիքը, դեպի սոցիալիստական երկրների համագործակցությունը: Արտասահմանյան կոմունիստները, մարքսիստ-լենինյանները, իրենց հերթին, գտնում են, որ ինտերնացիոնալիզմի անկյունաքարը վերաբերմունքն է դեպի Սովետական Միությունը: «Հակասովետական կոմունիզմ չի եղել, չկա և երբեք չի լինի»,— ՍՄԿԿ XXIII համագումարում հայտարարեց Հունգարիայի սոցիալիստական բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յանոշ Կադարը:

Եղբայրական երկրների հետ Սովետական Միության հարաբերությունները



վերջին տարիներս հարստացան նոր փորձով, դարձան ավելի սերտ և սրտագին: Ավելի արդյունավետ է դարձել այդ երկրների տնտեսական և գիտատեխնիկական համագործակցությունը, աշխատանքի բաժանումը նրանց միջև: Արտահայտելով արտադրողական ուժերի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունը, տնտեսապես արդյունավետ, մասնագիտացված և խոշոր սերիական արտադրություն կազմակերպելու անհրաժեշտությունը, սոցիալիստական երկրների միջև աշխատանքի բաժանումը գնալով ավելի մեծ դեր է խաղում այդ երկրներից յուրաքանչյուրի ժողովրդական տնտեսությունը սարքավորումով ու հումքով ապահովելու և բնակչությանը լայնալայն սպառողական ապրանքների մատակարարումը բարելավելու գործում: Հիմնված լինելով կամովիության, լիակատար հավասարության և փոխադարձ օգտավետության սկզբունքների վրա, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը բարենպաստ պայմաններ է ստեղծում եղբայրական պետություններից յուրաքանչյուրի էկոնոմիկայի զարգացումն արագացնելու համար, ուժեղացնում է սոցիալիզմի ամբողջ համաշխարհային սիստեմը: Այն նպաստում է սոցիալիստական երկրներից յուրաքանչյուրի բարգավաճմանը, օգնում է նրանց ավելի արագ ընթանալու դեպի ընդհանուր նպատակը՝ կոմունիզմի կառուցումը:

XXIII համագումարը հանձնարարեց ՍՄԿԿ Կենտկոմին այսուհետև ևս զարգացնել ու ամրապնդել գաղափարական-քաղաքական կապերը սոցիալիզմի բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ՝ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա, ամեն կերպ նպաստել սոցիալիստական համագործակցության համախմբվածությանը, նրա հզորության ու ազդեցության ամրապնդմանը, ընդլայնել տնտեսական և գիտատեխնիկական համագործակցությունը: Համագումարում հաստատվեց Սովետական Միության ձգտումը՝ խորացնելու աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը լի է վճռականությամբ աջակցելու գաղութային ճնշման և նեոգաղութատիրության դեմ պայքարող ժողովուրդներին, բազմակողմանիորեն զարգացնելու համագործակցությունը այն երկրների հետ, որոնք ազգային ազատություն են ձեռք բերել, ամեն կերպ նպաստելու բոլոր մայրցամաքների ժողովուրդների հակաիմպերիալիստական ճակատի ամրապնդմանը, ընդլայնելու կապերը երիտասարդ ազգային պետությունների կոմունիստական և հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների հետ:

ՍՄԿԿ XXIII համագումարը կոչ արեց անշեղորեն ընդլայնել ու ամրապնդել սովետական ժողովրդի, սովետական կոմունիստների ընկերության ու եղբայրության կապերը, հեղափոխական համերաշխությունը կապիտալիզմի երկրների բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների ու նրանց դեմոկրատական կազմակերպությունների հետ:

Ժամանակակից միջազգային իրադրությունը համառորեն պահանջում է համախմբել համաշխարհային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումները: Կյանքը հաստատել է իմպերիալիստներին սանձահարելու, նոր համաշխարհային պատերազմը կանխելու վերաբերյալ միջազգային կոմունիստական շարժման եզրակացության ճշտությունը: Սակայն, քանի դեռ իմպերիալիզմը գոյություն ունի, ագրեսիվ պատերազմների աղբյուրը պահպանվում է: Իմպերիալիզմի, առաջին հերթին ամերիկյան իմպերիալիզմի ավանտյուրիզմը աճում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման և նրա

հակասությունների սրման հետևանքով: Իմպերիալիստներն իրենց դիրքերն առանց ճակատամարտի չեն զիջում, նրանք ավելի հաճախ են դիմում պրովոկացիաների Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի շատ երկրների ու ժողովուրդների դեմ ուղղակի ռազմական ինտերվենցիայի, ինչը որ ակնբախորեն ցույց է տալիս վիետնամական ժողովրդի դեմ ԱՄՆ-ի հանցագործ պատերազմը:

ՍՄԿԿ-ն լիովին պաշտպանել ու պաշտպանում է վիետնամական ժողովրդի արդարացի ազատագրական պատերազմը և նրան ցույց է տալիս քաղաքական, նյութական ու բարոյական օգնություն: XXIII համագումարում վիետնամական ժողովրդի պատվիրակները ջերմ շնորհակալություն հայտնեցին այն աջակցության համար, որ ցույց են տալիս Սովետական Միությունը և սոցիալիզմի մյուս երկրները, կոմունիստական և բանվորական պարտիաները, խաղաղության բոլոր կողմնակիցները երկրագնդում: Մեր ամբողջ ժողովրդի անունից համագումարը կայրույթով պախարակեց ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիան Վիետնամի եղբայրական ժողովրդի դեմ, վճռականապես պահանջեց դադարեցնել ագրեսիան, ինտերվենտների զորքերը դուրս բերել և վիետնամական ժողովրդին հնարավորություն տալ սեփական ցանկությամբ որոշելու իր ներքին գործերը: Համագումարը դիմեց կոմունիստական և բանվորական բոլոր կուսակցություններին, կոչ անելով է՛լ ավելի համառաբար գործողությունների միասնության հասնել ԱՄՆ-ի ագրեսիայի դեմ մղվող պայքարում և վիետնամական ժողովրդին արդյունավետ օգնություն ցույց տալու գործում:

Իմպերիալիզմի ագրեսիվության նոր վկայությունը Կուբայի դեմ ուղղված ամերիկյան ռազմամոլների պրովոկացիոն գործողություններն են: Սակայն նրանք, ովքեր Կուբայի հանրապետության նկատմամբ ագրեսիվ մտքեր են որոճում, չպետք է մոռանան, որ նա ունի հավատարիմ և հուսալի բարեկամներ: Սովետական Միությունը հաստատակամորեն պաշտպանում է հեղափոխական Կուբային, ազատության ու անկախության նրա սրբազան իրավունքը:

ՍՄԿԿ և սովետական կառավարության, մյուս սոցիալիստական պետությունների եղբայրական կուսակցությունների ու կառավարությունների չթուլացող ուշադրությունը շարունակում է կենտրոնացած մնալ Եվրոպայում ստեղծված իրադրության վրա: Այստեղ խաղաղության գործի նկատմամբ գոյություն ունի լուրջ վտանգ, որն առաջացել է Արևմտյան Գերմանիայի ղեկավար շրջանների ռևանշիստական քաղաքականության հետևանքով, որոնք ԱՄՆ-ի իմպերիալիստների օգնությամբ ջանում են ձեռք գցել ատոմային զենք: Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների ջանքերն ուղղված են խաղաղության ու անվտանգության ապահովմանը Եվրոպայում:

ՍՄԿԿ XXIII համագումարը մատնանշեց, որ այնպիսի պայմաններում, երբ իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը սրում են միջազգային լարվածությունը, պատերազմի օջախներ ստեղծում, անհրաժեշտ է այսուհետև ևս բարձրացնել սովետական ժողովրդի զգոնությունը, ամրապնդել մեր հայրենիքի պաշտպանական հզորությունը, որպեսզի ՍՍՀՄ զինված ուժերը միշտ պատրաստ լինեն հուսալիորեն պաշտպանելու սոցիալիզմի նվաճումները և խորտակիչ հակահարված տալու ամեն մի իմպերիալիստական ագրեսորի:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ամբողջ գործունեությունը մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքին անդրդվելի հավատարմության կոնկրետ հաստատումն է: Մեր կուսակցությունը մշտապես ձգտում է ամրապնդել եղբայրական համերաշխությունը



կոմունիստական և բանվորական կուսակցությունների հետ, ակտիվորեն պայքարում է հանուն միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գծի կենսագործման, հանուն կոմունիստների համաշխարհային բանակի համախմբման՝ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա:

XXIII համագումարի աշխատանքը ամենահզոր կերպով ցուցադրեց մեր կուսակցության, սովետական ժողովրդի ինտերնացիոնալ համերաշխությունը սոցիալիզմի բոլոր երկրների, ամբողջ աշխարհի կոմունիստների, իմպերիալիզմի դեմ պայքարող բոլոր մարտիկների հետ: Համագումարին ներկա էին աշխարհի 86 երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների, ազգային-դեմոկրատական և ձախ սոցիալիստական կուսակցությունների ներկայացուցիչներ: Դա արտասահմանյան պատվիրակությունների ամենամեծ թիվն էր, որոնք երբևէ մասնակցել էին մեր կուսակցության համագումարների աշխատանքին: XXIII համագումարի աշխատանքին մասնակցած կոմունիստական և բանվորական կուսակցությունները միահամուռ կերպով հավանություն տվին ՍՄԿԿ սկզբունքային մարքսիստական-լենինյան գծին, որն ուղղված է կոմունիստական շարքերի միասնության ամրապնդմանը:

Եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչների ելույթներում, համագումարի հասցեով ուղարկված նրանց ողջույններում հնչում էր միասնական ձգտում՝ ամբողջ կոմունիստական շարժումը, բոլոր հեղափոխական ուժերը համախմբել ընդհանուր դասակարգային թշնամու դեմ-հանդիման: Արտասահմանյան պատվիրակները ընդգծում էին, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և սովետական ժողովուրդը ունեն փառապանծ հեղափոխական տրադիցիաներ, որ նրանց հատուկ է պրոլետարական ինտերնացիոնալիզմի բարձր զգացումը: «Մենք հավատում ենք,— համագումարում ունեցած իր ելույթում ասաց Վիետնամի աշխատավորների պարտիայի Կենտկոմի քարտուղար ընկ. Լե Զուանը,— որ, ղեկավարվելով այդ տրադիցիաներով և պրոլետարական ինտերնացիոնալիզմի զգացումով, կոմունիստական կուսակցությունը և սովետական ժողովուրդը հաջողությամբ կավարտեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը, ավանդ կմտցնեն խաղաղությունը պաշտպանելու և համաշխարհային հեղափոխությունը զարգացնելու գործում»:

Հոկտեմբերյան հեղափոխության չորսամյա տարեդարձի նախօրեին Վ. Ի. Լենինը գրում էր, որ մեր երկրի կոմունիստները, աշխատավորները իրավունք ունեն հպարտանալու և հպարտանում են նրանով, որ նրանց երջանկություն վիճակվեց սկսելու սովետական պետության կառուցումը, դրանով իսկ սկսելու համաշխարհային պատմության նոր դարաշրջան: Հաջողությամբ կենսագործելով կոմունիզմի շինարարության պլանները, մեր կուսակցությունը, սովետական բոլոր մարդիկ մեծագույն բավականության զգացմունքով մի հայացք են գցում անցած կեսդարյա դժվարին և փառավոր ուղու վրա: Լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կատարել է հայրենասիրական և ինտերնացիոնալ մի անօրինակ սխրանք նոր կյանքի շինարարության գործում, մի հեղափոխական սխրանք, որը բոլոր երկրների ու մայրցամաքների ժողովուրդներին պայքարի է ոգևորել և ոգևորում է հանուն կոմունիզմի հաղթանակի երկրագնդում:

«КОММУНИСТ», № 9,
1966 г.

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՈՒՏԸ

ՍՍՀՄ-ում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, բնակչության կենսամակարդակի բարձրացման և երկրի պաշտպանունակության ամրապնդման միակ աղբյուրը ազգային եկամուտն է։ Որքան մեծ է ազգային եկամուտը, որքան բարձր են նրա աճման տեմպերը, այնքան ավելի մեծ կլինեն կոմունիստական հասարակության կառուցման հնարավորությունները, այնքան ավելի արագ կաճի ժողովրդի բարեկեցությունը և է՛լ ավելի կամրապնդվի երկրի պաշտպանունակությունը։ Ահա թե ինչու մեր հասարակությունը, նրա առաջատար ջոկատը՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ինչպես անցյալում, այնպես էլ այժմ աշխատում են ամեն կերպ մեծացնել ազգային եկամուտը, ապահովել նրա ռացիոնալ բաշխումն ու վերաբաշխումը, խնայողաբար օգտագործումը։

ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում, ընկ. ընկ. Լ. Ի. Բրեժնևի, Ա. Ն. Կոսիգինի զեկուցումներում նշված են այն ծրագրային առաջադրանքները, որոնց իրականացումը հնարավորություն կտա ավելի մեծացնելու ազգային եկամուտը։ Աշխարհում ամենամեծ ազգային եկամուտներից մեկը Սովետական Միությանն է. 1965 թվականին այն կազմել է ավելի քան 190 միլիարդ ռուբլի։ Միայն վերջին հնգամյակում ազգային եկամուտն աճել է 33 տոկոսով, իսկ նոր հնգամյակում՝ 1966—1970 թվականներին, մեծանալու է 38—41 տոկոսով։ Ազգային եկամտի նախատեսված չափն ապահովելու գլխավոր երաշխիքը սոցիալիստական արտադրության տնտեսական արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացումն է, կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի առավելությունների օգտագործումը։

Կուսակցության XXIII համագումարի որոշումներում նշված է, որ ներկա պայմաններում սոցիալիստական արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար վճռական նշանակություն ունեն՝ արտադրության պլանավորման կատարելագործումը, գիտատեխնիկական առաջավոր նորույթների կիրառումը, արտադրական կարողությունների գործարկման ժամկետների կրճատումը, արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացումը, աշխատուժի որակավորումը, նյութական խթանումը, արտադրության կազմակերպման ու ղեկավարման կատարելագործումն ու աշխատանքային կարգապահության բարձրացումը։ Այս ամենի հետևողական կենսագործումը և ղեկավարման գործում սուբյեկտիվիզմի ու վոլյունտարիզմի հաղթահարումը նոր, ավելի բարձր մակարդակի կհասցնեն սոցիալիստական արտադրությունը, կնպաստեն հասարակության կենսական պահանջմունքների բավարարմանը. իսկ այդ մի նոր քայլ կլինի կոմունիստական հասարակության կառուցման ճանապարհին։

Ներկա հոդվածի նպատակն է համառոտակի պարզաբանել ընթերցողին, թե ի՞նչ է ազգային եկամուտը, որտե՞ղ է այն ստեղծվում, որո՞նք են նրա աճման գործոնները, ինչպե՞ս է բաշխվում ու վերաբաշխվում և ինչպե՞ս օգտագործվում մեր հասարակության մեջ։

●

ԻՆՉՊԵՍ ամեն մի հասարակության, այնպես էլ սոցիալիստական հասարակության նյութական արտադրության պրոցեսում ստեղծված մեկ տարվա արդյունքը կոչվում է հասարակական ամբողջական արդյունք։ Ազգային եկամուտը հասարակական ամբողջական արդյունքի մի մասն է, որը ստեղծվում է նյութական արտադրության պրոցեսում ծախսված կենդանի աշխատանքով։ Ազգային եկամուտն ունի բնաիրային և արժեքային արտահայտություն։ Բնաիրային առումով այն բաղկացած է արտադրամիջոցներից և սպառման առարկաներից, իսկ արժեքային առումով՝ անհրաժեշտ արդյունքի և հավելյալ արդյունքի արժեքից։

Ամեն մի հասարակության ազգային եկամտի սոցիալ-տնտեսական էությունը պայմանավորված է տվյալ արտադրաեղանակի բնույթով։ Սոցիալիստական հասարակարգում, ուր արտադրամիջոցները հասարակական սեփականություն են, վերացված է մարդու շահագործումը մարդու կողմից, ազգային եկամուտը պատկանում է շահագործումից ազատ աշխատավորներին և բաշխվում է հօգուտ նրանց շահերի։ Դրությունը այլ է կապիտալիստական հասարակարգում, որտեղ արտադրամիջոցները կապիտալիստական մասնավոր սեփականություն են, իսկ աշխատուժը ապրանք է։ Այստեղ ևս ազգային եկամուտը ստեղծվում է նյութական արտադրության ոլորտում, կենդանի աշխատանքով, բայց արտադրամիջոցների կապիտալիստական սեփականության և վարձու աշխատանքի միջոցով. դրա ստեղծումն ու բաշխումը կրում է անտագոնիստական բնույթ, քանի որ եկամտի միայն մի մասն է անցնում աշխատավորներին՝ որպես աշխատավարձ, իսկ մյուսը՝ հավելյալ արժեքի ձևով դառնում է շահագործողների բաժինը։

Ժամանակակից կապիտալիստական երկրներում աշխատավորների բաժինը ազգային եկամտում կեսից էլ պակաս է. ընդ որում, այդ նրանց ապրուստի միակ աղբյուրն է։

Ջատագովելով կապիտալիստական հասարակությունը, բուրժուական տնտեսագետներն աշխատում են աղավաղել այդ հասարակության ազգային եկամտի սոցիալ-տնտեսական էությունն ու անտագոնիստական բնույթը։ Ելակետ ընդունելով ֆրանսիական վուլգար տնտեսագետ Ժ. Բ. Սեյի ծառայությունների տեսությունը, նրանք ամեն կերպ աշխատում են ցույց տալ, որ ազ-

գային եկամտի ստեղծմանը, իբր, մասնակցում են բուրժուական հասարակության բոլոր դասակարգերը, որ ամեն մի եկամուտ ստացող դրա ստեղծողն է։ Ելնելով այդ դրույթից, բուրժուական վիճակագրությունն ազգային եկամտի մեջ է մտցնում ո՛չ միայն նյութական արտադրության արդյունքները, այլև ոչ արտադրական ոլորտում աշխատողների եկամուտները կամ, ինչպես ասում են՝ ծառայությունները։ Դրա համար էլ կապիտալիստական երկրների ազգային եկամուտը մոտ 30 տոկոսով ավելի է ցույց տրվում։

ԱԶԳԱՅԻՆ եկամտի ստեղծման ոլորտը նյութական արտադրությունն է, որն ընդգրկում է արդյունաբերությունը, շինարարությունը, գյուղատնտեսությունը, բեռնատար տրանսպորտը, արտադրությանը սպասարկող կապը, շրջանառությունն այն մասով, որը կազմում է արտադրության պրոցեսի շարունակությունը (արտադրանքի պահպանում, ծրարում, փաթեթավորում, մշակման շարունակում և այլն)։ Ազգային եկամուտ չի ստեղծվում ժողովրդական տնտեսության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են՝ զուտ շրջանառությունը, մարդկանց փոխադրումն ու ոչ արտադրական զանազան ծառայությունները։

Ազգային եկամտի ստեղծումը նյութական արտադրության պրոցեսում ծախսված կենդանի աշխատանքն է, որը բաժանվում է երկու մասի՝ անհրաժեշտ և հավելյալ։ Անհրաժեշտ աշխատանքով ստեղծվում է ազգային եկամտի այն մասը, որը հանդես է գալիս որպես անհրաժեշտ արդյունքի արժեք, իսկ հավելյալ աշխատանքով՝ հավելյալ արդյունքի արժեք։

Նյութական արտադրության պրոցեսում ծախսվում են ո՛չ միայն կենդանի, այլև առարկայացված աշխատանք, այսինքն՝ արտադրության միջոցներ։ Սակայն, առարկայացված աշխատանքը նոր արժեքի՝ ազգային եկամտի աղբյուր չի դառնում։ Կենդանի աշխատանքի միջոցով արտադրամիջոցների արժեքը պահպանվում է և փոխանցվում հասարակական ամբողջական արդյունքի մեջ՝ որպես նրա առանձին բաղադրամաս, որն օգտագործվում է ծախսված արտադրամիջոցները փոխհատուցելու և արտադրության անընդհատությունն ապահովելու համար։

Ազգային եկամուտն աճում է երկու գործոնների՝ հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման և նյութական արտադրության ոլորտում զբաղվածների թվաքանակի ավելացման հաշվին։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումն ազգային եկամտի աճման հիմնական գործոնն է։ Այսպես, ՍՍՀՄ-ում վերջին տարիներս ազգային եկամտի հավելաճի մոտ 11 տոկոսն ստացվում է արտադրության մեջ զբաղվածների թվի ավելացման, իսկ 89 տոկոսը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Այս օրինաչափ է։ Հետագայում էլ բարձր է մնալու աշխատանքի արտադրողականության տեսակարար կշիռը ազգային եկամտի աճման գործում։

Աշխատանքի արտադրողականության մակարդակը, ինչպես հայտնի է, չափվում է աշխատաժամանակի մեկ միավորի ընթացքում արտադրված արդյունքով։ Որքան շատ է արդյունքը, այնքան բարձր կլինի աշխատանքի արտադրողականությունը։ Բայց այդ չի նշանակում, թե աշխատանքի արտադրողականության բարձրացման համապատասխան կաճի նաև ազգային եկամտի



արժեքը։ Վերջինիս բարձրացումը հակադարձ համեմատական է արժեքի մեծությանը։ «Որքան ավելի մեծ է աշխատանքի արտադրողական ուժը, այնքան ավելի փոքր է որևէ իր պատրաստելու անհրաժեշտ աշխատաժամանակը, այնքան ավելի փոքր է նրա մեջ բյուրեղացած աշխատանքի մասսան, այնքան ավելի փոքր է նրա արժեքը»։ «...Միևնույն աշխատանքը հավասար ժամանակամիջոցներում միշտ միևնույն մեծությամբ արժեքներ է ստեղծում, որքան էլ նրա արտադրողական ուժը փոփոխվի։ Բայց աշխատանքը այդ պայմաններում հավասար ժամանակամիջոցում սպառողական արժեքների տարբեր քանակներ է տալիս. շատ է տալիս, երբ արտադրողական ուժը աճում է, քիչ՝ երբ նվազում է» (Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 1, էջ 47, 53, Հայպետհրատ, 1954 թ.)։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումն ընդհանուր տնտեսական օրենք է և գործում է բոլոր հասարակարգերում, բայց միայն սոցիալիստական հասարակարգում է հանդես գալիս որպես աշխատանքի արտադրողականության անշեղ աճի օրենք, որովհետև սոցիալիստական պլանաչափ զարգացող էկոնոմիկայի պայմաններում է, որ չի գործում արտադրության անարխիայի ու կոնկուրենցիայի օրենքը, վերացված են արտադրության հասարակական բնույթի ու յուրացման մասնավոր-կապիտալիստական ձևի հակասությունը, տնտեսական պարբերական ճգնաժամերը։ Սոցիալիզմի ժամանակ աշխատանքի արտադրողականությունը, անհամեմատ, ավելի բարձր տեմպերով է աճում, քան կապիտալիզմի։ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ 1963 թվականին աշխատանքի արտադրողականությունը գերազանցում էր 1913 թվականի մակարդակը՝ 13,2 անգամ, ԱՄՆ-ում՝ 3,4, Անգլիայում՝ 1,7, Ֆրանսիայում՝ 2,6 անգամ։ Վերջին հնգամյակում ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության ամենամյա աճը միջին հաշվով կազմեց 4,6 տոկոս։

Եթե աշխատանքի արտադրողականության բարձրացումն ավելացնում է ազգային եկամտի միայն ֆիզիկական ծավալը, ապա նյութական արտադրության ոլորտում աշխատողների թվի աճը մեծացնում է ազգային եկամուտը և՛ արժեքով, և՛ ֆիզիկական ծավալով։

Նյութական արտադրության ոլորտում աշխատանքի մասսայի ավելացումը միայն այն ժամանակ կմեծացնի ազգային եկամտի ֆիզիկական և արժեքային ծավալը, երբ այդ աշխատանքի նոր մասսան, իրոք, հասարակականորեն անհրաժեշտ լրացուցիչ աշխատանք է։ Այսպես, եթե աշխատանքի արտադրողականության որոշ մակարդակի պայմաններում ընդլայնվում է արտադրության պրոցեսը (կառուցվում են նոր ֆաբրիկաներ, գործարաններ կամ ընդարձակվում եղածները), արտադրության մեջ ընդգրկվում են լրացուցիչ աշխատողներ, ապա հասկանալի է, որ նրանց աշխատանքը կլինի ազգային եկամտի ինչպես ֆիզիկական, այնպես էլ արժեքային ծավալի մեծացման աղբյուր։

Սոցիալիստական հասարակարգում անընդհատ աճում է նյութական արտադրության մեջ աշխատող մարդկանց թիվը։ Օրինակ, 1950—1963 թթ. (ներառյալ) ՍՍՀՄ-ում բանվորների և ծառայողների տարեկան միջին թվաքանակը արդյունաբերության մեջ 14.144 հազարից հասել է 24.950 հազարի, շինարարության մեջ՝ 2569 հազարից 5170 հազարի, գյուղատնտեսության մեջ՝ 3437 հազարից 8440 հազարի։ 1965 թվականին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների տարեկան միջին թվաքանակը 76,9 միլիոն էր (1913 թվականի 12,9 միլիոնի դիմաց)։ Նոր հնգամ-







յակի վերջում՝ 1970 թվականին, ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բանվորների ու ծառայողների թիվը կհասնի 91—92 միլիոնի:

Ինչպես աշխատանքի արտադրողականության արագ աճը, այնպես էլ նյութական արտադրության պրոցեսում զբաղված մարդկանց թվի անընդհատ ավելացումը հնարավորություն են ընձեռում ավելի արագ տեմպերով մեծացնելու սոցիալիստական հասարակության ազգային եկամուտը: Այսպես, 1963 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ-ում ազգային եկամուտը աճեց 3,1 անգամ, ԱՄՆ-ում՝ 1,4, Անգլիայում՝ 1,3, Ֆրանսիայում՝ 1,7 անգամ: Վերջին յոթնամյակում ՍՍՀՄ-ի ազգային եկամուտը աճեց 53 տոկոսով, իսկ առաջիկա հնգամյակում, ինչպես նշվեց, այն կմեծանա 38—41 տոկոսով:

Սոցիալիստական հասարակարգում ազգային եկամտի սկզբնական բաշխումը կատարվում է նյութական արտադրության ոլորտում: Դրա շնորհիվ ազգային եկամտի մի մասը՝ անհրաժեշտ արդյունքը, անցնում է արտադրության մեջ աշխատողներին, դառնում նրանց սկզբնական հիմնական եկամուտները (բանվորների ու ծառայողների աշխատավարձը, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը, կոլտնտեսականների և բանվոր-ծառայողների տնամերձ տնտեսություններից ստացված եկամուտները):

Ազգային եկամտի մյուս մասը՝ հավելյալ արդյունքը կամ հասարակության զուտ եկամուտը, արտահայտվում է մի շարք եկամուտների ձևով. դրանք են՝ պետական-արտադրական ձեռնարկությունների զուտ եկամուտները կամ շահույթները, պետության կենտրոնացված զուտ եկամուտը և կոոպերատիվ-կոլտնտեսային ձեռնարկությունների զուտ եկամուտը, առևտրական կազմակերպությունների շահույթները, արտադրական ձեռնարկությունների՝ սոցիալական ապահովագրման ֆոնդին հատկացվող գումարները:

Ազգային եկամտի բաշխումը չի սահմանափակվում արտադրության ոլորտում տեղի ունեցող սկզբնական բաշխմամբ: Որպեսզի ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով ընդլայնված վերարտադրություն իրականացվի և ապահովվեն ոչ արտադրական ոլորտի պահպանման ծախսերը (ուսուցման, առողջապահության, գիտության, կենցաղ-սպասարկման, բանակի պահպանման և այլն), անհրաժեշտ է իրականացնել ազգային եկամտի վերաբաշխում:

Ազգային եկամտի բաշխման ու վերաբաշխման գործում մեծ դեր է կատարում պետական բյուջեն: Այսպես, ՍՍՀՄ-ում հասարակության զուտ եկամտի մի մասն անցնում է պետական բյուջե և դառնում պետության կենտրոնացված զուտ եկամուտ (շրջանառու հարկի, շահույթներից մասհանումների, կոլտնտեսություններից և կոոպերատիվներից գանձվող եկամտահարկերի և այլ գանձումների միջոցով): Պետական բյուջեի 90 տոկոսից ավելին սոցիալիստական ձեռնարկություններից ստացված եկամուտներն են:

ՍՍՀՄ պետական բյուջեում կենտրոնացված միջոցները օգտագործվում են՝ 1. ժողովրդական տնտեսության ֆինանսավորման (արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, բնակարանային և կոմունալ շինարարության ու ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի զարգացման), 2. սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման (լուսավորության, կուլտուրայի, արվեստի, առողջապահության, ֆիզկուլտուրայի, թոշակների ու նպաստների), 3. պետական ապարատի պահպանման և 4. երկրի պաշտպանության համար:

Բացի պետական բյուջեից, ազգային եկամուտը վերաբաշխվում է նաև ֆի-



նանսական-վարկային սիստեմով՝ պլանային գնագոյացման, սպասարկումների վճարման և այլ միջոցներով:

Ազգային եկամտի բաշխումից ու վերաբաշխումից առաջանում են հետևյալ վերջնական եկամուտները՝ 1. սոցիալիստական արտադրական ձեռնարկությունների, 2. ոչ արտադրական ձեռնարկությունների ու հիմնարկների և 3. բնակչության եկամուտներ:

Վերջապես, ազգային եկամտի շարժման վերջին փուլը նրա օգտագործումն է, որտեղ այն վեր է ածվում կուտակման և սպառման ֆոնդերի: Այդ արտահայտվում է հետևյալ սխեմայով.




Մեզ մոտ ընդլայնված վերարտադրության աղբյուրը սոցիալիստական կուտակման ֆոնդն է: Սոցիալիստական կուտակումը հասարակության զուտ եկամտի մի մասն է և օգտագործվում է սոցիալիստական արտադրության ընդլայնման, ոչ արտադրական ձեռնարկությունների ֆոնդերի ավելացման ու նյութական ռեզերվների ստեղծման նպատակով: Սոցիալիստական կուտակման բնորոշ գիծը, հակառակ կապիտալիստական կուտակման, այն է, որ դրա իրականացումը չի նշանակում մասսաների դրության վատթարացում, այլ հասարակական հարստության ավելացում՝ հանուն աշխատավորության կենսամակարդակի բարձրացման:

Սոցիալիզմն ընդարձակում է կուտակման հնարավորությունները: Աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը, պարագիտային սպառման և գերարտադրության ճգնաժամերի վերացումը, արտադրության մեջ զբաղվածների անընդմեջ ավելացումը, նյութական և աշխատանքային ռեսուրսների պլանաչափ օգտագործումը հնարավոր են դարձնում սպառման

ֆոնդի աճման համընթաց մեծացնել կուտակման ֆոնդը: Սոցիալիստական
կուտակմանն է հատկացվում ազգային եկամտի մոտ մեկ քառորդը:
Սոցիալիստական կուտակումը իրականացվում է գլխավորապես կապի-
տալ ներդրումների միջոցով: Դրանք այն միջոցներն են, որոնք ավելացնում են
ժողովրդական տնտեսության ինչպես արտադրական (արտադրական շենքեր,
կառույցներ, սարքավորումներ, մթերատու անասուններ և այլն), այնպես էլ
ոչ արտադրական հիմնական ֆոնդերը (բնակելի շենքեր, կուլտուր-կենցաղային
հիմնարկներ և այլն):
Կապիտալ ներդրումները սոցիալիստական արտադրության արագ զար-
գացման, ժողովրդի բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների
բարելավման ապահովման գլխավոր գործոնն են: Դրա համար էլ սոցիալիզ-
մի ժամանակ իրականացվում են կապիտալ ներդրումների բարձր տեմպեր:
Սոցիալիստական հասարակարգում կապիտալ ներդրումների բաշխումը
ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև կատարվում է պլանային
կարգով: Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջների հիման
վրա պետք է այնպես տեղաբաշխել կապիտալ ներդրումները, որ ժողովրդա-
կան տնտեսության համապատասխան ճյուղերի արագ զարգացման ապահով-
մանը զուգընթաց անընդհատ տնտեսվի հասարակական աշխատանքը: Այս
կապակցությամբ կարևոր նշանակություն ունի կապիտալ ներդրումների տըն-
տեսական արդյունավետության բարձրացումը, որը աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացման ցուցանիշներից է: ՍՄԿԿ ծրագրում ասված է.
«Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս կապիտալ ներդրումների
արդյունավետության բարձրացմանը, կապիտալ աշխատանքների առավել շա-
հավետ ու խնայողական ուղղությունների ընդլայնելուն, կապիտալ ներդրում-
ների յուրաքանչյուր ծախսված ռուբլու դիմաց արտադրանքի առավել աճ ա-
պահովելուն, այդ ներդրումների փոխհատուցման ժամկետները կրճատելուն:
Պահանջվում է մշտապես բարելավել կապիտալ ծախսումների ստրուկտուրան
և դրանց կազմի մեջ բարձրացնել սարքավորումների, մեքենաների, հաստոց-
ների բաժինը»:
Սոցիալիստական արտադրական հարաբերությունները օբյեկտիվ պայ-
մաններ են ստեղծում կապիտալ ներդրումների, արտադրական ֆոնդերի ար-
դյունավետ օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրաց-
ման և ազգային եկամտի անընդհատ ավելացման համար: Խնդիրն այն է, որ
ավելի խոր թափանցենք այդ հարաբերությունների էության մեջ, ճիշտ հասկա-
նանք նրանցից բխող տնտեսական օրենքների պահանջները, դրանց համա-
պատասխան կազմակերպենք արտադրության ղեկավարումը:
Սոցիալիստական հասարակարգում կարևոր նշանակություն ունի ազգա-
յին եկամտի բաշխման պրոցեսում կուտակման և սպառման ֆոնդերի միջև
ճիշտ հարաբերակցության սահմանումը: Եթե կուտակման ֆոնդը փոքրացվի
ու դրա հաշվին մեծացվի սպառմանը, ապա կդանդաղի արտադրության զար-
գացումը և կկրճատվի սպառման առարկաների արտադրությունը: Իսկ եթե
փոքրացվի սպառման ֆոնդը և դրա հաշվին մեծացվի կուտակմանը, ապա կիջնի
մարդկանց նյութական շահագրգռվածությունը, կդանդաղեցվի ժողովրդական
տնտեսության զարգացումը: Ուստի, անհրաժեշտ է կուտակման ու սպառման
ֆոնդերի միջև սահմանել այնպիսի գործարար հարաբերություն, որ, մի կող-
մից, կուտակման ֆոնդը անընդհատ մեծացնի և ամրապնդի երկրի տնտեսա-



կան հզորությունն ու պաշտպանունակությունը, մյուս կողմից՝ սպառման ֆոնդը այնպիսին լինի, որ բարձրացնի մարդկանց կենսամակարդակը, ուժեղացնի նրանց նյութական շահագրգռվածությունը արտադրության զարգացման համար:

Սոցիալիզմի ժամանակ գոյություն ունեն սպառման ֆոնդի երկու հիմնական աղբյուր. առաջինը անհրաժեշտ արդյունքն է, երկրորդը՝ հավելյալ արդյունքի այն մասը, որը հատկացվում է սպառման ֆոնդին:

Սպառման ֆոնդի մի մասն օգտագործվում է արտադրության մեջ աշխատողների աշխատանքի վարձատրման համար, մյուսը՝ որպես հասարակական սպառման ֆոնդ, օգտագործվում է ժողովրդական կրթության, մանկական հիմնարկների, առողջապահության, սոցիալական ապահովման, բարձրագույն դպրոցների, գիտության և կուլտուրայի զարգացման նպատակով:

Հասարակական սպառման ֆոնդն իր հերթին կարելի է բաժանել երկու մասի. մի մասը տրվում է որպես ոչ արտադրական ոլորտի աշխատողների աշխատանքի վարձատրություն, մյուսը հատկացվում է այդ բնագավառի ձեռնարկությունների ու հիմնարկությունների տնտեսական և այլ կարիքներին. երրորդը օգտագործվում է երկրի կառավարման ծախսերը հոգալուն: Սպառման ֆոնդին ՍՍՀՄ-ում հատկացվում է ազգային եկամտի մոտ $^3/_4$-ը:

Սոցիալիզմին հատուկ են ինչպես սպառման, այնպես էլ կուտակման ֆոնդերի աճման բարձր տեմպեր: Այսպես, 1959 թվականին ՍՍՀՄ-ում սպառման ֆոնդը կազմել է 97,3 միլիարդ, իսկ 1965 թվականին՝ 114 միլիարդ ռուբլի: Այդ նույն տարիներին կուտակման ֆոնդը 35,6 միլիարդ ռուբլուց հասել է ավելի քան 48 միլիարդի:

Սպառման և կուտակման ֆոնդերն արագ կաճեն նաև նոր հնգամյակում: Այսպես, 1966—1970 թվականներին բանվորների և ծառայողների աշխատավարձը, միջին հաշվով, բարձրանալու է 20, իսկ կոլտնտեսությունների եկամուտները հանրային տնտեսությունից՝ միջին հաշվով, 35—40 տոկոսով: Միաժամանակ առնվազն 40 տոկոսով կավելանան սպառման հանրային ֆոնդերի հաշվին բնակչությանը տրվող դրամական վճարումները, կմեծանան արտոնությունները: Իսկ կապիտալ ներդրումները, նախորդ հնգամյակի կապիտալ ներդրումների համեմատությամբ, կաճեն 47 տոկոսով:

Սոցիալիստական երկրներում ազգային եկամուտն օգտագործվում է նաև երկրի պաշտպանության համար: Այս հանգամանքը թեպետ նվազեցնում է կուտակման և սպառման հնարավորությունները, բայց, քանի դեռ գոյություն ունի սոցիալիստական երկրների նկատմամբ իմպերիալիստական երկրների ագրեսիայի վտանգը, անհրաժեշտ է ազգային եկամտի որոշ մասը հատկացնել ռազմական ուժերի պահպանմանն ու զարգացմանը: Սոցիալիստական երկրները վարում են խաղաղասիրական և լիակատար ու ընդհանուր զինաթափման քաղաքականություն: Բայց իմպերիալիստական երկրների ռազմատենչ ուժերը երկրագնդի զանազան տեղամասերում ստեղծում են պատերազմի օջախներ, համաշխարհային պատերազմի սպառնալիք: Այս կապակցությամբ Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների պաշտպանունակության ամրապնդումն ստանում է չափազանց կարևոր նշանակություն:

Ս. ՔՈՉԱՐՅԱՆ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԱՐՑԸ ՄԻՆՉՄԱՐՔՍՅԱՆ ՀՈՒՄԱՆԻՍՏՆԵՐԻ ՄՈՏ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ հասարակության գոյության և բարգավաճման վճռական նախապայմանը խաղաղության հարատևությունն է, իմպերիալիստական պատերազմների կանխումը։ Սոցիալական-հեղափոխական վերափոխությունների և գիտատեխնիկական բուռն պրոգրեսի մեր դարում է՛լ ավելի որոշակի է իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը։ Պայքարը համաշխարհային պատերազմը կանխելու համար կենտրոնական տեղ է գրավում հակաիմպերիալիստական ուժերի գործունեության մեջ։

Խաղաղությունը միշտ էլ աշխատավոր լայն զանգվածների ձգտումն է եղել։ Մարդկային բազում կյանքեր խլող արյունահեղությունները դարեր շարունակ մտատանջել և անհանգստացրել են շատ մտածողների, որոնք փորձել են գտնել դրանց շարժառիթներն ու հաղթահարման ուղիները։ Նրանք անկեղծորեն դատապարտում էին պատերազմը, կոչումներ անում, խաղաղության ծրագրեր առաջադրում։ Սակայն սոցիալական կոնկրետ պայմանները նրանց հնարավորություն չտվեցին բացահայտելու պատերազմի աղբյուրները, մատնանշելու համընդհանուր խաղաղության հասնելու միջոցներն ու եղանակները։

Չնայած դրան, այնուամենայնիվ, սոցիալական այդ չարիքի վերացման հարցում նրանց մտավոր ստեղծագործությունն ամենայն ուշադրության է արժանի։ Այս տեսակետից, որոշակի հետաքրքրություն են ներկայացնում նախամարքսյան հումանիստների դրույթներն ու դատողությունները։

Դեռ Իլիականում Հոմերոսը պատերազմը որակում էր որպես մի արնախում դահիճ, որի համար միևնույն է թե ում գլուխը կկտրի։ Պատմաբան Հերոդոտը գտնում էր, որ եթե մարդը խելքը չի թռցրել, ապա նա չի կարող պատերազմը գերադասել խաղաղությունից, քանի որ խաղաղության օրերին երեխաներն են թաղում ծնողներին, իսկ պատերազմի ժամանակ՝ ծնողները իրենց երեխաներին։

Վերածննդի դարաշրջանի մեծ հումանիստները դատապարտելով պատերազմները՝ որպես հակաբարոյական երևույթ, միաժամանակ կռահում էին ռազմական աղետների խթանները, խոսում խաղաղության պահպանման հնարավորության մասին։

Ուտոպիստ-սոցիալիստ Թոմաս Մորը գրում էր, որ մասնավոր սեփականությունը ծնում է ագահություն և քանի դեռ այն պահպանվում է, «...մարդկության ամենամեծ և ամենալավագույն մասի մոտ առհավետ կպահպանվի վշտերի դառը և անխուսափելի բեռը... Որտեղ ամեն ինչ փողով են չափում, այնտեղ հազիվ թե երբևիցե հնարավոր լինի ճիշտ և հաջող վարել պետական գործերը» (Т. Мор, **Утопия**, АН СССР, 1953, стр. 95—97)։



Մորը կռահում էր, որ մասնավոր սեփականության ոչնչացմամբ հասարակությունը կազատվի այն ուժերից, որոնք փոքրամասնության ագահությունը բավարարելու համար մեծամասնությանը պատճառում են վիշտ ու տառապանք։

Վերածննդի շրջանի նշանավոր մտածողներից մեկը՝ **Էրազմ Ռոտերդամցին**, որն իր շրջագայությունների ժամանակ մշտապես բախվում էր պատերազմների և դրանց կործանարար հետևանքների հետ, վճռականապես դատապարտում և անիծում էր արյունահեղությունները։ Իր **Խաղաղության գանգատը** աշխատության մեջ Էրազմը գրում էր, որ «Պատերազմը... զզվելի է այն ամենի համար, ինչ գոյություն ունի. պատերազմը բոլոր դժբախտությունների ու չարիքների սկզբնապատճառն է, անխտիր ամեն ինչ լափող անտակ օվկիանոս է...» (Эразм Роттердамский, **Жалоба мира**, Трактаты о вечном мире, Соцэкгиз, 1963, стр. 40)։

Էրազմը որսում էր այն ճշմարտությունը, որ տիրապետող ուժերի սանձազերծած պատերազմները ոչ մի ընդհանուր բան չունեն մեծամասնության, ժողովրդի շահերի հետ։ Նա հայտարարում էր, որ ժողովրդի մեծամասնությունը ատում է պատերազմը և աղոթում խաղաղության համար։ Պատերազմ ցանկանում են միայն քչերը, նրանք, որոնց ստոր բարեհաջողությունը կախված է ժողովրդական վշտից։ Էրազմը նկատում է, որ անհնար է հասնել խաղաղության և արդարության այն հասարակարգում, որտեղ իշխանավորները... ավելի շատ ագահության, քան բանականության, առողջ դատողությունների ձայնին են լսում, իսկ քահանաներն ու ճգնավորները մարդկանց մեջ պատերազմի և մարդասպանության կրքեր են բորբոքում»։ Հասարակ աշխատավորներին նա կոչ էր անում. «Թող բոլոր մարդիկ միավորվեն պատերազմի դեմ։ Թող բոլոր մարդիկ իրենց ձայնը բարձրացնեն դրա դեմ։ Թող բոլոր մարդիկ հրապարակորեն կամ մասնակի ձևով քարոզեն, փառաբանեն և մեծարեն խաղաղությունը... Այսպես, ուրեմն, օգտագործեք ձեր բանականությունն ու փորձը նրա համար, որպեսզի Ձեզ կապեն ոչ թե պարանի շղթաները, այլ ալմաստի նման ամուր շղթաներ, որոնք կտրելը անհնարին կլինի։

Հասկացեք, թե ինչպիսի վիթխարի ուժ է թաքնված ազնվականների բռնակալությանը հակադրվող մեծամասնության համատեղ գործողություններում» (նույն տեղը, էջ 57, 65)։

Էրազմը հավատում էր ժողովրդի ուժին, բայց սոցիալական պայմանները նրան հնարավորություն չէին տալիս ըմբռնելու օբյեկտիվ գործոնի դերը, առանց որի մասսաների գործողությունները առարկայազուրկ են և չեն կարող հաջողությամբ պսակվել։ Էրազմի կրքոտ կոչը արձագանք գտավ ռեֆորմացիոն շարժման ձախ թևի ներկայացուցիչ **Սեբաստիան Ֆրանկի** մոտ։

Հումանիստ Ֆրանկը գտնում էր, որ համընդհանուր խաղաղություն հաստատելը երկրի վրա արդարության թագավորության հաստատման պայմանն է։ Նա պատերազմը դիտում էր որպես անասնական, մարդկանց բնությանը հակասող գործողություն։ Ֆրանկը առաջադրում էր այն գաղափարը, որ ռազմական հանցանքների համար պետք է պատասխանատվության ենթարկել յուրաքանչյուրին, անկախ բանակում նրա գրաված դիրքից։ Ով ուրիշի բարիքը յուրացնելու համար պատերազմում է, բռնության դիմում, բռնակալ է. ովքեր նրան օգնում են, նույնպես բռնակալներ, մարդասպաններ ու թալանչիներ են։ Ֆրանկը, միաժամանակ, հասկանում էր արդարացի պատերազմների անհրաժեշտությունը։ Այսպես, նա արդարացի էր համարում 1525 թվականի գյուղացիական պատերազմը Գերմանիայում։ Հասկանալի է, իհարկե, որ խաղաղության մասին Ֆրանկի դատողություններն ու բարի ցանկությունները, վերջին հաշվով, կրում էին վերացական բնույթ, որովհետև չկային գործողությունների որոշակի ծրագիր և դրա իրագործման նյութական հնարավորություններ։ Սակայն, հենց այն հանգամանքը, որ Ֆրանկը վճռականորեն մերկացնում և դատապարտում էր թալանչիական պատերազմները, խոսում բռնակալության և անարդարության ոչնչացման անհրաժեշտության մասին, որի հետ է կապված

խաղաղության հաստատման հնարավորությունը, բնութագրում են նրան որպես մեծ հումանիստի, խաղաղության ջատագովի:

XVII դարում խաղաղության ծրագրով հանդես եկավ չեխ մանկավարժ, փիլիսոփա և գրող **Յան Ամոս Կոմենսկին**: **Համընդհանուր խորհուրդ մարդկային գործերը կարգավորելու մասին** աշխատության մեջ նա շարադրում է խաղաղության իր կոնցեպցիան: Ըստ Կոմենսկու խաղաղության պահպանման համար պետք է ստեղծվի պետությունների յուրատեսակ կաճառ, որը կարող է կոչվել նաև խաղաղության տերությունների դիրեկտորիա, խաղաղության սենատ կամ արեոպագ, որի անդամները խաղաղության տիրակալներ կամ գերագույն դատավորներ են: «Նրանք պետք է դառնան մարդկային հասարակությունը միավորող օղակը, ամեն ինչ և բոլորին դեպի խաղաղության բևեռը ձգող իսկական մագնիսը, մարդկային հասարակության մեջ կարգ ու կանոն հաստատող կենդանի սյուները և հենարանը» (Ян Амос Коменский, **Всеобщий Совет об исправлении человеческих дел.** Трактаты о вечном мире. Соцэкгиз, 1963, стр. 78):

Խաղաղության սենատի անդամները կլինեն հասարակական բարօրության գերագույն պահապանները, որոնք կխոչընդոտեն ո՛չ միայն նոր պատերազմների ու արյունահեղությունների առաջացմանը, այլև ժամանակին կվերացնեն դրանց առիթները, անհաղթահարելի պատնեշներ ստեղծելով ամեն մի պատերազմի առաջ: Կոմենսկին չի դիմում մարդկանց զգացմունքներին ու բանականությանը: Նա խաղաղության հասնելու հնարավորությունը կապում է հասարակական հարաբերությունների, ինչպես նաև կրոնի, փիլիսոփայության և քաղաքականության բարեփոխման հետ:

Կոմենսկին գտնում է, որ մարդկային հարաբերություններում կրքերն ու ցասումը վատ խորհրդատու են, իսկ բռնությունը և զենք գործադրելը ո՛չ թե մարդկային, այլ անասնական մղում է: Պատերազմը պետք է անդառնալիորեն վերացվի, իսկ դրա միակ երաշխիքը զենքն արգելելն է. «...զենքը հարկավոր է գործադրել գիշատիչների դեմ... հրանոթներից պետք է ժողովրդին կանչող զանգեր ձուլել կամ երաժշտական գործիքներ պատրաստել...» (Նույն տեղը, էջ 80), եզրափակում է Կոմենսկին:

XVII դարի վերջին և XVIII դարի սկզբին խաղաղության ծրագրով հանդես եկավ վաղ լուսավորության ներկայացուցիչ, դիվանագետ և փիլիսոփա **Սեն-Պիեռը**: Նրա կարծիքով հավիտենական և համընդհանուր խաղաղության ծրագրի ստեղծումը ամենափառահեղ մտահղացումն է: Սեն-Պիեռը երազում էր այն լուսավոր ապագայի մասին, երբ նա կտեսնի միավորված, հավիտենական համաձայնության և փոխըմբռնման պայմաններում ապրող եղբայրների խաղաղասեր համագործակցություն:

Հեղինակը որոնում է պատերազմի պատճառները և պետությունների վատ բավարարված պահանջմունքները համարում դրա աղբյուրը: Սեն-Պիեռը չըմբռնելով մարդկային կոնֆլիկտների իսկական պատճառները, բնականաբար, չէր կարող գտնել դրանց հաղթահարման ուղիներն ու միջոցները: Հավերժական խաղաղության նրա առաջարկած ծրագիրը օրիգինալ չէ: Նա խաղաղության երաշխիք է համարում համաեվրոպական կոմֆեդերացիայի ստեղծումը: Հավիտենական խաղաղության հաստատումը կախման մեջ դնում իշխանակիրների համաձայնությունից, նրանց դիմադրությունը համարելով միակ խոչընդոտը: Սակայն, հեղինակը համոզված չէ, որ իր նախագիծը կարող է կենսագործվել. «Իհարկե, այդ չի նշանակում, թե կառավարողները կընդունեն այդ նախագիծը... այլ նշանակում է միայն այն, որ նրանք կարող էին դա ընդունել, եթե համակերպվեին իրենց իսկական շահերին» (Сен-Пьер, **Избранные места из проекта вечного мира (в изложений Ж. Ж. Руссо, 1760).** Трактаты о вечном мире, стр. 137):

Վերջին դատողությունը բացահայտ մոլորություն է: Ստացվում է, որ խաղաղությունը ներդաշնակում է տիրապետող վերնախավի շահերին: Այստեղ, միաժամանակ, իդեալիզմի հոտ է փչում: Նրա կասկածները, թե խաղաղության իր նախագիծը իշխող շրջաններում կարող է դրական արձագանք գտնել,



իրենց արտացոլումն են գտնում հետևյալ խոսքերում. «Եթե, չնայած այդ բոլորին, նախագիծը չիրականացվի, դա կկատարվի ոչ թե այն պատճառով, որ այն ցնորամիտ է, ոչ, դա կպատահի այն պատճառով, որ մարդիկ խենթ են և որ լինել խելոք խելագարների ամբոխի մեջ, նույնպես խելահեղության մի տեսակ է» (Նույն տեղը, էջ 137):

Սեն-Պիեռի նախագծին համակրում էր **Ժան Ժակ Ռուսոն**: Ռուսոն միջազգային խաղաղասիրական ասոցիացիայի կողմնակիցներից մեկն էր. «Մեկ օրով ստեղծեցեք եվրոպական հանրապետություն, դա բավական կլինի, որպեսզի այն անվերջ գոյություն ունենա, քանի որ մարդկանցից ամեն մեկը սեփական փորձով ընդհանուրի բարօրության մեջ իր համար շատ օգուտներ կգտնի» (Жан Жак Руссо, **Суждение о вечном мире.** Трактаты о вечном мире, стр. 139):

Ռուսոն տեսնում էր Սեն-Պիեռի նախագծի ոչ ռեալ բնույթը, հավիտենական խաղաղություն ապահովելու՝ նրա առաջարկած եղանակների ու միջոցների մանկական միամտությունը: «Նա պարզամտորեն ենթադրում էր, որ բավական է հավաքել կոնգրեսը, նրան առաջադրել պայմանագրի հոդվածները, որը հետո կստորագրվի և ամեն ինչ կարվի (Նույն տեղը, էջ 143—144):

Ռուսոն ավելի շրջահայաց և խորաթափանց է: Նա ավելի լավ է հասկանում կառավարողների քաղաքական վարքագծի շարժառիթները. համոզված է, որ իր շահերով կաշկանդված ոչ մի միապետ առանց զայրույթի չի ընդունի որևէ միտք այն մասին, որ ինքը պետք է արդարացի վարվի ո՛չ միայն օտարերկրացիների, այլև իր սեփական հպատակների հետ:

Պատերազմով շահագրգռված է կառավարող վերնախավը: Հավիտենական խաղաղությունը կզրկի նրան հարստանալու, ժողովրդի հաշվին ճարպակալելու հնարավորությունից: Հավիտենական խաղաղությունը կիրականացվի միայն այն ժամանակ, երբ մասնավոր շահերը վեր չեն բարձրանա հասարակական շահերից և յուրաքանչյուրը կգիտակցի, որ ընդհանուր բարօրության մեջ է թաքնված իր անձնական բարեկեցությունը: Նշանակում է, խաղաղության պայմանը պետությունների ներքին կառուցվածքի փոփոխությունն է, բռնակալության ոչնչացումը, քաղաքական կյանքի դեմոկրատացումը: Ինչ վերաբերում է ֆեդերատիվ լիգաներին, ապա դրանց ստեղծումը հնարավոր է միայն հեղափոխական ճանապարհով: Ռուսոն հասկանում է, որ խաղաղությունը հնարավոր է միայն կոնկրետ պայմաններում և խաղաղության գաղափարի պրոպագանդան առանց իրադրության հաշվառման՝ վերացական զբաղմունք է: «Իհարկե, հավիտենական խաղաղությունը մեր ժամանակներում բավականաչափ անհեթեթ նախագիծ է...»,—գրում է նա (Նույն տեղը, էջ 149):

Պեսիմիստորեն է գնահատում խաղաղության հեռանկարը Ռուսոյի հայրենակից **Վոլտերը**: Նրա կարծիքով, ժամանակակից աշխարհում չկան այնպիսի միջոցներ, որոնց օգնությամբ հնարավոր լինի կանխել պատերազմը: Վոլտերը ծաղրում է աբբա Սեն-Պիեռի նախագիծը, այն գնահատելով որպես ցնորք, որն անընդունելի է իշխանավորների համար այնպես, ինչպես փղերի կամ ռնգեղջյուրների համար: Վոլտերը խաղաղությունն անկենսագործելի իդեալ է համարում, նման հեռանկարը կապելով կրոնական հանդուրժողականության հետ:

Խաղաղության պրոբլեմը չի վրիպում XVIII դարի ֆրանսիական մատերիալիստների տեսադաշտից: Նրանք հանդես են գալիս հակապատերազմական կոչերով: Դիդրոն Ռուսոյի նման զավթումների քաղաքականությունը կապում է բռնակալական կարգերի ուժեղացման հետ:

Ֆրանսիական մատերիալիստներն իրենց քննադատության սուր ծայրն ուղղում էին ֆեոդալա-միապետական կարգերի դեմ, դրանց հակադրելով բուրժուա-դեմոկրատական հանրապետական կարգերը, որոնց պայմաններում իբր միջազգային երկպառակությունները կվերանան: Միապետները լավ էին հասկանում, թե ում դեմ են ուղղված ֆրանսիական մատերիալիստների հակապատերազմական դատողությունները և փորձում էին հակառակն ապացուցել: Այսպես, պրուսական թագավոր Ֆրիդրիխ Երկրորդը հայտարարում

էր, թե սնոտիապաշտությունը, շահամոլությունը, վրեժխնդրությունը, երախտամոռությունը մարդու բնությունից են բխում, ուստի դրանք միշտ էլ կծնեն ոճրագործություններ։ Պատերազմները, ավերածությունները, համաճարակը երևույթներ են, որոնց շուրջը պտտվում է աշխարհը։

Միապետների բոլոր ճիգերն ու մտավոր մանիպուլյացիաները չէին կարող խախտել մեծ հումանիստների համոզմունքը այն բանում, որ ոչ թե թշնամանքն ու պատերազմները, այլ խաղաղությունն ու համաձայնությունն են մարդկանց բնական վիճակը։

Սեն-Պիեռի խաղաղասիրական ծրագիրը շարունակում է գրավել հետագա հումանիստ մտածողների ուշադրությունը, որոնք նոր ձևով են մեկնաբանում նրա տրակտատի բովանդակությունը։ Այս տեսակետից ուշագրավ է գերմանական փիլիսոփա Էմանուել Կանտի գրական ժառանգությունը։ Եթե Վոլտերը բացառում է հավիտենական խաղաղության հաստատման հնարավորությունը, ապա Կանտը այն դիտում է որպես օբյեկտիվ օրինաչափություն։ Ըստ Կանտի հասարակության մեջ օբյեկտիվորեն գործում է այնպիսի մի ուժ, որն ստիպում է մարդկանց ստեղծել պետություն և որը պետություններին կստիպի միմյանց հետ համաձայնագրեր կնքել։ Իսկական խաղաղությունը կարող է ձեռք բերվել համաձայնության միջոցով։ Այժմեական են հնչում Կանտի այն խոսքերը, որ պատերազմը կարող է հավիտենական խաղաղության հասցնել «միայն մարդկության վիթխարի գերեզմանատանը»։

Կանտի հավիտենական խաղաղության նախագիծը դիվանագիտական պայմանագրի բնույթ ունի։ Առաջին բաժնում հեղինակը շարադրում է նախնական հաշտության հոդվածները, որոնք, ըստ էության, հավիտենական խաղաղության նախնական պայմաններն են։ Այստեղ Կանտը առաջադրում է վեց հիմնական սկզբունքներ, որոնք հանգում են հետևյալին.

1. Խաղաղության ոչ մի պայմանագիր իր մեջ չպետք է բովանդակի նոր պատերազմի թաքնված հնարավորություն։

2. Ոչ մի ինքնուրույն պետություն չպետք է նվաճվի մեկ ուրիշ պետության կողմից։

3. Մշտական բանակները ժամանակի ընթացքում պետք է վերանան։

4. Պետական պարտքերը չպետք է օգտագործվեն արտաքին քաղաքական պայքարում։

5. Ոչ մի պետություն չպետք է բռնի միջամտի ուրիշ պետությունների կառավարման և պետական կառուցվածքի հարցերին։

6. Ոչ մի պետություն մեկ այլ պետության հետ պատերազմի ժամանակ չպետք է դիմի այնպիսի թշնամական գործողությունների, որոնք անհնարին դարձնեին փոխադարձ վստահությունն ապագայում, խաղաղ պայմաններում, ինչպես, ասենք, մարդասպաններ, թունավորողներ ուղարկելը, կապիտուլյացիայի պայմանները խախտելը, դավաճանության դրդելը և այլն։

Երկրորդ բաժնում Կանտը զետեղել է պետությունների միջև հավիտենական խաղաղություն հաստատելու դեֆինիտիվ (մեկընդմիշտ սահմանված) հոդվածները։ Նա գտնում է, որ յուրաքանչյուր պետության քաղաքացիական կառուցվածքը պետք է հանրապետական լինի, միջազգային իրավունքը կառուցվի ազատ պետությունների ֆեդերալիզմի վրա, ինչպես նաև համաշխարհային քաղաքականության իրավունքը սահմանափակվի համընդհանուր հյուրընկալության պայմաններով։

Ազատ պետությունների ֆեդերալիզմի վերաբերյալ Կանտի թեզիսում կոսմոպոլիտական ոչ մի երանգ չկա։ Կանտը աներկդիմի ասում է. «Դա կլիներ ժողովուրդների դաշինք, որը, սակայն, չի կարող լինել ժողովուրդների պետություն» (Иммануил Кант. **К вечному миру,** Трактаты о вечном мире, стр. 159)։ Դա նշանակում է, որ այդ մեծ դաշինքի ամեն մի անդամ պահպանում է իր սուվերենությունը, միաժամանակ օգտվելով ընդհանուր հարցերի քննարկմանը մասնակցելու իրավունքից։ Համաշխարհային քաղաքացիության իրավունքի վերաբերյալ թեզիսի հետ զուգորդվող այս դրույթը, հիրավի, հագեցած է հակագաղութատիրական ոգով։



Կանտը մերժում է մաքիավելիզմը քաղաքականության մեջ, առաջ քաշելով քաղաքականությունը բարոյականության հետ համաձայնեցնելու անհրաժեշտության գաղափարը։ Պատերազմը չի համապատասխանում ժամանակակից կուլտուրային։ Պրակտիկ բանականության կատեգորիկ իմպերատիվն ասում է, որ մարդկանց միջև պատերազմ չպետք է լինի. «Դրա համար էլ պետք է գոյություն ունենա հատուկ դաշինք, որը կարելի է անվանել խաղաղության դաշինք (foedus pacificum) և որը կտարբերվեր խաղաղության պայմանագրից (pactum pacis) նրանով, որ վերջինը ձգտում է վերջ դնել միայն մեկ պատերազմին, այն ժամանակ, երբ առաջինը՝ բոլոր պատերազմներին և առհավետ» (նույն տեղը, էջ 161)։

Ըստ Կանտի հավիտենական խաղաղությունը միջազգային իրավունքի վերջնական նպատակն է։ Նա պատերազմը հակաբարոյական երևույթ է համարում, հավանություն է տալիս այն ասույթին, որ «պատերազմը ավելի շատ չար մարդիկ է ստեղծում, քան սպանում է նրանց»։

Փիլիսոփայի որոնող միտքը ձգտում է գտնել այնպիսի իրավիճակ, որի ժամանակ պատերազմը անբանական քաղաքականություն կդառնա։ Իհարկե, ով չի հասկանում ռազմական աղետների իսկական մոտիվները, չի կարող գտնել դրանցից դուրս գալու հնարավորությունները։ Կանտը կուլտուրայի աճը համարում է համաձայնության և խաղաղության պայման։ Ուշագրավ է այն միտքը, որ մարդկանց միաբանության և խաղաղության հաստատման համար կարևոր դեր է խաղում սկզբունքների միասնությունը։ Կանտն առաջարկում է հասնել քաղաքականության և բարոյականության փորձնական դաշինքի։

Պատերազմների հարցը խիստ մտատանջում է XVIII դարի մեկ ուրիշ հումանիստի՝ Իոհան Գոտֆրիդ Հերդերին։ Փիլիսոփան երազում է համընդհանուր խաղաղության և բարեկամության մասին։ Նա դատապարտում է պատերազմը՝ որպես միջազգային տարաձայնությունների լուծման մեթոդ։ Հերդերը օգտագործում է անցյալի հումանիստական տրադիցիաները։ Նա գտնում է, որ հավիտենական խաղաղություն հաստատելու անհրաժեշտության մասին նախորդ մտածողների գաղափարները չեն կորցրել իրենց նշանակությունն ու նորությունը։

Խաղաղության պրոբլեմը Հերդերին հետաքրքրում է, ամենից առաջ, բարոյական կողմից։ Ի տարբերություն Կանտի, որը հավիտենական խաղաղությունը ժողովուրդների դաշինքի, համաձայնության հետ է կապում, Հերդերը իրավացիորեն նկատում է, որ թշնամանքով լի աշխարհում ոչ մի համաձայնություն և ոչ մի դաշինք՝ խաղաղության երաշխիք չի կարող լինել։ Մինչև խաղաղության ծառը իր ամուր և խոր արմատները չգցի յուրաքանչյուր ժողովրդի մեջ, բռնությունը կկործանի ամեն մի խաղաղասիրական ծրագիր։

Հերդերը խաղաղության գործի հաղթանակը չի կապում կառավարողների ողջամտության հետ։ Նա դիմում է ժողովրդական մասսաներին, հավատում նրանց ստեղծագործական ուժին, կարողությանը։

Կանտի հավիտենական խաղաղության գաղափարը հավանություն է գտնում Իոհան Գոտլիբ Ֆիխտեի կողմից։ Գնահատելով Կանտի Դեպի հավիտենական խաղաղություն աշխատությունը, Ֆիխտեն տրակտատի հիմնական գաղափարը համարում է այն, որ ինքը՝ բանականության բնությունը, խաղաղության գաղափարի իրացման կարիք է զգում։ Հավիտենական խաղաղության իդեան մի խնդիր է, որ իմմանենտ է մաքուր բանականությանը։ Մեկնաբանելով Կանտի երկի երկրորդ դեֆինիտիվ հոդվածը, ըստ որի «Միջազգային իրավունքը պետք է հիմնվի ազատ պետությունների ֆեդերալիզմի վրա», Ֆիխտեն գրում է. «Պատերազմն արդարացնող միջազգային իրավունք չկա։ Իրավունքը խաղաղությունն է։ Պատերազմը առհասարակ իրավական վիճակ չէ... հազիվ թե հնարավոր լինի գտնել ավելի անհեթեթ մի բան, քան պատերազմի իրավունք հասկացությունը» (Иоганн Готлиб Фихте, **К вечному миру. Философский проект Иммануила Канта,** Трактаты о вечном мире, стр. 199)։

Ֆիխտեն նշում է, որ խաղաղության հասնելու համար անհրաժեշտ է

փոխել գոյություն ունեցող ունեցվածքային հարաբերությունները. «...իր ներքին կառուցվածքով անարդարացի պետությունն անխուսափելիորեն ձգտում է թալանել հարևաններին, որպեսզի որոշ հանգիստ տա իր արյունաքամ եղած քաղաքացիներին և նվաճի նոր լրացուցիչ աղբյուրներ» (նույն տեղը, էջ 202)։ Եվ միայն այն բանից հետո, երբ կհաստատվի ունեցվածքային հավասարություն և հարստությունները հավասարաչափ կբաշխվեն, պետության մեջ կհաղթեն իրավունքն ու բանականությունը և ժողովուրդների դաշինքի միջոցով հավիտենական խաղաղությունը կգտնա իրականություն։ Ֆիխտեն համոզված է, որ առկա է խաղաղության հասնելու տենդենցը։ Սակայն, նա չի կարողանում գտնել սոցիալական այն հարաբերությունները, որոնց մեջ պատերազմները ավելորդություն կլինեն։

Առանձին առիթներով պատերազմի մասին խոր ատելությամբ են խոսում Լայբնիցն ու Սպինոզան, Յումն ու Պասկալը, Պրիստլին և սոցիալիստ-ուտոպիստները։ Յումը պատերազմող ազգերին համեմատում է երկու հարբեցողների հետ, որոնք կռիվ են սարքում ամենաղենի կրպակում և բացի հարվածներից առաջացած կապտուկները բուժելու անհրաժեշտությունից, ստիպված են որոշակի գումար մուծել ջարդված ամանեղենի համար։ Պասկալը հուզմունքով ընդգծում է, որ չկա ավելի ծիծաղելի բան, երբ մարդուն թույլատրվում է սպանել ինձ զուտ այն բանի համար, որ նա գետի մյուս կողմում է ապրում, և որ նրա իշխանը հավակնություններ ունի իմ իշխանի նկատմամբ, չնայած այն բանին, որ ես ոչ մի հավակնություն չունեմ նրա իշխանի նկատմամբ։ Ի դեպ, Վոլտերն ավելացնում է. ««Ծիծաղելի» բառն այստեղ հարմար չէ, հարկավոր է ասել «նողկալի՜ խելացնորություն»»։

Սեն-Սիմոնը խաղաղության բախտը կապում էր արմատական սոցիալական վերափոխությունների հետ։ Նա գրում էր, որ մարդկության ոսկե դարը սոցիալական կարգերի կատարելության մեջ է, այն կհաստատվի ապագայում, որին կհասնեն մեր երեխաները։ Մեր խնդիրն է նրանց համար հարթել այդ ճանապարհը։

XVIII դարում խաղաղասիրական կոչերով ու ծրագրերով հանդես եկան ռուս լուսավորիչներ Դեսնիցկին, Կոզելսկին և Ռադիշչևը։ Ռադիշչևը զայրույթով բողոքում է թալանչիական պատերազմների դեմ։ Մարդու էությանը խորթ են ագահությունն ու շահամոլությունը, պնդում է նա։ Միջազգային հարաբերություններում գործում է ուժեղի իրավունքը, սուրը։ Ուժեղը օրինականացնում և արդարացնում է իր գործողությունները։ Մարդու մեծությունը ոչ թե ժողովուրդներին սնանկացնելու ու թալանելու, այլ բարեգործության մեջ է։ Ալեքսանդր Մակեդոնացու նվաճողական պատերազմները չէին կարող նրան փառք ու պատիվ բերել։ «Անմի՛տ,— դիմում է Ռադիշչևը Մակեդոնացուն,— հայացք նետիր քո արշավանքների վրա։ Քո թռիչքի գահավիժող մրրիկը... իր հետևից թողնում է անապատ և անկենդան տարածություն» (А. Н. Радищев, Избр. филос. и обществ. полит. произв., 1952, стр. 140)։ Ժողովուրդները կանիծեն նրան, ով մահ ու սարսափ է տարածել։

Ռադիշչևը հավատում է, որ հասարակության հեղափոխական վերակառուցումը հեռու կպահի մարդկությանը բռնությունից ու սարկացումից և ընդմիշտ կփակի պատերազմի սատված երկերեսանի Յանուսի տաճարը։

Խաղաղության և պատերազմի պրոբլեմներին նվիրված մի ամբողջական ծրագիր մշակեց XVIII դարի ռուս սոցիոլոգ-լուսավորիչ Վ. Ֆ. Մալինովսկին։ Նրա **Դատողություն խաղաղության և պատերազմի մասին** տրակտատը հագեցած է բացահայտ հակամիլիտարիստական ոգով։ Մալինովսկին ժխտում է պատերազմի անհրաժեշտությունը. «...չարիքի երկարատևությունը չի ապացուցում դրա անհրաժեշտությունը...» (В. Ф. Малиновский, **Рассуждение о мире и войне**, Трактаты о вечном мире, стр. 215)։

Մալինովսկին հասկանում է, որ կառավարողների քաղաքականության և ժողովուրդների շահերի միջև գոյություն ունի անտագոնիզմ. «...ո՛չ պատերազմի փառքը, ո՛չ արքունիքի վեհաշուքությունը ժողովրդի փառքն ու վեհաշուքությունը չեն կազմում» (նույն տեղը, էջ 221)։



Ինչպես երևում է, տարբեր ժամանակներում տարբեր մտածողներ կրքոտ կերպով դատապարտել են պետությունների զինված գոտեմարտերը։

Սակայն, ինչպես Էնգելսն էր մատնանշում, հավիտենական խաղաղության մասին գաղափարները բուրժուական քաղաքական կազմակերպության կամ եվրոպական հանրապետության օրոք դատարկ երազանքներ էին և ծիծաղելի դարձան այնպես, ինչպես առևտրի համընդհանուր էգիդայի ներքո ժողովուրդների միավորման մասին դարձվածքները։

Բուրժուազիան շահագործման ու սոցիալական անհավասարության նոր պայմաններ ստեղծելով գերազանցեց նախորդ կեղեքիչ դասակարգերին մարդասպանության արվեստի մեջ. «Բանականության պետությունը լիովին խորտակվեց... խոստացած հավիտենական խաղաղությունը նվաճողական պատերազմների անվերջ շարքի վերածվեց»։ Գործնականում բոլոր այդ սենտիմենտալ ցնորքները ամբողջովին կորցրեցին իրենց ուժը։ Արդյունքը օբյեկտիվորեն ծագած հակասությունն էր ցանկության և կատարման, մտածողության և կեցության միջև։

Խաղաղությունը բավականաչափ ռադիկալ խնդիր է, որպեսզի այն հնարավոր լինի լուծել սոսկ բարի ցանկություններով և մարդկանց բանականությանն ու զգացմունքներին դիմելով։

Սոցիոլոգիայի պատմության մեջ առաջին անգամ մարքսիզմը գիտականորեն բացահայտեց պատերազմի ծագման աղբյուրներն ու պատճառները և համընդհանուր խաղաղության ապահովման ռեալ հեռանկարները։ Ինչպես Լենինն էր ասում, մարքսիզմը պատասխան տվեց այն բոլոր հարցերին, որ մարդկային միտքն արդեն առաջադրել էր։

Քննադատորեն մշակելով խաղաղության պրոբլեմի վերաբերյալ դեմոկրատական ծրագրերն ու հումանիստական գաղափարները, մարքսիզմը դրան տվեց գիտական լուծում։

Պատմության փորձը հաստատեց մարքսիստական ուսմունքի այն հիմնադրույթներից մեկը, որ պատերազմները հասարակական կյանքից բացառելու ռեալ հնարավորությունը գոյանում է սոցիալ-քաղաքական արմատական վերափոխությունների ընթացքում։ Բնորոշ է, որ հենց կապիտալիզմից սոցիալիզմին հեղափոխական անցման դարաշրջանում ծագեցին անհրաժեշտ սոցիալական ուժեր, որոնք ի վիճակի են փակելու պատերազմի ճանապարհը։

Արդի պայմաններում խաղաղության բնական էպիկենտրոնը սոցիալիզմի համաշխարհային սիստեմն է, որի ռազմա-տնտեսական հզոր պոտենցիալը զսպող ներգործություն է ունենում ագրեսիվ իմպերիալիզմի վրա։

Աշխարհը կործանարար ջերմամիջուկային պատերազմի վտանգից փրկելու համար անհրաժեշտ է իմպերիալիզմի ռազմատենչ ուժերին հակադրել միջազգային պրոլետարիատի բոլոր ջոկատների, արդիականության բոլոր հեղափոխական ուժերի միասնական գործողություններն ու անընկճելի կամքը։ Ժողովուրդների հակապատերազմական կոալիցիայի կազմավորումը, որի մեջ մտնում են սոցիալիզմի նյութական հզորության վրա հենվող ամենատարբեր սոցիալական հեղափոխական ուժեր՝ համընդհանուր խաղաղության պահպանման հուսալի հենարանն է։ Այս առումով խիստ հատկանշական է Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության դեկլարացիան, որը ջերմ հավանության արժանացավ սոցիալիստական երկրների և ողջ պրոգրեսիվ մարդկության կողմից։

Դեկլարացիան ստորագրած պետությունների ներկայացուցիչները հաստատակամորեն նշել են, որ «նրանք լի են վճռականությամբ միջազգային ասպարեզում պաշտպանելու խաղաղության, պետությունների միջազգային համագործակցության, ազատասեր և առաջադիմական բոլոր ուժերի համախմբման գիծը, պայքարելու իմպերիալիստական ագրեսիայի, թելադրանքի, բռնության քաղաքականության դեմ, պաշտպանելու ազատության, ազգային անկախության և սոցիալական առաջադիմության գործը»։

Լ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

*Հայկական ՍՍՀ սոցիալական ապահովության մինիստր*

# ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ՆԿԱՏՄԱՄԲ

*ՆՈՐ հնգամյակում ազգային եկամուտը կմեծանա 38—41 տոկոսով, բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտները կավելանան 1,3 անգամ, բանվորների և ծառայողների աշխատավարձը կբարձրանա 20 տոկոսով, իսկ հանրային տնտեսությունից ստացվող կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտը՝ 35—40 տոկոսով, կապահովվի կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության մոտեցումը բանվորների և ծառայողների աշխատանքի վարձատրությանը։*

*Խոշոր միջոցներ են հատկացվելու աշխատավորության սոցիալական ապահովության նպատակներին, որի շնորհիվ բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ծերության կենսաթոշակների նվազագույն չափերը կբարձրացվեն ավելի քան 30 տոկոսով։ Ծերության կենսաթոշակներ 50 տարեկանից կսահմանվեն արդյունաբերական ձեռնարկությունների առանձին կատեգորիաների բանվորուհիներին, որոնք որոշ ճյուղերում զբաղված են աշխատանքի բարձր ինտենսիվություն ունեցող արտադրամասերում։ Ծերության կենսաթոշակ ստանալու համար անհրաժեշտ հասակի և կենսաթոշակի հաշվարկումների կարգի տեսակետից կոլտնտեսականները հավասարեցվում են բանվորներին ու ծառայողներին, բարձրացվելու են երկրորդ խմբի հաշմանդամ կոլտնտեսականների կենսաթոշակների նվազագույն չափերը, ինչպես նաև կենսաթոշակային ապահովում կսահմանվի երրորդ խմբի հաշմանդամ այն կոլտնտեսականներին, որոնք հաշմանդամ են դարձել աշխատանքում խեղման կամ պրոֆեսիոնալ հիվանդության հետևանքով։*

*Յոթնամյակի տարիներին կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մի շարք միջոցառումներ իրագործեցին աշխատավորների սոցիալական ապահովության, նյութական բարեկեցության բարձրացման, հաշմանդամների և կերակրողը կորցրած ընտանիքի անդամների, Հայրենական պատերազմի հաշմանդամների կենսաթոշակների նվազագույն չափերի բարձրացման ուղղությամբ։ Առաջին կարգի հաշմանդամների կենսաթոշակների նվազագույն չափերը բարձրացան 30—40 տոկոսով, երկրորդ կարգինը՝ 23—31, կերակրողը կորցրած ընտանիքի անաշխատունակ անդամներինը 3 անձի դեպքում՝ 64, մեկ կամ երկու անձի դեպքում՝ 31 տոկոսով։ Հայրենական պատերազմի հաշմանդամներին և զոհվածների ընտանիքների անդամներին տրվեցին նաև մի շարք այլ արտոնություններ։*

*1966 թվականի հունվարի 1-ի դրությամբ հանրապետության սոցիալական ապահովության մարմիններից կենսաթոշակ և նպաստ են ստացել 302,720 հոգի, այդ թվում՝ պետական սոցիալական ապահովության գծով՝ 164,168, կոլտնտեսականներ՝ 53,646 և բազմազավակ ու միայնակ մայրեր՝ 84,906։ 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, պետական կենսաթոշակառուների թիվն աճել է 3432-ով (կամ 5 տոկոսով)։ 1965 թվականին 7895 կոլտնտեսուհիների հղիության ու ծննդաբերության նպաստ է տրվել։ Մեր հանրապետությունում ավելի քան 71 միլիոն ռուբլի է հատկացվել կենսաթոշակների և նպաստների վճարմանը, հաշմանդամների տների պահպանմանը, կուրորտային բուժմանը և օրթոպեդիկ պարագաներ (ավտոմեքենաներ և այլն) ձեռք բերելու համար, իսկ 1966 թվականին այդ նպատակին նախատեսված է մոտ 83 միլիոն ռուբլի։*

*Սակայն մեր օրերում դեռևս կան պորտաբույծներ, որոնք կենսաթոշակ կամ նպաստ ստանալու համար դիմում են ամեն տեսակ կեղծիքի։ Սոցիալական ապահովության օրգանների հետևողական աշխատանքի շնորհիվ նվազում է այդպիսիների թիվը։ Այս տեսակետից աչքի են ընկնում Լենինական, Ալավերդի, Կիրովական, Հրազդան քաղաքների և Բասարգեչարի, Շահումյանի, Սպիտակի, Հրազդանի, Սիսիանի շրջանների սոցիալական ապահովության բաժինները։ Այստեղ ուսանելին այն է, որ կենսաթոշակներ և նպաստներ նշանակելու վերաբերյալ ստացված փաստաթղթերը նախապես ուսումնասիրելուց, ստուգելուց հետո են միայն ներկայացվում քննարկման։ Լավ է գործում հասարակական հիմունքներով աշխատող ակտիվը, այն սերտ կապ է պահպանում հիմնարկ-ձեռնարկություններում ստեղծված սոցիալական ապահովության հանձնաժողովների հետ։ Այդ ուղղությամբ որոշակի գործ են կատարել նաև Ստեփանավանի, Կալինինոյի, Աբովյանի, Ամասիայի շրջանների և Կամո քաղաքի սոցիալական ապահովության բաժինները։ Նկատելիորեն բարձրացել է սոցի.ալական ապահովության բնագավառի աշխատողների պատասխանատվությունն իրենց հանձնարարված գործի նկատմամբ։ Սակայն դեռևս կան այնպիսի բաժիններ (Մարտունու, Եղեգնաձորի, Գորիսի, Գուգարքի և այլն), որոնք երկարամյա աշխատանքի փորձ ունենալուց հետո էլ թույլ են տալիս կոպիտ խախտումներ և ոտնահարում են աշխատավորների իրավունքները։*

*Ընթացիկ տարում ստուգված 26 շրջանային-քաղաքային սոցապբաժիններում ավելի քան 1006 պետական կենսաթոշակների և 109 բազմազավակ և միայնակ մայրերի նպաստների գործերում հայտաբերվել են լուրջ սխալներ ու թերություններ. միայն Մարտունու շրջսոցապբաժնում այն հասնում է 226-ի, Գորիսում՝ 151-ի։*

*Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել ապացուցելու, որ կեղծ փաստաթղթերով ապօրինի կենսաթոշակներ են նշանակվել մի շարք քաղաքացիների։ Այս անօրինականությունները հետևանք են այն բանի, որ առանձին հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ որոշ քաղաքացիների աշխատանքի ստաժի և աշխատավարձի չափի մասին ոչ ճիշտ տեղեկանքներ են տալիս։*

Միաժամանակ, քիչ չեն քաղաքացիների իրավունքներն ոտնահարելու և նրանց օրինական պահանջները մերժելու դեպքերը: Միայն 1965 թվականին ավելի քան 6900 ռուբլու չափով 133 հոգու կենսաթոշակներ և 16 բազմազավակ մայրերի նպաստներ պակաս են վճարվել: Քաղաքացիների իրավունքների ոտնահարման դեպքեր են թույլ տրվել Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Մարտունու, Գորիսի, Հոկտեմբերյանի, Աշտարակի և այլ շրջանային-քաղաքային սոցապ բաժիններում: 1963 թվականի սեպտեմբերից Ազիզբեկովի շրջանի բնակիչ Գեղամ Պողոսի Մարգարյանի կենսաթոշակի վճարումը ընդհատվել է աշխատանքային ստաժի վերաբերյալ փաստաթղթերի հիմքերն ստուգելու նպատակով և ավելի քան մեկ տարի ինն ամիս նրա կենսաթոշակի գործը շրջել է Երևան քաղաքի Սպանդարյանի, Բասարգեչարի, Եղեգնաձորի շրջանային և հանրապետության սոցիալական ապահովության մինիստրության կենսաթոշակների և պետնպաստների բաժիններում: Չնայած դրան, Մարգարյանի հարցը լուծվեց 1965 թվականի մայիսի 21-ին՝ միայն կոլեգիայի միջամտությունից հետո: Նույն շրջանի բնակիչ Երվանդ Սահակյանի աշխատանքի ստաժի վերաբերյալ փաստաթղթերը Նախիջևանի ԻՍՍ հանրապետության արխիվում բաժնի նախկին ավագ տեսուչ Ս. Ստեփանյանի կողմից ստուգվելուց հետո կազմվել էր նրան կենսաթոշակի իրավունքից զրկելու ապօրինի ակտ: Սակայն, երկրորդ ստուգումը պարզեց, որ Սահակյանն իրոք աշխատել է, և արխիվում կան վերոհիշյալը ապացուցող բավարար հիմքեր և, ավելի քան մեկ տարի երեք ամիս ձգձգվելուց հետո, դարձյալ կոլեգիայի միջամտությամբ, 1965 թվականի հունիսի 30-ին լուծվեց Ե. Սահակյանի կենսաթոշակի հարցը:

Շրջանային-քաղաքային սոցիալական ապահովության շատ բաժիններում դեռևս շարունակվում է անհոգությունը մարդկանց նկատմամբ, իսկ մինիստրության կենսաթոշակների և պետնպաստների բաժինը ժամանակին չի կանխում նման երևույթները:

Կոլտնտեսականներին կենսաթոշակներ նշանակելու մասին օրենքը գործադրելուց հետո արմատապես բարելավվեց կոլտնտեսային գյուղացիության սոցիալական ապահովության գործը: Նրանց իրավունք տրվեց ստանալու ծերության, հաշմանդամության, կերակրողը կորցնելու դեպքում կենսաթոշակներ, իսկ կանանց՝ նաև հղիության ու ծննդաբերության նպաստներ: Սոցիալական ապահովության շրջանային բաժիններում ստեղծվեցին կոլտնտեսային սոցիալական ապահովության տեղական և շրջանային խորհուրդներ, կենսաթոշակներ նշանակող հանձնաժողովներ, որոնցում ընդգրկվեցին հասարակական հիմունքներով աշխատող հարյուրավոր ակտիվ կոլտնտեսականներ: Խորհուրդներն ու թոշակավորման հանձնաժողովները կոլտնտեսությունների վարչությունների հետ միասին զգալի աշխատանք կատարեցին կոլտնտեսականներին ժամանակին կենսաթոշակներ նշանակելու ուղղությամբ: 1966 թվականի հունվարի 1-ի դրությամբ հանրապետության 35 շրջաններում կենսաթոշակի անցան 53.364 կոլտնտեսական: Հղիության և ծննդաբերության նպաստներ վճարվեց 7895 կոլտնտեսուհիների: Կենսաթոշակներ և նպաստներ նշանակելու աշխատանքները լավ կազմակերպեցին Սպիտակի, Անիի, Հրազդանի, Սիսիանի, Ապարանի, Շամշադինի, Վեդիի, Արտաշատի շրջսոցապբաժինները և սոցիալական ապահովության շրջանային խորհուրդները: Օրենքի կենսագործման ընթացքում առաջացան մի շարք նոր և կարևոր հարցեր, որոնք կառավարության լրացուցիչ որոշումներում ու պարզաբանումներում դրական լուծում



ստացան: Դրանո՛վ էլ ավելի ընդլայնվեցին կոլտնտեսականների կենսաթոշակ ստանալու իրավունքի շրջանակները:

Կոլտնտեսականներին կենսաթոշակներ և նպաստներ նշանակելու մասին օրենքի կիրառմամբ բարձրացավ նրանց աշխատանքային ակտիվությունն ու շահագրգռվածությունը: Կառավարության որոշմամբ 1965 թվականից կոլտըն-
տեսականների համար հաստատվել է աշխատանքային գրքույկների նոր ձև:
Անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել կարճ ժամանակում ավարտելու կոլտնտե-
սականների աշխատանքային գրքույկները պատրաստելու գործը:

Հանրապետության բժշկա-աշխատանքային էքսպերտ հանձնաժողովները
Աշխատավորության շրջանում հաշմանդամության նվազեցման և բժշկա–աշ-
խատանքային էքսպերտիզան բարելավելու միջոցառումների մասին ՀՍՍՀ Մի-
նիստրների սովետի 1964 թվականի հունվարի 21-ի որոշման կենսագործման
ուղղությամբ զգալի աշխատանք են տարել: Անցյալ տարի որոշ չափով բա-
րելավվել է ԲԱԷՀ-ների հսկողությունը հաշմանդամների աշխատանքային
երաշխավորությունների կիրառման նկատմամբ: ԲԱԷՀ-ները հաճախակի ու-
սումնասիրություններ են կատարել հիմնարկ-ձեռնարկություններում և արդյու-
նաբերական խոշոր օբյեկտներում, բժշկա-կոնսուլտացիոն հանձնաժողովների
հետ համատեղ նիստեր ու խորհրդակցություններ են հրավիրվել բժշկա-աշ-
խատանքային էքսպերտիզայի հարցերի շուրջ:

Հանձնաժողովների բժիշկ-մասնագետների էքսպերտ գիտելիքները բարձ-
րացնելու և առաջավոր փորձը ուսումնասիրելու նպատակով 1965 թվականին
մի խումբ բժիշկներ գործուղվել են Մոսկվա և Լենինգրադ: Գիտապրակտիկ
կոնֆերանսներ են անցկացվել ներքին հիվանդությունների կլինիկայի, բուժ-
ման և խմբորոշման, տուբերկուլյոզով հիվանդների էքսպերտիզայի և մի
շարք թեմաների շուրջ: Այնտեղ քննարկվել են Երևանի բժշկական ինստիտուտի
դասախոսներ Վարդապետյանի և Ռոստոմյանի զեկուցումները, ինչպես նաև
հանրապետական ԲԱԷՀ-ների նախագահներ ընկ. ընկ. Նեկրասովայի և Ման-
դալյանի զեկուցումները՝ հանրապետության էքսպերտիզայի վիճակի մասին:
Հանրապետությունում աչքի հիվանդություններով տառապող քաղաքացիների
էքսպերտիզայի գործը բարելավելու նպատակով, 1965 թվականի նոյեմբեր
ամսից, կազմակերպվել է հանրապետության ակնաբուժական մասնագիտա-
կան ԲԱԷՀ:

Չնայած կատարված դրական աշխատանքներին, ԲԱԷՀ-ների գործունեու-
թյան մեջ, հատկապես էքսպերտիզայի և խմբորոշման հարցերում, դեռևս լուրջ
թերություններ կան: Մասնավորապես շրջաններում անբավարար է ԲԱԷՀ-ների
կապը բուժհիմնարկների հետ. հիմնականում դրանով պետք է բացատրել այն,
որ բժշկա-կոնսուլտացիոն հանձնաժողովների կողմից ԲԱԷՀ-ներին քննության
ուղարկված քաղաքացիների 25, իսկ առանձին շրջաններում 30—35 տոկոսը
հաշմանդամ չեն ճանաչվել: Այդ արդյունք է նաև այն բանի, որ բուժող բժիշկ-
ները բավարար չափով ծանոթ չեն բժշկա-աշխատանքային էքսպերտիզայի
սկզբունքին, իսկ առողջապահության մինիստրությունը, չնայած իր մի շարք
հրամաններին, բուժող բժիշկներին և ԲԿՀ-ի անդամներին բժշկա-աշխատան-
քային էքսպերտիզայի սկզբունքներին ծանոթացնելու համար մինչև օրս դաս-
ընթացներ չի կազմակերպել:

Հանրապետության սոցիալական ապահովության մարմինները զգալի աշխատանք են կատարում նաև հաշմանդամներին ըստ իրենց առողջական վիճակի արտադրական նոր մասնագիտություններ սովորեցնելու, նրանց աշխատունակությունը վերականգնելու և հանրօգուտ աշխատանքում ներգրավելու ուղղությամբ։ Այդ նպատակի համար տարեկան հատկացվում է շուրջ 80 հազար ռուբլի։ Միայն անցյալ տարի տարբեր մասնագիտությունների գծով անհատական աշխուսուցման մեջ ընդգրկվել են 431 հաշմանդամ, ուսուցումն ավարտել են 209 հոգի, որոնցից 120-ն արդեն աշխատում են։

Մեր երկրում հոգատարությամբ են շրջապատված Հայրենական մեծ պատերազմի հաշմանդամները։ Նրանց առողջական և կուլտ-կենցաղային կարիքները հոգալու համար սովետական կառավարությունը հսկայական միջոցներ է հատկացնում։ Սոցապբաժինները չաշխատող հաշմանդամ-թոշակառուներին սանբուժման ուղեգրեր հատկացնելու ժամանակ առաջնություն են տալիս Հայրենական պատերազմի հաշմանդամներին։ 1965 թվականին Հայրենական պատերազմի 186 հաշմանդամների անվճար հատկացվել է Զապորոժեց ավտոմեքենա, իսկ 45-ին՝ մոտոսայլակ։ Այս տարի հաշմանդամներին հատկացվելու են՝ 192 Զապորոժեց, 30 Մոսկվիչ ավտոմեքենա. 150 Զապորոժեց ու 10 մոտոսայլակ անվճար տրվելու է Հայրենական պատերազմի հաշմանդամներին։ Սոցիալական ապահովության մարմինները հաշմանդամներին հատկացնում են ոչ միայն ավտոմեքենաներ, այլև հանրապետության սոցիալական ապահովության մինիստրության հաշվին նրանք սովորում են ավտովարորդի իրավունք ստանալու դասընթացներում։

* * *

Մինիստրության կոլեգիայի որոշմամբ այս տարվա սկզբներից Երևանում, Լենինականում, Կիրովականում, Կամոյում, Հոկտեմբերյանում, Արտաշատում, Էջմիածնում, Եղեգնաձորում և Գուգարքում կենսաթոշակների ու նպաստների վճարումների հաշվապահական գործարքները կատարվում են հաշվիչ-մեքենայական կայանների միջոցով։ Հետագայում վճարումները ևս կկատարվեն կենտրոնացված բյուրոների կողմից։ Իսկ այս տարվա հուլիսի 1-ից բազմազավակ և միայնակ մայրերի միանվագ ու ամսական նպաստների վճարումները տրվելու են կապի ձեռնարկությունների միջոցով, քարտային սիստեմով։

Նոր միջոցառումները զգալի չափով կթեթևացնեն այդ բաժինների աշխատանքները։ Սխալների ու թերությունների մի մասը գործը ճիշտ չկազմակերպելու և հանձնարարված գործի նկատմամբ բավարար պատասխանատվության բացակայության հետևանք է, մի բան, որի վերացումը կախված է մեզանից։ Եթե մեր բաժիններում կազմակերպական աշխատանքները դրվեն բարձր հիմքերի վրա, կադրերը ճիշտ ընտրվեն ու տեղադրվեն, յուրաքանչյուրն իր պարտականությունը կատարի բարեխղճորեն և ժամանակին, քաղաքացիների իրավունքները հիմնավորող փաստաթղթերի հետ կապված ստուգումները կատարվեն խնամքով, կանխվեն անօրինականությունները, մենք խույս կտայինք այն սխալներից ու թերություններից, որոնց մասին վերը խոսվեց։

Խ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Աշխարհագրական գիտությունների թեկնածու

# ՄԵՐ ՔԱՂԱՔՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԽՆԴԻՐՆԵՐ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ շինարարության ընթացքում Սովետական Հայաստանի տնտեսության մեջ կատարված արմատական տեղաշարժերը նպաստեցին նոր քաղաքների ստեղծմանը, խոշորացմանը, քաղաքային և գյուղական բնակչության տեսակարար կշռի փոփոխություններին։ 1965 թ. հունվարի 1-ի դրությամբ 50 քաղաքային բնակավայրերում[1] ապրում է հանրապետության ամբողջ բնակչության կեսից ավելին, 1913 թ. 10,4 տոկոսի դիմաց։ Ակնբախ են քաղաքային բնակչության գերաղանց աճի տեմպերը։ Այսպես, օրինակ, միայն 1959—1965 թթ. ընթացքում Հայկական ՍՍՀ քաղաքային բնակչությունն աճել է 33,2, գյուղականը՝ 8,8 տոկոսով։ Սակայն, դեռևս խիստ զգալի են բնակչության բաշխման տատանումները քաղաքների միջև։ Բավական մեծ է փոքր քաղաքային բնակավայրերի թիվը։ Այսպես. 5—10 հազար բնակիչ ունեցող քաղ. բնակավայրերի թիվը հասնում է 11-ի, 10—20 հազար բնակիչ ունեցող քաղաքներինը՝ 9-ի, 20—50 հազար բնակիչ ունեցողներինը՝ 3-ի, իսկ 50—100 հազար, 100—200 հազար և 200 հազարից բարձր բնակիչ ունեցող քաղաքները երեքն են։

Քաղաքային բնակչության կազմում կան երկու հակադիր բևեռներ։ Երևանում[2] ապրում է Սովետական Հայաստանի բնակչության 29,7 տոկոսը, իսկ քաղաքային բնակչության՝ կեսից ավելին (53 տոկոսը)։ Երևանը տալիս է հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի 64 տոկոսը, 1940 թ. 50 տոկոսի դիմաց։ Այն քիմիայի, սարքաշինության, հաստոցաշինության, էլեկտրամեքենաշինության, շինանյութերի, թեթև և սննդի արդյունաբերության խոշոր կենտրոն է, գիտության, կուլտուրայի, արվեստի օջախ։

1 Հանրապետության ենթակայության 10 քաղաք, շրջանային ենթակայության 13 քաղաք և քաղաքատիպ ավան 27։

2 Հանրապետության բնակչության մոտ 39, քաղաքային բնակչության 70 տոկոսը, բանվոր-ծառայողների, արդյունաբերության արտադրական հիմնական ֆոնդերի ճնշող մասը գտնվում են Երևան, Լենինական և Կիրովական քաղաքներում։ Հիշյալ քաղաքները տալիս են Սովետական Հայաստանի արդյունաբերության արտադրանքի ավելի քան $^2/_3$-ը։

Քաղաքը ձևավորող հիմնական գործոնի՝ արդյունաբերության և, հատկա-
պես, նրա աշխատատար ճյուղերի արագ զարգացումը խթանել է ներքին ու
արտաքին տրանսպորտի ընդարձակմանը, սպասարկող անձնակազմի և բնակ-
չության թվի ավելացմանը: Վերջինս տեղի է ունեցել բնական և, հատկապես,
մեխանիկական աճի հաշվին: Միայն 6 տարում (1959—1964 թթ.) Երևանի
բնակչությունն ավելացել է 27 տոկոսով, ընդ որում, մոտ կեսը (12,9 տոկոսը)
կազմել է մեխանիկական աճը, մինչդեռ Լենինականում այն 2,6 տոկոսի է հա-
սել: Այսպիսով, մայրաքաղաքի բնակչության վերջին տարիների միայն մե-
խանիկական աճը գրեթե հավասարվել է Կիրովականի բնակչությանը, այսինքն՝
յոթնամյակի ընթացքում 66 հազարանոց մի նոր քաղաք է ծնվել Երևանում,
ուր մշտական բնակություն են հաստատել գյուղական բնակչությունը, ինչպես
և մյուս հանրապետություններից եկած հայ, ռուս և այլազգի մասնագիտական
կադրեր: Միաժամանակ, Երևանում բնակություն են հաստատել մեծ թվով
սփյուռքահայեր. Արաբկիրը, Կիրզան իրավամբ համարվում են հայրենադարձ-
ների ավաններ:
Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ Երևանի առաջնությունը
պահպանվելու է նաև հեռանկարում[1]: Բայց բնակչության ու արդյունաբերու-
թյան կենտրոնացումը կարող է վատացնել Երևանի կլիման, սանիտարական-
հիգիենիկ պայմանները, տրանսպորտի ու հաղորդակցության առանձին հան-
գույցների նորմալ աշխատանքը, աշխատավորների կոմունալ սպասարկումը,
ջրամատակարարումը, բնակարանային պահանջների բավարարումը և գյուղա-
տնտեսական մթերքների ժամանակին մատակարարումը, եթե այդ հարցերը
ժամանակին չլուծվեն:
Անցյալում պատշաճ ուշադրություն չի նվիրվել արտադրության տեղա-
բաշխմանը, արդյունաբերությունը հիմնականում կենտրոնացվել է քաղաքի
հարավային մասում, իսկ բնակելի մյուս շրջաններում արդյունաբերական ձեռ-
նարկությունները քիչ են: Աջափնյակի բնակչությունը հասնում է մոտ 30 հա-
զարի, օրեցօր մեծանում է նաև Նորքի բնակելի զանգվածի բնակչության թիվը,
բայց, ցավոք, այդ վայրերում դեռևս չկան արտադրության աշխատատար ճյու-
ղեր: Տվյալների համաձայն, Երևանի բանվոր-ծառայողների ճնշող մասն աշ-
խատում է հարավային շրջանում և կենտրոնում: Հետևապես, բազմաթիվ աշ-
խատողներ աշխատավայրը հասնելու և վերադառնալու համար ամեն օր կըտ-
րում անցնում են երկար տարածություն, ժամանակի մի մասը կորցնելով ճա-
նապարհի վրա. երևանյան տրանսպորտով երթևեկող ամեն մարդ գիտե, թե
ինչպես է ազդում այն ներվերի վրա:
Ուստի, քաղաքները և քաղաքատիպ ավանները ճիշտ կառուցելու և պլա-
նաչափ զարգացնելու համար անհրաժեշտ է կոմպլեքսային ձևով լուծել խոշոր
տեխնիկական, ճարտարապետական և կազմակերպական հարցերը: Հարկավոր
է ճիշտ տեղաբաշխել արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտա-
յին, էներգետիկ, ինժեներական կառուցումները և հաղորդակցության ուղինե-
րը: Միայն պատշաճ պլանավորմամբ (որը սովետական քաղաքաշինության

1 1966 թ. փետրվարի 17-ին Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը հաստատեց Երևանի
զարգացման տեխնիկա-տնտեսական ցուցանիշները: Համաձայն գլխավոր հատակագծի, Երևանն
ունենալու է 9 շրջան, յուրաքանչյուրը 100—120 հազար բնակչությամբ, բնական և արհեստա-
կան որոշակի սահմաններով, իսկ ամեն մի շրջան՝ իր կենտրոնը, որը կապվելու է քաղաքի
կենտրոնի հետ:



հիմնաքարն է) կարելի է ճիշտ որոշել քաղաքների զարգացման մասշտաբները, ընտրել տերիտորիան և ստեղծել լավագույն պայմաններ բնակչության աշխատանքի, հանգստի ու կենցաղի համար, հասնել բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման:

Հայկական ՍՍՀ քաղաքների միջև եղած բնակչության տատանումների կարգավորումը ժամանակակից քաղաքաշինության ամենալուրջ պրոբլեմներից մեկն է: Դրանով պետք է զբաղվեն ինչպես պլանավորող օրգանները, այնպես էլ գիտական հիմնարկները:

Հանրապետության փոքր քաղաքներում և քաղաքատիպ ավաններում արդյունաբերության թույլ զարգացման հետևանքով դանդաղ է աճել և նրանց բնակչությունը[1] բավոք վիճակում չեն բնակավայրերի բարեկարգումը, բնակչության կուլտուրական սպասարկումը, հիգիենիկ-սանիտարական պայմանները: Մինչդեռ այդ քաղաքներից շատերն ունեն տնտեսական, մասնավորապես արդյունաբերության զարգացման միանգամայն բավարար նախադրյալներ՝ տնտեսա-աշխարհագրական նպաստավոր դիրք, հարմար տրանսպորտային ցանց (խճուղի, երկաթուղի), կառուցապատվող տերիտորիա, ջրային ռեսուրսներ և, ամենակարևորը՝ աշխատունակ բնակչություն, ինչպես և բնական այլ նախադրյալներ: Բայց, ցավոք, առկա հնարավորություններն առայժմ վատ են օգտագործում: Այսպես, օրինակ, փոքր քաղաքներում բավական ցածր է բնակչության զբաղվածությունը՝ Երևանի համեմատությամբ:

Ըստ վերջին մարդահամարի տվյալների 10—25 հազար բնակիչ ունեցող 7 քաղաքներում հանրային արտադրության մեջ ներգրավվել են բնակչության 32,8, Լենինականում՝ 35,8, Կիրովականում՝ 36, իսկ Երևանում՝ 38,3 տոկոսը: Փոքր քաղաքներում բնակչության զբաղվածության ցածր տեսակարար կշիռը բացատրվում է նրանով, որ անցյալում հանրապետության տերիտորիայի վրա արտադրության այս կամ այն ճյուղը կազմակերպելու հիմնական ելակետը եղել են տվյալ վայրում օգտակար հանածոների, էներգետիկ ռեսուրսների, հանքային ջրերի առկայությունն ու դրանց օգտագործման հնարավորությունները միայն: Բայց պատշաճ ուշադրություն չի նվիրվել ոչ պակաս կարևորություն ունեցող մի շարք այլ հանգամանքների, ինչպիսիք են՝ բնակչության բնակեցման պայմանները, նրանց աշխատանքի, հանգստի, կենցաղի կազմակերպումը և քաղաքի պլանային զարգացման հնարավորությունները: Այդ է պատճառը, որ առանձին քաղաքներում արդյունաբերությունը զարգացել է խիստ միակողմանի. բավարար ուշադրություն չի հատկացվել լրացուցիչ ձեռնարկությունների ստեղծմանը, եղածների ընդլայնմանը:

Լեռնահանքային արդյունաբերության կենտրոններում՝ Ալավերդում, Ղափանում, Քաջարանում և նույնատիպ մյուս քաղաքներում արդյունաբերության այդպիսի զարգացումը հանգեցրել է այն բանին, որ աշխատունակ բնակչության, հատկապես՝ կանանց զգալի մասը դուրս է մնացել հանրային արտադրության ոլորտից (պատճառն աշխատանքի ծանրությունն է): Վերոհիշյալ երեք քաղաքներում 1959 թ. աշխատունակ բնակչության մոտ մեկ քառորդը, իսկ կանանց կեսից ավելին չեն ընդգրկվել հանրային արտադրության մեջ,

1 1959—1965 թթ. ընթացքում Երևանի, Լենինականի, Կիրովականի բնակչության մեխանիկական աճը կազմել է 11,6, իսկ հանրապետության մյուս 7 քաղաքներում՝ 3,2 տոկոս. ավելին՝ Ղափանում (2,2), Կամոյում (1,7 տոկոսով) նվազել է բնակչության մեխանիկական աճը:

զբաղվել են անձնական, օժանդակ և տնային տնտեսությամբ։ Բնակչության զբաղվածության պրոբլեմի լուծումը դժվարանում է մասնավորապես նրանով, որ Հայաստանում բարձր են բնակչության աճի տեմպերը։ Հետևապես բարդանում է և երիտասարդության զբաղվածության ապահովումը ընդհանրապես։ Ըստ ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի հաշվումների 1966—70 թթ. դպրոցներն ավարտած երիտասարդների զբաղվածությունն ապահովելու համար կպահանջվի աշխատանքի 100 հազար լրացուցիչ տեղ, որոնց մի մասը կհատկացվի նաև փոքր քաղաքներին։

Կան թե՛ արտադրություն և թե՛ աշխատող ձեռքեր ունեցող քաղաքներ, ուր արտադրության առանձին ճյուղերում կամ տեղամասերում հաճախ բանվորական ուժի պակաս է զգացվում։ Դա բացատրվում է նրանով, որ որոշ երիտասարդներ, տվյալ արտադրության տեխնիկային չտիրապետելու պատճառով, հրաժարվում են այդ աշխատանքից, իսկ ձեռնարկությունների ղեկավարներին ու վերադաս օրգաններին քիչ է մտահոգում կադրերի պատրաստման գործը. լեռնահանքային կենտրոնների օրինակով տվյալ արտադրության տեխնիկային տիրապետելու համար չեն կազմակերպում կարճատև դասընթացներ։ Այսպես, Իջևան քաղաքում 1959 թ. մարդահամարի ժամանակ հանրային արտադրությունից դուրս էր մնացել աշխատունակ կանանց 54 տոկոսը։ Ինչ խոսք, դրանց թիվը միջնակարգ դպրոցների շրջանավարտների հաշվին այժմ մասամբ մեծացել է։ Այսպիսով Իջևանում ակնհայտ է ազատ աշխատանքային ռեսուրսների առկայությունը, մինչդեռ քաղաքի աշխատատար ամենախոշոր ձեռնարկությունը՝ գորգագործական կոմբինատը, բանվորական ուժի մեծ պահանջ ունի։ Լրիվ կարողությամբ աշխատելու դեպքում այն ի վիճակի կլինի ապահովելու քաղաքի աշխատունակ բնակչության մաքսիմալ զբաղվածությունը։

Հայկական ՍՍՀ ԳԱ երկրաբանական գիտությունների ինստիտուտի աշխարհագրության սեկտորը, Միության արտադրողական ուժերի ուսումնասիրության խորհրդի հանձնարարությամբ, 1963 թ. ավարտեց հանրապետության քաղաքներում և քաղաքատիպ ավաններում արդյունաբերության զարգացման հիմնական տեխնիկա-տնտեսական ցուցանիշների հաշվառումը (պասպորտիզացիա)։ Այդ ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ յոթնամյակի առաջին 4 տարում 36 քաղաքային բնակավայրերում կապիտալ ներդրումները բացարձակ թվերով ավելացել են։

Սակայն կապիտալ ներդրումների բաշխումը քաղաքների միջև բավարար համարել չի կարելի. ներդրված գումարների կեսից ավելին կլանել է մայրաքաղաքը. 1962 թ. նրա յուրաքանչյուր մեկ բնակչին, միջին հաշվով, ընկել է 286 ռուբլի 10 կոպեկ։ Մինչդեռ էջմիածնում, Ղափանում և Ալավերդում՝ 151 ռուբլի 80 կոպեկ, 10—20 հազար բնակիչ ունեցող 8 քաղաքներում՝ 185 ռուբլի 90 կոպեկ, իսկ բնակչության թվով երկրորդ քաղաքում՝ Լենինականում, 90 ռուբլի 70 կոպեկ։ Իհարկե, քաղաքների միջև կապիտալ ներդրումների այդպիսի անհամաչափ բաշխումը չի նպաստում փոքր քաղաքների տնտեսության զարգացմանը, բնակչության արագ աճին։ Ճիշտ է, պլանավորող օրգանները և ճյուղային կազմակերպությունները արդյունաբերական ձեռնարկությունները ընդարձակելիս և նորերը տեղաբաշխելիս ելնում են արտադրության արժեքի, շինարարության և վերակառուցման ժամկետների, կապիտալ ներդրումներն արագ փոխհատուցելու սկզբունքներից և տեխնիկա-տնտեսական մի շարք այլ ցուցանիշներից, որոնք, անկասկած, հաջողությամբ իրականացվում են մեծ



քաղաքներում։ Սակայն այդ չի բացառում արդյունաբերական օբյեկտների տեղաբաշխումը նաև մյուս քաղաքներում։ Այստեղ փոքր և միջակ կարողությամբ արդյունաբերական ձեռնարկությունների տեղադրումը նույնպես կարդարացնի իրեն և տնտեսապես նպատակահարմար ու շահավետ կլինի, եթե դրանք ավարտվեն ժամանակին, զինված լինեն տեխնիկայի վերջին խոսքով, լրիվ ավտոմատացվեն արտադրության պրոցեսները։ Փոքր քաղաքների զարգացմանն արգելակում է նաև այն հանգամանքը, որ բնակչության կենցաղի սպասարկման տեսակետից նրանք ետ են մնում ժամանակակից պահանջներից։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հիշյալ բնակավայրերի բնակչությունն ապահովված չէ առևտրական, հասարակական սննդի կոմունալ և կենցաղ սպասարկման այլ ձեռնարկություններով, բարվոք չեն հիգիենիկ-սանիտարական պայմանները։

Փոքր քաղաքային բնակավայրերի ճնշող մասը չունի սանիտարական պահանջներին համապատասխանող կոյուղու ցանց, հասարակական օգտագործման լվացքատներ, հյուրանոցներ, անկանոն են աշխատում բաղնիքները։ Բավարար չէ նաև բնակչության բնակարանային ապահովվածությունը. 1964 թ. մեկ շնչին միջին հաշվով 3,8—5 քառակուսի մետր տարածությամբ ապահովված են քաղաքային 9 բնակավայր, 5,1—5,5 քառակուսի մետր տարածությամբ՝ քաղաքային 6 բնակավայր։ Այսպիսով, քաղաքային բնակավայրերի 30 տոկոսի բնակչությունն ունի մինիմումից[1] ցածր բնակելի տարածություն։

Առանձին քաղաքներում (Կիրովականում, Ղափանում, Իջևանում) լուրջ է և խմելու ջրի պրոբլեմը։ Դա մասամբ հետևանք է այն բանի, որ այդ հարցը լուծելիս լրիվ հաշվի չի առնվում արդյունաբերության մեջ և խմելու համար օգտագործվող ջրի հեռանկարային պահանջը։ Այսպես, օրինակ, մի քանի տարի առաջ Ղափանը խողովակաշարով խմելու ջուր ստացավ Գեղիի ակունքներից, բայց արդյունաբերության և բնակչության արագ աճի հետևանքով այն այսօր չի բավականացնում։ Ուստի, հարկադրված պետք է լրացուցիչ կապիտալ միջոցներ հատկացվեն, որպեսզի Գեղիի ջրերի մնացած մասը նույն ճանապարհով նորից հասցվի քաղաք. մինչդեռ, եթե ժամանակին ճիշտ հաշվի առնվեին Ղափանի զարգացման հեռանկարները, այդ կարելի էր անել հենց սկզբից։

Փոքր քաղաքների զարգացման մյուս խոչընդոտը նախադպրոցական հիմնարկների և գիշերօթիկ դպրոցների ցանցի անբավարար ընդարձակումն է։ Անհրաժեշտ քանակությամբ մանկամսուր-մանկապարտեզներ չունենալու հետևանքով նախադպրոցական տարիքի երեխաների ճնշող մասը դուրս է մնացել այդ ցանցից. նրանց խնամում են մայրերը, կտրվելով հասարակական հանրօգուտ աշխատանքից։ Հետևապես, մանկական հիմնարկների ցանցի ընդարձակումը փոքր քաղաքներում կենսական անհրաժեշտություն է նաև աշխատունակ մայրերին հանրային արտադրության մեջ ընդգրկելու տեսակետից։ 1965 թ. հունվարի 1-ի դրությամբ հանրապետության քաղաքային բնակավայրերում նախադպրոցական տարիքի բոլոր երեխաների միայն 17,6 տոկոսն է ընդգրկվել մանկամսուր-մանկապարտեզներում։

Այսպիսով, նշված թերությունները, անշուշտ, բացասական ազդեցություն

[1] Հայկական ՍՍՀ քաղաքներում և քաղաքատիպ ավաններում մեկ շնչին մինիմում նորման ընդունված է 9 քառակուսի մետր տարածություն։

են գործել փոքր քաղաքների զարգացման, բնակչության աճի վրա: Հետևապես,
որտեղ արագ են կատարվել արդյունաբերական կառույցները, ընդլայնվել են
օժանդակ ձեռնարկությունները, բարձր է եղել և բնակչության մեխանիկական
աճը կամ՝ հակառակը: Օրինակ, 1959—1965 թթ. ընթացքում Կիրովականի
բնակչությունն աճել է 39,9 տոկոսով, այդ թվում մեխանիկականը՝ 17,9%: Դա
հանրապետության բնական և մեխանիկական ամենաբարձր աճ ունեցող առա-
ջին քաղաքն է: Իհարկե, աճի այդպիսի մակարդակը Կիրովականում կպահպան-
վի նաև հեռանկարում, նկատի ունենալով նրա աշխարհագրական նպաստավոր
դիրքը, արդյունաբերության առկայությունը, շրջակայքի գյուղերում ավելացած
աշխատանքային ռեսուրսները: Սակայն, ցավոք, պետք է նշել, որ այդ ժամա-
նակամիջոցում Ղափան և Կամո քաղաքներում կատարվել է հակառակը:

Ուստի, արդյունաբերական օբյեկտների շինարարության արագացումը և
դրանց կից օժանդակ ու լրացուցիչ այլ ձեռնարկությունների կառուցումը, անձ-
նակազմի մեծացումը միայն կապահովեն փոքր քաղաքների տնտեսություննե-
րի հուժկու վերելքը, աշխատանքային ռեսուրսների մաքսիմալ օգտագործումը:

Քննարկվող հարցի համար կարևոր նշանակություն ունի բնակչության
տերիտորիալ տեղաբաշխման կարգավորումը, որը, ցավոք, անցյալում պատ-
շաճ ուշադրության չի արժանացել: Դրա ապացույցն են հանրապետության
բնակչության տերիտորիալ խիստ անհավասար բաշխվածությունը և տնտեսա-
կան շրջաններում քաղաքային բնակչության խտության մեծ տարբերությունը:

Հանրապետության բնակչության առնվազն կեսը, իսկ քաղաքային բնակ-
չության ճնշող մասն ապրում են Արարատի տնտեսական շրջանում, ամենա-
քիչը՝ Ջանգեզուրում [1]: Տնտեսական շրջանների միջև բնակչության և, հատկա-
պես, քաղաքային բնակչության այդպիսի մեծ տատանումները պետք է բա-
ցատրել արտադրողական ուժերի զարգացման մակարդակով: Արարատյան
դաշտը, ուր գտնվում է Հայկական ՍՍՀ-ի մայրաքաղաքը՝ Երևանը, հանրապե-
տության ամենազարգացած տնտեսական շրջանն է: Այստեղ են գտնվում ար-
դյունաբերության առաջատար ճյուղերը, արտադրական ֆոնդերի հիմնական
մասը, բանվոր-ծառայողների կեսից ավելին: Արարատյան դաշտը միաժամա-
նակ ինտենսիվ գյուղատնտեսական շրջան է, ուր կենտրոնացված են ոռոգելի
հողերի կեսը, բազմամյա տնկիների $^3/_4$-ը: Գյուղատնտեսական հումքի բազա-
յի վրա տեղում ստեղծվել է սննդի արդյունաբերություն՝ գինու-կոնյակի և պա-
հածոների արտադրություն. տնտեսական շրջանի 11 քաղաքներից (բացի Երե-
վանից, Էջմիածնից, որոնք ունեն սննդի արդյունաբերության ձեռնարկություն-
ներ) երեքի՝ Արտաշատի, Աշտարակի, Վեդու հիմնական ուղղությունը գյուղա-
տնտեսական արտադրանքի վերամշակումն է:

Արարատի տնտեսական շրջանը տալիս է Սովետական Հայաստանի ար-
դյունաբերության համախառն արտադրանքի մոտ $^3/_4$-ը: Նման ցուցանիշներ
առայժմ չունեն մյուս տնտեսական շրջանները, թեև դրանք նույնպես հարուստ
են բնական ռեսուրսներով: Օրինակ, Ջանգեզուրի տնտեսական շրջանում են
գտնվում հանրապետության մոլիբդենի ամբողջ պաշարները, պղնձի, երկաթի
հիմնական մասը, մեծ քանակությամբ նեֆելինային սիենիտներ, կրաքար,
ինչպես և մետաղային ու ոչ մետաղային բազմատեսակ օգտակար այլ հանա-

[1] Ջանգեզուրի տնտեսական շրջանի մեջ մտնում են Ղափանի, Գորիսի, Սիսիանի, Մեղրու, Եղեգնաձորի և Ազիզբեկովի շրջանները:



ծոներ. Ջանգեզուրը, միաժամանակ, տուրիզմի և կուրորտային զարգացման
մեծ հեռանկարներ ունեցող շրջան է: Բազմաթիվ հանքային աղբյուրների, բու-
ժիչ ջրերի և մեծ հռչակ ստացած Ջերմուկի ռացիոնալ օգտագործումը հնարա-
վորություն կտա Ջանգեզուրը վերածելու միութենական առողջարանի:

Բացի այդ, հանրապետության հիդրոէներգետիկ ռեսուրսների $^1/_3$-ը, բնա-
կան կերահանդակների 20 տոկոսը կենտրոնացված են Ջանգեզուրում: Վեր-
ջինիս տեսակարար կշիռը Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսու-
թյան մեջ խիստ կմեծանա Որոտանի կասկադի [1] և Արփա—Սևան ջրմուղի շի-
նարարական աշխատանքներն ավարտելուց հետո [2], երբ կզարգանա գոյություն
ունեցող արդյունաբերությունը, և երևան կգան նոր ճյուղեր: Այդ կապակցու-
թյամբ անհրաժեշտ է տեղում կազմակերպել սև մետաղամշակություն, ստեղ-
ծել պղնձի, մոլիբդենի արտադրության լրիվ ցիկլ: Հաշվի առնելով մոլիբդենի և
պղնձի հանքավայրերի մեծ պաշարների առկայությունը հանրապետությունում
և դրանց արդյունահանման նպաստավոր պայմանները նոր հնգամյակում, նա-
խատեսվում է զգալիորեն ավելացնել գունավոր մետաղների արտադրությունը:
Համաձայն պլանի երկու անգամ ավելանալու է Քաջարանի պղնձամոլիբդե-
նային կոմբինատի հանքաքարի հանույթը, մեծանալու է վերամշակման ունա-
կությունը, ընդլայնվելու է Ղափանի պղնձահանքային կոմբինատի կարողու-
թյունը:

Լեռնահանքային ձեռնարկությունների ընդարձակմամբ հետագայում 3—4
անգամ կավելանա պղնձի կոնցենտրատի արտադրությունը: Այդ տեսակետից
էլ անհրաժեշտություն է դառնում պղնձաձուլական գործարանի կառուցումը
Ջանգեզուրում, որն Ալավերդուց հետո կդառնա երկրորդը հանրապետությու-
նում: Պետք է հուսալ, որ Միության վերադաս օրգաններն անպայման հաշվի
կառնեն այդ հանգամանքը և գործնական քայլերի կդիմեն ընթացիկ հնգամ-
յակում գործարանի կառուցումն սկսելու ուղղությամբ:

Անհրաժեշտ է կազմակերպել նաև մոլիբդենի կոնցենտրատի մշակությու-
նը: Մեր կարծիքով, այդ գործարանը պետք է կառուցվի եթե ոչ անմիջապես
հումքի վայրում, ապա անպայման Ջանգեզուրում, քանի որ նախ դրանով կթե-
թևանա երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը և կխնայվեն
պետական միջոցները: Երկրորդ. այն բազա կհանդիսանա մեքենաշինության
զարգացման համար և, ամենակարևորը՝ կլուծվի աշխատունակ բնակչության
զբաղվածության հարցը, որ Ջանգեզուրի համար դժվար խնդիր է:

Այսպիսով, գունավոր մետաղների ստացման ավարտուն ցիկլի ստեղծումը
և Սվարանցի երկաթահանքի օգտագործումը կխթանեն արտադրության մի
շարք նոր ճյուղերի և օժանդակ ձեռնարկությունների ստեղծմանը: Առաջ կգան
քիմիական, մեքենաշինական, հատկապես, լեռնահանքային սարքավորում-
ների և շինարարական նյութերի արտադրության ճյուղեր:

Արդյունաբերության զարգացումը կփոխի նաև շրջանի գյուղատնտեսու-

[1] Կասկադի միայն գլխավորի՝ Սպանդարյանի հիդրոէլեկտրակայանի կառուցումը, որ անհրաժեշտ կլինի սկսել 1966—1970 թվականներին, թույլ կտա ավելի քան երկու անգամ մեծացնելու Տաթևի, Շամբի և Սպանդարյանի հիդրոէլեկտրակայանների կարգավորող կարողությունը:

[2] Հայկական ՍՍՀ-ն ունի այդպիսի փորձ. Սևան—Հրազդան կասկադի ավարտման շնորհիվ այդ գծի վրա առաջացան արդյունաբերական մի շարք նոր կենտրոններ (Հրազդան, Լուսավան, Գագարին, Նոր Հաճըն), մեծացան Սևան, Աբովյան, Արզնի բնակավայրերը:

թյան ուղղությունը՝ առաջին պլանի վրա կմղվի մերձքաղաքային տնտեսությունը, սննդի ընդլայնվող ձեռնարկությունների՝ հումքի, բնակչության՝ սննդամթերքների հարաճուն պահանջները բավարարելու նպատակով։

Առաջադրված տնտեսական խնդիրները կենսագործելու համար վճռական նշանակություն ունի երկաթուղային տրանսպորտի զարգացումը, որի կառուցման տարբերակները հանգամանորեն ուսումնասիրել և տնտեսապես հիմնավորել են ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի գիտական աշխատողները։ Նախատեսվող և հետագայում կառուցվող Ղափան—Սիսիան—Բազարչայ—Ջերմուկ—Բասարգեչար, այնուհետև՝ Սիսիան—Դաստակերտ, Ղափան—Քաջարան երկաթուղու ճյուղերը[1] կմիանան Բաքու—Երևան գլխավոր երկաթուղուն, Զանգեզուրը կկապեն Միության բոլոր շրջանների հետ և դրանով ամբողջովին կվերափոխեն նրա տնտեսական դեմքը։

Զանգեզուրը կդառնա նաև սև մետաղամշակության, մեքենաշինության, թեթև և սննդի արդյունաբերության կարևոր կենտրոն՝ ընդարձակ առողջարաններով, տուրիստական բազաներով, որը կհանգեցնի բնակչության ավելացմանը, քաղաքային և գյուղական բնակչության հարաբերակցության փոփոխմանը. վերջինի հաշվին կմեծանա առաջինի տեսակարար կշիռը։

Այսպիսով, միայն արտադրության տերիտորիալ ճիշտ տեղաբաշխումը և բնական ու աշխատանքային ռեսուրսների լրիվ օգտագործումը կվերացնեն բնակչության անհավասար բաշխումը տնտեսական շրջաններում, կնպաստեն դրանց տնտեսական մակարդակի հետագա համահարթմանը, փոքր քաղաքների զարգացմանը և, այդ ամենի շնորհիվ, կմեծանա քաղաքային բնակչության տեսակարար կշիռը Զանգեզուրում, Սևան—Աղստևի, Մերձդեբեդյան և Շիրակի տնտեսական շրջաններում, կնվազի բնակչության հոսքը դեպի մայրաքաղաք։

Արդյունաբերության ավելի ռացիոնալ տեղաբաշխումը, ասված է պարտիայի ծրագրում, «կապահովի հանրային աշխատանքի տնտեսումը, շրջանների կոմպլեքս զարգացումը և նրանց տնտեսությունների մասնագիտացումը, կվերացնի բնակչության չափից դուրս կուտակվածությունը խոշոր քաղաքներում, կնպաստի... երկրի շրջանների տնտեսական զարգացման մակարդակների հետագա համահարթմանը»։

---

[1] *К. Н. Хуршудян,* Основные направления развития транспорта Закавказья, Ереван, 1965 г., стр. 132.





Մ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

# ԱՐԴԻ ԱՖՐԻԿԱՅՈՒՄ ՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՆ ԱՌԹԻՎ

ԴԵՌԵՎՍ 1905 թվականին, քննադատելով Պարվուսի գաղափարական տատանումները, Վ. Ի. Լենինը նշել է, որ նրա «շարադրանքը բավականաչափ կոնկրետ չէ, որովհետև նա հաշվի չի առնում Ռուսաստանում գոյություն ունեցող այն տարբեր հեղափոխական հոսանքների ամբողջությունը, որոնք անխուսափելի են դեմոկրատական հեղաշրջման էպոխայում և բնականաբար արտացոլում են հասարակության դասակարգային չանդամատվածությունը այդպիսի էպոխայում»։ Այնուհետև, զարգացնելով իր միտքը, Վ. Ի. Լենինն անմիջականորեն ավելացնում է. «Անորոշ, երբեմն նույնիսկ ռեակցիոն սոցիալիստական մտքերն այդպիսի ժամանակ միանգամայն բնականաբար պարուրում են հեղափոխական դեմոկրատական ծրագրերը, թաքնվելով հեղափոխական ֆրազի տակ» (Երկեր, հ. 8, էջ 363—ընդգծումները մերն են—Մ. Մ.)։ Լենինյան այդ դրույթները մեզ օգնում են հասկանալու արդի մերձարևադարձային Աֆրիկայում եղած այլևայլ գաղափարական հոսանքների աղբյուրները և դրանց սոցիալական բնույթը։

Արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրների սոցիալական կառուցվածքի վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ մայրցամաքում դեռ մինչև այժմ էլ առկա են մինչսոցիալիստական հասարակական հարաբերությունների գրեթե բոլոր ձևերը և գաղութատիրության օրոք հասարակական խավերից և ոչ մեկն էլ տիրապետող դիրք չէր գրավել հասարակության կյանքում, որպեսզի անկախությունը նվաճելուց հետո կարողանար բնորոշել տվյալ երկրի քաղաքական վերնաշենքի սոցիալական բնույթը և ազգային-ազատագրական հեղափոխության զարգացման հետագա ընթացքը։ Այդ իսկ պատճառով Աֆրիկայի բազմաթիվ երիտասարդ անկախ երկրներում քաղաքական իշխանությունը շատ հաճախ կիսում են մի քանի սոցիալական դասակարգերի կամ խմբերի ներկայացուցիչներ։ Այդ դասակարգերից կամ խմբերից յուրաքանչյուրը, անցնելով իշխանության գլուխ, առաջ է քաշում հասարակական կյանքի վերափոխման իր ծրագիրը։ Ընդ որում, իհարկե, նրանցից յուրաքանչյուրը ելնում է որոշակի աշխարհայացքից։

Վերոհիշյալ պատճառներով արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում ազգային-ազատագրական հեղափոխությունների ժամանակաշրջանում

թյան ուղղությունը՝ առաջին պլանի վրա կմղվի մերձքաղաքային տնտեսությունը, սննդի ընդլայնվող ձեռնարկությունների՝ հումքի, բնակչության՝ սննդամթերքների հարաճուն պահանջները բավարարելու նպատակով։

Առաջադրված տնտեսական խնդիրները կենսագործելու համար վճռական նշանակություն ունի երկաթուղային տրանսպորտի զարգացումը, որի կառուցման տարբերակները հանգամանորեն ուսումնասիրել և տնտեսապես հիմնավորել են ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի գիտական աշխատողները։ Նախատեսվող և հետագայում կառուցվող Ղափան—Սիսիան—Բազարչայ—Ջերմուկ—Բասարգեչար, այնուհետև՝ Սիսիան—Դաստակերտ, Ղափան—Քաջարան երկաթուղու ճյուղերը[1] կմիանան Բաքու—Երևան գլխավոր երկաթուղուն, Զանգեզուրը կկապեն Միության բոլոր շրջանների հետ և դրանով ամբողջովին կվերափոխեն նրա տնտեսական դեմքը։

Զանգեզուրը կդառնա նաև սև մետաղամշակության, մեքենաշինության, թեթև և սննդի արդյունաբերության կարևոր կենտրոն՝ ընդարձակ առողջարաններով, տուրիստական բազաներով, որը կհանգեցնի բնակչության ավելացմանը, քաղաքային և գյուղական բնակչության հարաբերակցության փոփոխմանը. վերջինի հաշվին կմեծանա առաջինի տեսակարար կշիռը։

Այսպիսով, միայն արտադրության տերիտորիալ ճիշտ տեղաբաշխումը և բնական ու աշխատանքային ռեսուրսների լրիվ օգտագործումը կվերացնեն բնակչության անհավասար բաշխումը տնտեսական շրջաններում, կնպաստեն դրանց տնտեսական մակարդակի հետագա համահարթմանը, փոքր քաղաքների զարգացմանը և, այդ ամենի շնորհիվ, կմեծանա քաղաքային բնակչության տեսակարար կշիռը Զանգեզուրում, Սևան—Աղստևի, Մերձդեբեդյան և Շիրակի տնտեսական շրջաններում, կնվազի բնակչության հոսքը դեպի մայրաքաղաք։

Արդյունաբերության ավելի ռացիոնալ տեղաբաշխումը, ասված է պարտիայի ծրագրում, «կապահովի հանրային աշխատանքի տնտեսումը, շրջանների կոմպլեքս զարգացումը և նրանց տնտեսությունների մասնագիտացումը, կվերացնի բնակչության չափից դուրս կուտակվածությունը խոշոր քաղաքներում, կնպաստի... երկրի շրջանների տնտեսական զարգացման մակարդակների հետագա համահարթմանը»։

---

[1] *К. Н. Хуршудян,* Основные направления развития транспорта Закавказья, Ереван, 1965 г., стр. 132.





Մ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

# ԱՐԴԻ ԱՖՐԻԿԱՅՈՒՄ ՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՀՈՒՆՎԱՐ 1905 թվականին, քննադատելով Պարվուսի գաղափարական տատանումները, Վ. Ի. Լենինը նշել է, որ նրա «շարադրանքը բավականաչափ կոնկրետ չէ, որովհետև նա հաշվի չի առնում Ռուսաստանում գոյություն ունեցող այն տարբեր հեղափոխական հոսանքների ամբողջությունը, որոնք անխուսափելի են դեմոկրատական հեղաշրջման էպոխայում և բնականաբար արտացոլում են հասարակության դասակարգային չանդամատվածությունը այդպիսի էպոխայում»։ Այնուհետև, զարգացնելով իր միտքը, Վ. Ի. Լենինն անմիջականորեն ավելացնում է. «Անորոշ, երբեմն նույնիսկ ռեակցիոն սոցիալիստական մտքերն այդպիսի ժամանակ միանգամայն բնականաբար պարուրում են հեղափոխական դեմոկրատական ծրագրերը, թաքնվելով հեղափոխական ֆրազի տակ» (Երկեր, հ. 8, էջ 363—ընդգծումները մերն են—Մ. Մ.)։ Լենինյան այդ դրույթները մեզ օգնում են հասկանալու արդի մերձարևադարձային Աֆրիկայում եղած այլևայլ գաղափարական հոսանքների աղբյուրները և դրանց սոցիալական բնույթը։

Արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրների սոցիալական կառուցվածքի վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ մայրցամաքում դեռ մինչև այժմ էլ առկա են մինչսոցիալիստական հասարակական հարաբերությունների գրեթե բոլոր ձևերը և գաղութատիրության օրոք հասարակական խավերից և ոչ մեկն էլ տիրապետող դիրք չէր գրավել հասարակության կյանքում, որպեսզի անկախությունը նվաճելուց հետո կարողանար բնորոշել տվյալ երկրի քաղաքական վերնաշենքի սոցիալական բնույթը և ազգային-ազատագրական հեղափոխության զարգացման հետագա ընթացքը։ Այդ իսկ պատճառով Աֆրիկայի բազմաթիվ երիտասարդ անկախ երկրներում քաղաքական իշխանությունը շատ հաճախ կիսում են մի քանի սոցիալական դասակարգերի կամ խմբերի ներկայացուցիչներ։ Այդ դասակարգերից կամ խմբերից յուրաքանչյուրը, անցնելով իշխանության գլուխ, առաջ է քաշում հասարակական կյանքի վերափոխման իր ծրագիրը։ Ընդ որում, իհարկե, նրանցից յուրաքանչյուրը ելնում է որոշակի աշխարհայացքից։

Վերոհիշյալ պատճառներով արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում ազգային-ազատագրական հեղափոխությունների ժամանակաշրջանում

առաջ են եկել բազմաթիվ սուբյեկտիվ-սոցիալիստական տեսություններ։ Դրանց մի մասը հանդես է գալիս ազգային զարգացման տնտեսական ծրագրի ձևով, մյուսները՝ կրոնական դոգմաների ձևով, երրորդները առաջ են քաշում ազգային վերածննդի ծրագիր, չորրորդները հանդես են գալիս այս կամ այն լիդերի քաղաքական պլատֆորմի ձևով և այլն։ Բայց բոլոր այդ հոսանքները, որպես կանոն, խարսխված են ազգային ու կրոնական տրադիցիաների վրա և ունեն մի շարք բնորոշ գծեր.

նախ և առաջ դրանք բոլորն էլ ազգային-ազատագրական հեղափոխությունների ծնունդ են, հակադրվում են գաղութային լծին և ժխտում են կապիտալիզմը, որպես Աֆրիկայի երկրների ժողովուրդների ապագա.

երկրորդ, այդ կոնցեպցիաներում այս կամ այն չափով կան գիտական սոցիալիզմի տարրեր, բայց դրանք շատ հաճախ միահյուսված են կրոնական դոգմաների, ազգային տրադիցիաների, ուտոպիական սոցիալիզմի, մանրբուրժուական կամ բուրժուական սոցիալիզմի գաղափարների հետ.

երրորդ, այդ բոլոր սոցիալիստական կոնցեպցիաների ներկայացուցիչները «սոցիալիզմ» և «սոցիալիստական հասարակարգ» հասկացությունների մեջ հաճախ միանգամայն տարբեր բովանդակություն են դնում, որը ոչ միայն էապես տարբեր է մեկը մյուսից, այլև գիտական սոցիալիզմից։

Այդ բոլոր տեսությունների, փիլիսոփայական ու սոցիոլոգիական կոնցեպցիաների վերլուծությունը տալուց առաջ անհրաժեշտ է խմբավորել դրանք, որոշել դրանց տենդենցները և սոցիալական-գաղափարական ուղղությունը։

Իհարկե, ճիշտ չէր լինի այդ տեսությունները խմբավորելիս հիմնական չափանիշ վերցնել միայն առանձին գաղափարական մոմենտները, որովհետև իրենց բովանդակությամբ դրանք ոչ միայն հեռու են մարքսիզմից, այլև գտնըվում են իրենց գոյացման ու ձևավորման պրոցեսում, դրանք կարող են զարգանալ ինչպես դեպի գիտական սոցիալիզմը և հեղափոխական դեմոկրատիզմի գաղափարախոսությունը, այնպես էլ դեպի բուրժուական նացիոնալիզմը և ռեֆորմիզմը։ Պետք է նկատի ունենալ նաև, որ մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում ազգային-ազատագրական հեղափոխությունների տեսությունները զգալի չափով ետ են մնում հեղափոխական պրակտիկայից։

Բայց եթե մենք զուտ դասակարգային մոտեցում ցուցաբերենք, ապա մեզ կարող են կշտամբել այն բանում, որ մերձարևադարձային Աֆրիկայի երկըրներում դեռևս ավարտված չէ հասարակության շերտավորվելը առանձին սոցիալական դասակարգերի, որ դրանք առայժմ գտնվում են իրենց ձևավորման պրոցեսում, իսկ իշխանության ղեկի մոտ կանգնած են շատ հաճախ մի քանի դասակարգերի ներկայացուցիչներ, որ նրանք բոլորն էլ ունեն միևնույն քաղաքական պլատֆորմը և պաշտպանում են միևնույն պաշտոնական գաղափարախոսությունը։ Այդ պատճառով էլ երբեմն դժվար է լինում որոշել, թե այս կամ այն պաշտոնական տեսությունը հատկապես որ սոցիալական դասակարգի կամ խմբի շահերն է արտահայտում։

Արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում ձևավորվող սուբյեկտիվ-սոցիալիստական կոնցեպցիաները գնահատելիս անհրաժեշտ է ուշադրություն դարձնել նաև մի շարք այլ գործոնների վրա, այն է՝ ինչպիսի՞ բնույթ և զարգացման ի՞նչ տենդենցներ ունեն Աֆրիկայի այս կամ այն երկրում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական վերափոխությունները, սոցիալական ո՞ր դասակարգի ներկայացուցիչներին է պատկանում պետական իշխանությունը, ինչ-



պիսի՞ն է նրանց տեսական, քաղաքական և միջազգային կողմնորոշումը և նրանք ի՞նչ չափով են շահագրգռված հին գաղութային սոցիալ-տնտեսական կառուցվածքի հեղաբեկման գործում, ի՞նչ չափով են նրանց փիլիսոփայական և սոցիոլոգիական կոնցեպցիաները ներթափանցված ռասայական ու կրոնական գաղափարներով, ազգային տրադիցիաներով և այլն։

Այսպիսով, մերձարևադարձային Աֆրիկայում ազգային-ազատագրական հեղափոխությունների արգասիք հանդիսացող սուբյեկտիվ սոցիալիստական այդ տեսությունները խմբավորելիս անհրաժեշտ է ելնել վերոհիշյալ գործոններից։ Մեր վերոհիշյալ գնահատականի համար հիմք ընդունելով այս կամ այն երկրի սոցիալ-տնտեսական կյանքի զարգացման տենդենցները որոշող բոլոր գործոնները, մենք կարող ենք արդի Աֆրիկայի երկրներում եղած փիլիսոփայական ու սոցիոլոգիական կոնցեպցիաները, սոցիալիստական «տեսությունները» բաժանել երկու հիմնական ուղղությունների։

Առաջինը փիլիսոփայական և սոցիոլոգիական այն կոնցեպցիաներն են, որոնք հիմնավորում են մերձարևադարձային Աֆրիկայի երիտասարդ, անկախ երկրների ոչ կապիտալիստական զարգացման հնարավորությունը։ Դա հեղափոխական դեմոկրատիզմի գաղափարախոսությունն է։

Երկրորդը սոցիալիստական այն կոնցեպցիաներն են, որոնց մեջ արտահայտված է մերձարևադարձային Աֆրիկայի երկրների զարգացման այսպես կոչված «երրորդ» ուղու, որը տարբեր է ինչպես Արևմուտքի կապիտալիզմից, այնպես էլ Արևելքի սոցիալիզմից, տեսությունը։ Նման կարգի կոնցեպցիաներին կարելի է տալ մեկ ընդհանուր անվանում՝ «Աֆրիկայի բացառիկության տեսություն», որը և հանդիսանում է մեր ուսումնասիրության առարկան։

Այդ տեսության առաջացման սոցիալական բազա պետք է համարել ամենից առաջ այն յուրահատուկ և բարդ հասարակական հարաբերությունները, որոնք առկա են միայն արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում։ Իհարկե, այդ «տեսության» առաջացման ու տարածման համար պակաս կարևոր դեր չեն խաղացել նաև հետևյալ գործոնները.

առաջին, գաղութատերերի դարավոր տիրապետությունը մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում, որը սնուցիչ միջավայր է ստեղծել այնտեղ բուրժուական գաղափարախոսության համար և միաժամանակ խոչընդոտել է մարքս-լենինյան գաղափարախոսության տարածմանը Աֆրիկայի մայրցամաքում.

երկրորդ, դեռ մինչև այժմ էլ մերձարևադարձային Աֆրիկայի ժողովուրդների մեջ եղած նահապետական, տոհմատիրական հարաբերությունները և նրանց տեխնիկական հետամնացությունը.

երրորդ, կրոնական և ազգային տրադիցիաների խիստ կենսունակությունը, որը որոշ գործիչների առիթ է տալիս չափազանցնելու Աֆրիկայի իրականության յուրահատկությունների դերն ու նշանակությունը, մասնավորապես՝ համայնքի դերը սոցիալիստական հասարակարգի կառուցման ասպարեզում։

Այդ ամենից բացի, «Աֆրիկայի բացառիկության տեսության» վրա իրենց դրոշմն են դրել նաև մի շարք այլ գործոններ, մանավանդ աֆրիկյան հասարակության ներսում տեղի ունեցած այն բարդ քաղաքական ու տնտեսական պրոցեսները և դասակարգային բախումները, որոնք առանձնապես սուր բնույթ ընդունեցին մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում քաղաքական անկախություն նվաճելուց հետո։

«Աֆրիկայի բացառիկության տեսության» հիմնական ներկայացուցիչների աշխատությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ թեպետև նրանց մոտ միասնություն չկա այդ «տեսության» մեկնաբանման հարցում, այնուամենայնիվ, նրանք առաջնորդվում են սկզբունքային այնպիսի դրույթներով, որոնք ընդհանուր են այդ «տեսության» գրեթե բոլոր տարատեսակությունների համար ու բնորոշում են արդի Աֆրիկայի մի գաղափարական հոսանքը։

«Աֆրիկայի բացառիկության տեսության» բնորոշ գծերից մեկն այն է, որ սոցիալիստական ֆրազաբանության քողի տակ նա քարոզում է մարքսիզմին խորթ էկլեկտիկ մի գաղափարախոսություն։

1964 թվականին ԱՄՆ-ում հրատարակած իր Աֆրիկյան սոցիալիզմը գրքի ներածականում Լեոպոլդ Սենգորը գրում էր. «Ներկա հատորը մի փորձ է բնորոշելու դեպի սոցիալիզմ տանող աֆրիկյան ուղին՝ կառուցված ազգային արժեքների հիման վրա, ելնելով, ամենից առաջ, ազգային իրականությունից» (Leopold Sedor Senghor. On african socialism. New-York, 1964, p. 3)։ «Աֆրիկյան սոցիալիզմը,— գրում է Թոմ Մբոյան,— մի տերմին է, որը բնութագրում է աֆրիկյան քաղաքական ու տնտեսական սիստեմը, աֆրիկյան է բառիս լիակատար իմաստով» (Tom Mboy. Freedom and after. London. 1964, p. 148)։

Հայտնի է, որ մարքսիզմ-լենինիզմի կլասիկները նույնպես չեն ժխտել և միշտ էլ ընդգծել են, որ սոցիալիզմի կառուցման ժամանակ անհրաժեշտ է խստորեն հաշվի առնել յուրաքանչյուր ժողովրդի, յուրաքանչյուր առանձին երկրի ազգային առանձնահատկությունները։ Արևելքի ժողովուրդների կոմունիստական կազմակերպությունների համառուսաստանյան II համագումարում տված իր զեկուցման մեջ Վ. Ի. Լենինն ասում է. «Այստեղ Ձեր առաջ մի խնդիր է դրված, որ նախկինում ամբողջ աշխարհի կոմունիստների առաջ չի դրվել՝ ընդհանուր կոմունիստական թեորիայի և պրակտիկայի վրա հենվելով, հարկավոր է, որ դուք, հարմարվելով յուրահատուկ պայմաններին, որոնք եվրոպական երկրներում չկան, կարողանաք այդ թեորիան և պրակտիկան կիրառել այն պայմաններում, երբ գլխավոր մասսան հանդիսանում է գյուղացիությունը, երբ հարկավոր է լուծել պայքարի խնդիրը ոչ թե կապիտալի դեմ, այլ միջնադարյան մնացորդների դեմ» (Երկեր, հ. 30, էջ 188)։

Լենինյան այդ ցուցումները հաջողությամբ կենսագործեցին Սովետական Միության ժողովուրդները սոցիալիստական հասարակարգ կառուցելու ընթացքում։ Հայտնի է, որ այդ ժողովուրդներից շատերը Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ գտնվում էին արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրների ժողովուրդների զարգացման մակարդակին։

Այստեղից հետևում է, որ խոսքը վերաբերում է ոչ թե աֆրիկյան իրականության յուրահատկություններին, այլ մարքս-լենինյան գաղափարախոսությունը դիտավորյալ խեղաթյուրելու որոշակի տենդենցին։ Ծանոթանալով Լեոպոլդ Սենգորի, Թոմ Մբոյայի, Բեդե Օնուոխայի և «Աֆրիկայի բացառիկության տեսության» մյուս կողմնակիցների աշխատություններին, դժվար չէ կռահել, որ սոցիալիստական ֆրազաբանությունը նրանք ծառայեցնում են ոչ միայն իրենց դոկտրինան սքողելու, այլև մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ ոտնձգություններ կատարելու համար։

Այսպես, Սենգորը իր Աֆրիկյան սոցիալիզմը գրքում գրում է. «Մենք կոմունիստներ չենք տեսական պատճառով, քանի որ մարքսիզմը լոկ սոցիալիզմի տեսություն չէ, դա որոշակի աշխարհայեցողություն է և որոշակի փիլիսոփայական սիստեմ» (L. Senghor. On african socialism, p. 45)։ Ոչ պակաս պարզությամբ է իր վերաբերմունքը բացահայտում մարքսիստական գաղափարախոսության նկատմամբ նիգերիացի քահանա Բեդե Օնուոհան։ «Կոմունիզմի միջազգային հարձակումը,— գրում է նա,— միշտ էլ նպաստում է օրինավոր կարգով ընտրված կառավարությունների տապալմանը ազատ աշխարհում» (Bede Onuoha. The element of african socialism, London, 1965, p. 15)։

Դժվար չէ կռահել, որ այդ քահանան օրինավոր է համարում Նիգերիայում վերջերս տապալված կառավարությունը, որը նեոգաղութատիրության գլխավոր նեցուկներից մեկն էր Աֆրիկայի մայրցամաքում։

Ամբողջապես մերժելով մարքսիստական գաղափարախոսությունը, «Աֆրիկայի բացառիկության տեսության» ներկայացուցիչները, որքան էլ դա պարադոքսային լինի, իրենց հռչակում են սոցիալիզմի կառուցման կողմնակիցներ։ Բայց հարցի էությունն այն չէ, թե ով է իրեն սոցիալիստ կամ մարքսիստ հռչակում, այլ այն, թե նրանք ինչ բովանդակություն են դնում այդ հասկացությունների մեջ։

Այսպես, օրինակ, Սենգորը դեմ չէ մարքսիզմ-լենինիզմի որոշ դրույթները ընդունելուն, միայն այն պայմանով, որ այդ դրույթները նախապես տարրալուծվեն ու միանան սոցիալիստ-ուտոպիստների, քրիստոնեական սոցիալիզմի, արաբական և աֆրիկյան նացիոնալիզմի ուսմունքների հետ։ «Մենք սոցիալիստներ ենք,— գրում է նա,— այլ կերպ ասած, մենք չենք բացառում մեր աղբյուրներից ո՛չ Մարքսին, ո՛չ էլ Էնգելսին, մենք սկսել ենք նրանց աշխատություններից և «ուտոպիական սոցիալիստներից», բայց մենք այդ աղբյուրներին ավելացրել ենք մեր մեկնաբանների ու հետազոտողների աշխատությունները» (L. Senghor, Ibid. p. 49)։

Սենգորը պնդում է, թե ֆրանսիացի ուտոպիստ-սոցիալիստները՝ սկսած Սեն-Սիմոնից մինչև Լեոն Բլյումը (այստեղ նկատենք, որ նա առանց որևէ հիմքի Լեոն Բլյումին դասում է ուտոպիստ-սոցիալիստների շարքում—Մ. Մ.), այնքան էլ ուտոպիստներ չեն, ինչպես պատկերացնում են նրանց։ Բայց ինչո՞ւ է Սենգորը այդքան հրապուրվել Սեն-Սիմոնի և Լեոն Բլյումի ուսմունքով։ Բանից պարզվում է, որ նրանք հասարակական երևույթները բացատրելիս կանգնած են իդեալիզմի դիրքերում, իսկ իդեալիստները, ինչպես պնդում է Սենգորը, զգում են նեգրական-աֆրիկյան հոգու ձգտումները, բոլոր ռասաների ու երկրների մարդկանց պահանջները (L. Senghor. On african socialism. p. 46)։

Սենգորի կարծիքով անհնարին է Մարքսի և Էնգելսի ուսմունքով բացատրել արդի Աֆրիկայի երկրներում տեղի ունեցող սոցիալական պրոցեսները։ «Մենք՝ աֆրիկացիներս,— ասում է նա,—պաշտպանում ենք այն մեթոդը, որը մեզ կօգնի վերլուծելու մեր դրությունը, մենք պատրաստ ենք ընդունելու այն գաղափարները, որոնք մեզ կօգնեն լուծելու մեր պրոբլեմները։ Մենք չենք կորկնում. դիալեկտիկական մատերիալիզմը պատմության և աշխարհագրության արգասիք է, նա ծնունդ է առել XIX դարում Արևմտյան Եվրոպայում։ Ծնված լինելով տվյալ երկրում, նա ըստ էության նախորոշված էր վերլուծելու ու փոփոխելու այդ միջավայրը։ Իսկ ինչպիսի՞ն է Ասիայի կամ Աֆրիկայի իրականության հարցը...

Արևմտյան Աֆրիկայի իրականությունը թույլ զարգացած երկրների իրականությունն է։ Այդ երկրները ըստ իրենց տրադիցիաների համայնքային և

հատկապես կրոնական երկրներ են։ Այդ իսկ պատճառով, թեպետև դիալեկտիկական մատերիալիզմը կարող է օգնել մեր հասարակությունները վերլուծելուն, բայց նա չի կարող լիովին բացատրել դրանք» (Ibid. p. *46*)։

Պարզ է, որ Սենգորը ժխտում է դիալեկտիկական մատերիալիզմը ոչ միայն որպես որոշակի աշխարհայացք, այլև դիալեկտիկական մեթոդը որպես իմացության եղանակ, որպես բնության, մարդկային հասարակության և մտածողության երևույթների բացատրության մեթոդ։ Ընդ որում Սենգորը մոռանում է, որ մեր երկրի Ծայր Հյուսիսի և Միջին Ասիայի բազմաթիվ ժողովուրդներ, որոնց սոցիալ-տնտեսական կառուցվածքը Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ ընդհանուր շատ բան ուներ ոչ այնքան Արևմտյան Եվրոպայի, որքան արդի մերձարևադարձային Աֆրիկայի երկրների իրականության հետ, ղեկավարվելով հենց մարքսիստական փիլիսոփայությամբ, կարողացան ամենակարճ ժամկետում վերացնել իրենց դարավոր հետամնացությունը և հասնել աշխարհի ամենազարգացած ժողովուրդների մակարդակին։

«Աֆրիկայի բացառիկության տեսության» ներկայացուցիչների ամեն տեսակ քաղաքական ծրագրերի և սոցիոլոգիական կոնցեպցիաների մեկնակետը այն է, որ մերձարևադարձային Աֆրիկայի ժողովուրդների քաղաքական և սոցիալական ազատագրությունը անհրաժեշտություն է։ Բայց նրանցից յուրաքանչյուրը յուրովի է դնում և լուծում այդ պրոբլեմը։

Այսպես, Սենգորը գտնում է, թե դա աֆրիկյան իրականության և սոցիալական կյանքի իսկական դեմոկրատացման միակ և անգամ գլխավոր պայմանը չէ։ Նրա կարծիքով՝ այդ պրոցեսի հիմնական մոմենտը կուլտուրական ազատագրությունն է, որովհետև կուլտուրան, ինչպես կարծում է նա, հանդիսանում է սոցիալիստական աշխարհըմբռնման բազիսը և քաղաքականության վերջնական նպատակն ու հիմքը։

Սենգորը հասարակական-տնտեսական ֆորմացիան վերջին հաշվով որոշում է ոչ թե արտադրական հարաբերություններով, այլ կուլտուրայով և քաղաքականությամբ և, ամենից առաջ, քաղաքականությամբ։

«Սոցիալիզմը,— գրում նա,— դա քաղաքականություն է, այսինքն՝ տվյալ հասարակության մարդկանց կառավարելու, նրանց փոխհարաբերությունները ներդաշնակ կազմակերպելու արվեստ է» (L. Senghor, Theorie et pratique du socialisme. Dakar, *1964*, p. *7*)։

Այդ դոկտրինայի կողմնակիցները ապագա հասարակության էությունը բնութագրում են որպես սոցիալիստական, սակայն նրա նախատիպը տեսնում են նախնադարյան համայնքի մեջ։ Նրանք պնդում են, թե այն համայնքային կարգը, որ գոյություն ուներ մերձարևադարձային Աֆրիկայում գաղութատիրական նվաճումներից առաջ, իսկ մի շարք դեպքերում այս կամ այն չափով պահպանվել է նաև մեր օրերում, ունի սոցիալիզմի բոլոր բնորոշ գծերը, որովհետև նեգրական ռասայի ժողովուրդներին որպես թե խորթ է ինդիվիդուալիզմը, ինչպես նաև մասնավոր սեփականության գաղափարը։ Նրանք որպես թե իրենց սեփականությունն են համարում միայն իրենց աշխատանքի արդյունքները և ոչ թե հողը, որից նրանք բերք են վերցնում։ Այդ իսկ պատճառով, հայտարարում են այդ տեսության ներկայացուցիչները, սոցիալիզմը նոր երևույթ չէ Աֆրիկայի համար։ Աֆրիկյան հասարակությունը իբր շատ վաղուց, դեռևս գաղութատիրությունից էլ առաջ, սոցիալիստական է եղել։

«Մեր՝ աֆրիկացիների երջանկությունն այն է,— հայտարարում է Լ. Սեն-



գորը,— որ մեր գյուղական համայնքը «տրադիցիոն-սոցիալիստական» է։ Նրա սկզբունքները պետք է որ դրվեն ապագա աֆրիկյան սոցիալիստական հասարակարգի հիմքում» (L. Senghor. On african socialism. p. *59*)։

Ապագա աֆրիկյան սոցիալիստական հասարակությունը, ինչպես կարծում է Նիերերեն, մի մեծ տոհմական-ցեղային ընտանիք է (ujamea), որը մեծացված, ընդլայնված է մինչև պետության մասշտաբները կամ թե պետությունը կազմակերպված է «ընդլայնված ընտանիքի» սկզբունքներով նրա տոհմացեղային բոլոր հարաբերություններով հանդերձ (Iulius K. Nyerere. The basis of african socialism. Dar es Salaam, *1962*, p. *4*)։

«Սոցիալիզմը մտքի ուղղություն կամ մտայնություն է,— գրում է Թոմ Մբոյան,— որը հաստատվում է հասարակության մեջ խելացի փոխհարաբերությունների ու ներդաշնակության հասնելու նպատակով» (Tom Mboy. Freedom and after. London, *1963*, p. *148*)։ Այստեղ բավական է սոցիալիզմ բառը փոխարինել կապիտալիզմ բառով և Թոմ Մբոյայի սոցիալիզմից ոչ մի հետք չի մնա։ Զուր չէ, որ կապիտալիստական մամուլը հիացմունքով է արտահայտվել Թոմ Մբոյայի սոցիալիստական ծրագրի նկատմամբ։ Այդ գաղափարական ուղղության կողմնակիցները կարծում են, որ երբ վերականգնվի աֆրիկյան համայնքը իր «տրադիցիոն սոցիալիզմով», վերականգնվեն նրա սովորույթները, հարաբերություններն ու ինստիտուտները, ապա դա չի նշանակի, որ պետք է վերացնել աֆրիկյան երկրների սոցիալական կառուցվածքը, Աֆրիկայում տիրապետող սոցիալական հարաբերությունները։ Որպես թե բավական է միայն վերածնել այս սոցիալիզմը, ամեն կերպ օժանդակելով նրա հոգևոր էության վերականգնմանը (L. Senghor. On african socialism, p. *133*)։

«Մեր առաջին քայլը,— ասում է Նիերերեն,— պետք է վերադաստիարակությունը լինի, մենք պետք է վերականգնենք մեր նախկին մտահայեցողությունը, մեր տրադիցիոն աֆրիկյան սոցիալիզմը» (I. Nyerere. The basis of african socialism, p. *5*)։

Դիմելով նախնադարյան համայնքի սոցիալիզմին, այդ սոցիալիստական կոնցեպցիայի ներկայացուցիչները մոռանում են այն կարևոր հանգամանքը, որ հիշյալ «սոցիալիզմը» եղել է արտադրողական ուժերի խիստ անբավարար զարգացման, բնության ուժերի հանդեպ մարդկանց կատարյալ անզորության հետևանք։ Եթե դա կարելի է անվանել սոցիալիզմ, ապա միայն մարդկանց համատեղ ապրելու ու աշխատելու բնազդային ձգտումներն են եղել նրանց գոյության միակ երաշխիքը։ Իսկ սոցիալիստական հասարակարգը, որը ծագում է գիտական սոցիալիզմի բազայի վրա, ժողովրդական մասսաների գիտակցական, նպատակասլաց ու ստեղծարար գործունեության հետևանք է։ Ուստի այդ հասարակարգը ոչ թե տարերայնորեն է առաջանում, այլ կառուցվում է, կերտվում։ Այդ հասարակարգը ոչ մի ընդհանուր բան չունի «նախնադարյան սոցիալիզմի» հետ և այդ պատճառով վերջինիս չափանիշները բնավ չեն կարող պիտանի լինել իսկական սոցիալիստական հասարակարգի համար։ Առավել ևս եթե մենք ուշադիր զննենք մերձարևադարձային Աֆրիկայի երկրների գյուղական համայնքը, ապա միանգամայն պարզ կլինի, որ այդ համայնքը բոլորովին չի կարող խաղալ նախատեսված դերը, որովհետև նրա ընդերքում վաղուց արդեն սկսել են զարգանալ կապիտալիստական, ապրանքա-փողային հարաբերություններ։ Այդ պատճառով էլ աֆրիկյան տրադիցիոն համայնքը

քայքայումից փրկելու համար Նիերերեն, օրինակ, աֆրիկացիներին կոչ է ա-
նում չգայթակղվել անձնական հարստությունով կամ իշխանությունը չարա-
շահելով, համայնքի բարօրությունը չհամարել երկրորդական՝ իրենց անձնա-
կան շահերի համեմատությամբ (Nyerere. Ibid, p. 6):

Բայց պատմության անիվը չի կարելի շրջել: Այդ անիվը միշտ էլ շարժվում
է դեպի առաջ, տեղ-տեղ արագ տեմպերով, իսկ որոշ դեպքում էլ դանդաղորեն:
Նրա առաջընթաց շարժումը թերևս կարելի է տանել այլ հունով, բայց անհնա-
րին է կանգնեցնել:

Խոսելով մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում սոցիալիզմ կառու-
ցելու մասին, «Աֆրիկայի բացառիկության տեսության» կողմնակիցները չեն
լուծում հասարակական արտադրության սոցիալիստական սիստեմ ստեղծելու
հիմնական հարցը, այն է՝ արտադրության միջոցների սեփականության հար-
ցը: Բայց ինչպե՞ս նրանք կարող են արդարացի, շահագործումից զերծ հասա-
րակություն կառուցել, առանց դիպչելու սեփականությանը: Օրինակ, Նիերե-
րեն գտնում է, թե սոցիալիզմի և կապիտալիզմի տարբերությունը ոչ թե սե-
փականության հարաբերությունների, այլ բաշխման հարաբերությունների մեջ
է: «Սոցիալիստական և կապիտալիստական հասարակարգերի հիմնական տար-
բերությունը,—գրում է նա,—ոչ թե հարստության արտադրության մեթոդների
մեջ է, այլ բաշխման եղանակների մեջ... Դա արտադրվածի անհամաչափ
բաշխման արդյունք է» (Ibid, p. 3):

Հենց այդ պատճառով էլ Նիերերեն չի կարողանում պատասխանել այն
հարցին, թե ինչու է հասարակության արտադրածը այդպես անհամաչափ
բաշխվում:

«Աֆրիկայի բացառիկության տեսության» ներկայացուցիչները ոչ միայն
չեն լուծում արտադրության միջոցների սեփականության հարցը, այլև ուղղակի
ասում են, թե սոցիալիստական հասարակարգը կարող է խարսխվել սեփակա-
նության երկու հակադիր ձևերի՝ արտադրության միջոցների հանրային և մաս-
նավոր սեփականության վրա: Չնայած այն բանին, որ դրա հնարավորությու-
նը լիովին ժխտված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրներում
սոցիալիստական իշխանության պրակտիկայում, այնուամենայնիվ նրանք
կրքոտ կերպով պահանջում են չազգայնացնել ինչպես տեղական, այնպես էլ
օտարերկրյա կապիտալին պատկանող ձեռնարկությունները:

Այստեղ հարց է ծագում. եթե չի վերացվելու արտադրության միջոցների
մասնավոր սեփականությունը, ապա ի՞նչ ձևով կվերացվի մարդու շահագոր-
ծումը մարդու կողմից, ինչը որ այնպես բուռն կերպով ցանկանում են Աֆրի-
կայի աշխատավորները և ինչին ձգտում են, ինչպես իրենք են ասում, «Աֆրի-
կայի բացառիկության տեսության» կողմնակիցները: Օրինակ, Բեդե Օնուոհան և
Թոմ Մբոյան գտնում են, որ երբ բանվորը ակցիաներ է գնում, ապա նա դառ-
նում է տվյալ խոշոր ձեռնարկության ստացած շահույթների փայատերը: Այդ
միջոցով, պնդում են նրանք, բոլորն էլ կդառնան ձեռնարկությունների իրա-
վահավասար տերեր և վերջին հաշվով կչքանա մարդու շահագործումը մարդու
կողմից: Բայց այդ հայացքներում ոչ մի նոր բան չկա: ԱՄՆ-ի, Անգլիայի,
ԳՖՀ-ի, Ֆրանսիայի և մյուս երկրների մոնոպոլիստական կապիտալի գաղա-
փարախոսները վաղուց են պնդում, թե կապիտալիզմը արդեն փոխել է իր սո-
ցիալական էությունը, թե իրենց մոտ վաղուց արդեն վերացված է մարդու շա-
հագործումը մարդու կողմից:



«Աֆրիկայի բացառիկության տեսության» ներկայացուցիչները ժխտում
են դասակարգերի, դասակարգային պայքարի մարքս-լենինյան ուսմունքը:
Հասարակարգի համար հիմք ընդունելով արդի Աֆրիկայում եղած գյուղական
համայնքները և տոհմացեղային հարաբերությունների առանձին տարրերը,
այդ դոկտրինայի կողմնակիցները պնդում են, թե մերձարևադարձային Աֆրի-
կայի երկրներում նախկինում չի եղել և այժմ էլ չկա հասարակության դասա-
կարգային շերտավորում: Չկան հակադիր շահեր ունեցող այնպիսի սոցիալա-
կան դասակարգեր, ինչպես մետրոպոլիայում, հետևապես և չկա դասակար-
գային պայքար:

«Այստեղ (այսինքն՝ Աֆրիկայի երկրներում),— գրում է Սենգորը,— դրված
չի եղել ազգի ներսում դասակարգերի պայքարով դասակարգերի վերացման
խնդիրը, միայն անդունդ է բաժանել զարգացած և թույլ զարգացած երկրներին:
Օրինակի համար վերցնենք Սենեգալը: Այդտեղ չի եղել պրոլետարիատ, քանի
որ չեն եղել կապիտալիստներ... Մեր հասարակության մեջ չկան դասակարգեր»
(L. Senghor. On african socialism. p. 243):

Դասակարգային պայքարի տեսությունը, որը կոմունիզմի հիմքն է, ինչ-
պես պնդում է Փղոսկրե Ափի պրեզիդենտ Ֆելիքս Ուֆուե-Բուանյին, ոչ մի
իմաստ չունի մեր անդասակարգային հասարակության մեջ:

Իր Աֆրիկյան սոցիալիզմի հիմունքները աշխատության մեջ Նիերերեն
պնդում է, թե «դասակարգ» գաղափարը միանգամայն խորթ է Աֆրիկային, թե
իբր Աֆրիկայի երիտասարդ պետությունները մի շատ մեծ առավելություն
ունեն, որ նրանք սկսել են անդասակարգ հասարակությունից:

«Դասակարգային պրոբլեմը,— գրում է Թոմ Մբոյան,—չի ծագել տրա-
դիցիոն աֆրիկյան հասարակության մեջ և այսօր էլ գոյություն չունի աֆրի-
կացիների միջև (Tom Mboy. African socialism and its anlication to
Planning in Kepya. London. 1965, p. 15):

Նման հայացքների տրամաբանական հետևանքը այսպես կոչված «պրո-
լետարական ազգի» թեզիսն է, որը և ժխտում է պրոլետարական ինտերնացիո-
նալիզմի վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքը:

Այդ կոնցեպցիաների կողմնակիցները պնդում են, թե մինչև գաղութատե-
րերի ներխուժումը, տրադիցիոն աֆրիկյան հասարակության մեջ մարդիկ ապ-
րել ու աշխատել են համատեղ և որ նրանք իրենց աշխատանքի արդյունքները
հավասար բաժանել են իրար մեջ: Չի եղել ո՛չ աղքատ, ո՛չ էլ հարուստ: Հասա-
րակությունը հոգ է տարել յուրաքանչյուր անհատի մասին: Այդ պատճառով էլ
մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում այն ժամանակ չեն եղել ո՛չ շա-
հագործողներ, ո՛չ էլ շահագործվողներ, ուրեմն և չեն եղել հակադիր շահեր
ունեցող սոցիալական դասակարգեր: Այստեղից էլ բխում է նրանց այն հետե-
վությունը, թե մերձարևադարձային Աֆրիկայի ներկա բոլոր սոցիալական
երևույթները հետևանք են այն բանի, որ իմպերիալիստական տերությունները
նվաճել են այդ մայրցամաքը և սպիտակամորթ գաղութատերերը սարկացրել
են այդ երկրների ժողովուրդներին: Հետևապես, ասում են նրանք, մարդու շա-
հագործումը մարդու կողմից, ինչպես նաև սոցիալական դասակարգերի առկա-
յությունը մերձարևադարձային Աֆրիկայի երկրներում ունի ոչ թե սոցիալա-
կան, այլ ռասայական ծագում: Այդպես դատելով, նրանք հանգում են այն
հետևության, թե իբր այժմ աշխարհը բաժանված է մի կողմից «աղքատ» կամ
«պրոլետարական» ազգերի՝ նախկինում գաղութային, իսկ այժմ թույլ զարգա-

ցած երկրների ժողովուրդների, և մյուս կողմից՝ «հարուստ» ազգերի, որոնց
թվում պետք է դասել ինդուստրիալ տեսակետից զարգացած երկրների ժողո-
վուրդներին, անկախ նրանց հասարակական-քաղաքական կարգերից, անկախ
այն բանից կապիտալիստակա՞ն, թե՞ սոցիալիստական են այդ երկրները:
«Վերադառնալով եվրոպական պրոլետարիատի և գաղութային երկրների
ժողովուրդների, այսպես կոչված, համերաշխության թեմային,— ասում է Սեն-
գորը,— պետք է ասել, որ այդ ռոմանտիկ թեման, որը ժողովրդականություն է
վայելում Եվրոպայում, ոչ մի քննադատության չի դիմանում: Իրականում Եվ-
րոպայի գաղութային նվաճումները հարստացրել են ոչ միայն կապիտալիստ-
ներին, այլ նաև Եվրոպայի միջին դասակարգերին և պրոլետարիատին».
(L. Senghor. On african socialism, p. 68—69): Ուստի, շարունակում է նա.
«Ներկայիս սոցիալական պրոբլեմը ոչ թե երկրի ներսում դասակարգերի պայ-
քարն է, այլ, ընդհակառակը, դասակարգերի պայքարը միջազգային մասշտա-
բով» (Ibid. p. 70):
«Սենեգալի ժողովուրդը պրոլետարական ժողովուրդ է ֆրանսիական ժո-
ղովրդի նկատմամբ» (Ibid. p. 144—145):
Իսկական ինտերնացիոնալիզմ,— ասում է Լ. Սենգորը,— գոյություն ունի
միայն «չքավոր, աղքատ, պրոլետարական ազգերի» միջև, որոնց դեմ կանգնած
են «հարուստ» ազգերը: Ուստի, ասում են Սենգորը և այդ տեսության մյուս
կողմնակիցները, Մարքսի ուսմունքը շահագործողների և շահագործվողների
անխուսափելի բախման մասին, որը մշակվել է Արևմտյան Եվրոպայի երկըր-
ների պայմաններից ելնելով, պիտանի չէ արդի աֆրիկյան իրականության
համար:
Մերձարևադարձային Աֆրիկայի երկրների պատմության ուշադիր և ման-
րակրկիտ ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ տրադիցիոն աֆրիկյան հա-
սարակության, այսինքն՝ նախնադարյան-համայնական կարգի քայքայումը
սկսվել է դեռ նախքան Աֆրիկան իմպերիալիստական տերությունների կող-
մից նվաճվելը:
Բայց երբ մերձարևադարձային Աֆրիկայի երկրները հետագայում ներ-
գրավվեցին տնտեսության համաշխարհային միասնական կապիտալիստական
սիստեմի մեջ, արագացավ Աֆրիկայի բնակչության դասակարգային շերտա-
վորման պրոցեսը: Մերձարևադարձային Աֆրիկայի երկրների պատմական ա-
ռանձնահատկությունների շնորհիվ դասակարգերի գոյացման ու շերտավորման
այդ պրոցեսը գնալով ավելի է խորանում և շարունակվում է նաև մեր օրերում:
Մենք քննարկեցինք «Աֆրիկայի բացառիկության տեսության» միայն մի
քանի հիմնական դրույթները և տեսանք, որ այդ «տեսությունը», թեպետև նրա
կողմնակիցները այն հրամցնում են որպես սոցիալիստական դոկտրինա, ալ-
նուամենայնիվ արտահայտում է աֆրիկյան դեռևս երիտասարդ, նորածագ ազ-
գային բուրժուազիայի շահերը, նա օբյեկտիվորեն նպաստում է կապիտալիս-
տական հասարակական հարաբերությունների զարգացմանը մերձարևադար-
ձային Աֆրիկայի երկրներում, սակայն ոչ մի ընդհանուր բան չունի գիտական
սոցիալիզմի տեսության հետ:



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ՀՈՒՍԱԼԻ ԳՐԱՎԱԿԱՆԸ

Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը— *այս է, դարձյալ այս է, միմիայն այս է այժմ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը:*

*Վ. Ի. Լենինը այս խոսքերն ասել է շուրջ քառասունչորս տարի առաջ, բայց նրանք մի առանձնակի հրատապությամբ են հնչում այսօր, երբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է կոմունիստական շինարարության հոյակապ պլանները: Լենինյան այս ցուցումներն իրենց փայլուն արտացոլումն են գտել ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումներում: Այժմ, ավելի քան երբևէ, պահանջվում է ավելի բարելավել կուսակցական-կազմակերպական աշխատանքը, բարձր հիմքերի վրա դնել կուսակցության դիրեկտիվների, կուսակցական և պետական որոշումների կատարման ստուգման գործը:*

*XXIII համագումարի որոշումները ելնում են կյանքի ռեալ պահանջներից:*

*Ներկայումս, երբ մեր երկրի էկոնոմիկան զարգանում է միասնական պլանով, յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկությունից, շինարարական կազմակերպությունից, կոլտնտեսությունից ու սովխոզից պահանջվում է ճիշտ լուծել իր առջև դրված խնդիրները, կատարել ու գերակատարել պետական պլանները:*

*Կոմունիստական կուսակցության ողջ գործունեությունը խոսքի ու գործի միասնության, որոշումները ճշտությամբ կատարելու օրինակ է: Կուսակցական որոշումների կատարման ստուգումը բարձրացնում է կազմակերպության մարտունակությունը, աշխատանքի ընդհանուր մակարդակը: Ուստի, ստուգումը պետք է ստեղծագործական, կազմակերպչական բնույթ ունենա, դրվի կուսակցական կազմակերպությունների ողջ գործունեության հիմքում, դառնա նրա կարևորագույն խնդիրներից մեկը: Կատարման ստուգումը բարձրացնում է կարգապահությունը, երևան հանում դրա խախտողներին, դաստիարակում մարդկանց, սովորեցնում ընդունված որոշումը կատարել ճիշտ ու ժամանակին:*

*ՀԿԿ Կամոյի շրջանային կոմիտեի և կուսակցական կազմակերպությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր լավ է կազմակերպված կատարման ստուգումը, գործերը բարվոք են և հակառակը: Այսպես, Մու-*

*խան գյուղի կոլտնտեսությունը ետ էր մնում։ 1965 թվականի սկզբներին կերն
սպառվել էր, կոլտնտեսության ղեկավարները, գլուխները կորցրած, դես-դեն
էին ընկել խոտ, ծղոտ հայթայթելու։ Վատ խնամքի ու կերակրման հետևանքով
անասունների անկումները մեծ չափերի հասան։ Շուտով շրջանային կոմիտեն
ուսումնասիրեց Մուխանի կոլտնտեսության վիճակն ու այն քննության առավ
շրջկոմի բյուրոյում։ Կոլտնտեսության նախագահը հանվեց աշխատանքից, նոր
նախագահ առաջադրվեց երիտասարդ կոմունիստ, անասնաբույժ Ս. Ան-
տոնյանը։ Փոխվեց նաև կուսկազմակերպության քարտուղարը։ Բացահայտ-
վեցին չօգտագործվող հնարավորությունները, գործարար, կոնկրետ որոշումներ
ընդունվեցին, ուր նշված էին կոլտնտեսության առջև դրված խնդիրները,
դրանց կատարման ժամկետներն ու պատասխանատու անձինք։*

*Կուսշրջկոմի բյուրոյի հանձնարարությամբ շրջկոմի կազմակերպական
բաժնի վարիչ Խ. Սարգսյանը մեկնեց Մուխան՝ մասնակցելու բյուրոյի
որոշումը։ Նա զրուցեց կոլտնտեսականների, կոմունիստների հետ։ Պարզվեց,
որ կոլտնտեսականների աշխօրերի դիմաց աննշան եկամուտ են ստացել, որի
հետևանքով հանրային արտադրությունը լքել են նույնիսկ որոշ կոմունիստներ։*

*Շրջկոմի բյուրոն միջոցառումներ մշակեց մարդկանց նյութական շա-
հագրգռվածությունը բարձրացնելու նպատակով։ Կոլտնտեսությունում վերա-
նայվեց վարձատրության կարգը, սահմանվեց լրացուցիչ վարձատրություն,
որի համաձայն կթվորներին տրվում է պլանից ավելի ստացած կաթի 40 տո-
կոսը, իսկ անասունների գլխաքանակը անկորուստ պահպանելու դեպքում՝
մեկ հորթ։ Բարձրացվեց նաև տնտեսության մյուս ճյուղերում զբաղված կոլ-
տնտեսականների շահագրգռվածությունը, վերանայվեցին վարձատրման ընդ-
հանուր նորմաները։ Շրջանային համապատասխան կազմակերպությունների
օգնությամբ կոլտնտեսությունը ձեռք բերեց անհրաժեշտ քանակությամբ կեր։*

*Այսպիսով, Մուխանի կոլտնտեսությունը ոտքի կանգնեց. մարդիկ սրտով
գործի կպան։ Ֆերմաները համալրվեցին աշխատող ձեռքերով։ Կոլտնտեսու-
թյան նորընտիր նախագահն ու պարտկազմակերպության քարտուղարը ամեն
ինչ անում էին կոլտնտեսականների պատասխանատվությունը բարձրացնելու
համար։ Անասնապահական ֆերմաներում սահմանվեց 24-ժամյա հերթապա-
հություն։ Բացի այդ, կոլտնտեսությանը մեծ չափով օգնեցին ՍՄԿԿ Կենտկոմի
մարտյան պլենումի որոշումները. պետությունն արտելին զիջեց պարտքերի մեծ
մասը, բարձրացվեցին գյուղատնտեսական մթերքների գնման գները։*

*Այս ամենի շնորհիվ Մուխանի կոլտնտեսությունը բռնեց վերելքի ուղին։
1965 թվականին պետությանը մսի վաճառքի պլանը կատարեց 116, կաթինը՝
106, բրդինը՝ 107 տոկոսով։ Նախորդ տարվա համեմատությամբ, կաթի ար-
տադրությունն ավելացավ 20, մսինը՝ 17, կովերի գլխաքանակը՝ 5 տոկոսով.
յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը՝ 239 կիլոգրամով։ Կա-
տարվեցին ու գերակատարվեցին անասունների գլխաքանակի ավելացման և
կերի կուտակման առաջադրանքները։ Ամրապնդվեց տնտեսությունը, ավելա-
ցան կոլտնտեսականների եկամուտները։ Իրենց լավագույն ցուցանիշներով
1965 թվականի երրորդ եռամսյակում գյուղի աշխատավորները նվաճեցին ՀԿԿ
շրջկոմի, շրջսովետի գործկոմի և գյուղատնտեսական արտադրական վարչու-
թյան փոխանցիկ դրոշը։*

*Մուխանի օրինակը միակը չէ։ Կուսշրջկոմը հետևում, օգնում է որոշում-
ների կենսագործմանը, ստուգում կատարման ընթացքը։*



*Մի օրինակ ևս. Լճափի գյուղի կոլտնտեսությունը նույնպես ետ էր մնում։ Տարիներ շարունակ այստեղ թերակատարվում էին գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանները, մեծ չափերի էր հասնում անասունների անկումը։ Պատճառն այն էր, որ կուսկազմակերպությունն իր դերում չէր, չէր իրականացնում կոլտնտեսության վարչության գործունեությունը վերահսկելու իր ֆունկցիան, բարձիթողի էր կադրերի ընտրության ու դաստիարակության գործը, ընկած էր աշխատանքային կարգապահությունը։ Հասկանալի է, շրջանային կոմիտեն անտարբեր մնալ չէր կարող։ 1965 թվականի փետրվարին շրջկոմի բյուրոյում լսվեց Լճափի կոլտնտեսության կուսակցական կազմակերպության հաշվետվությունը և ընդունվեց համապատասխան որոշում։ Վերանայվեցին կադրերը, աշխատանքից հանվեցին կաթնաապրանքային և ոչխարաբուծական ֆերմաների վարիչները, փոխվեց կոլտնտեսության նախագահը։ Կոլտնտեսությունում ղեկավար աշխատանքի նշանակվեցին ձեռներեց, մասնագիտական կրթություն ունեցող ընկերներ։*

*Արդյունքն այն եղավ, որ Լճափի կոլտնտեսությունը նույնպես անցած տնտեսական տարին փակեց բարձր ցուցանիշներով։*

*Կահույքի ֆաբրիկան սիստեմատիկաբար թերակատարում էր արտադրական պլանները։ Որակը խիստ ցածր էր, այդ պատճառով էլ արտադրական առանց այն էլ փոքր տեղամասերում կուտակվել էր ավելի քան 200 հազար ռուբլու գերնորմատիվ ապրանք։ Ընկած էր աշխատանքային կարգապահությունը։ Ֆաբրիկան փակուղու առաջ էր կանգնած։ 1965 թվականի մարտին շրջկոմի բյուրոն քննարկեց ֆաբրիկայի հարցը, ընդունեց գործնական որոշում։ Ֆաբրիկայի դիրեկցիան և կուսակցական կազմակերպությունը պարտավորվեցին ջանք չխնայել կահույքի որակը բարձրացնելու, սպառողների պահանջմունքները կատարելու համար։ Մնում էր կոնկրետ գործի անցնել։ Շրջկոմի քարտուղար ընկ. Դ. Հարությունյանին հանձնարարվեց անձամբ զբաղվել այդ հարցով։ Ամենից առաջ վերանայվեցին կադրերը։ Ֆաբրիկայի նոր դիրեկտոր Ա. Աղասյանի և կուսկազմակերպության նորընտիր քարտուղար Հ. Հակոբյանի հետ մեկտեղ գործնական միջոցառումներ մշակվեցին կարգապահությունը բարձրացնելու ուղղությամբ։ Ֆաբրիկան ստացավ ծակող, փայլեցնող, ամրացնող նոր հաստոցներ, հզոր մամլիչ։ Ընդարձակվեց չորանոցը, բարեփոխվեց ու նորոգվեց արտադրված կահույքը։ Աստիճանաբար դատարկվեցին արտադրանքով լիքը պահեստներն ու արտադրամասերը։ Մի քանի ամսում իրացվեց մոտ 20 հազար ռուբլու գերնորմատիվ ապրանք։ Ապահովվեց ֆաբրիկայի ռիթմիկ աշխատանքը, կատարվեցին պլանները։ Այժմ այստեղ ամեն ինչ կարգին է։ Ձեռնարկության կոլեկտիվը ձգտում է ավելի ծավալել որակի բարձրացման համար մղվող պայքարը, անշեղ կենսագործել ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները։*

*Որոշումների կատարման ստուգման կազմակերպումը պայմանավորված է նրանով, թե որոշումը ճի՞շտ է արտահայտում քննարկված գործի էությունը, երևան հանում նկատված թերությունների պատճառները, նշում դրանց վերացման ուղիները։*

*Տարիներ շարունակ Սարուխանի նախկին կոլտնտեսությունում (ներկայումս սովխոզ) չնայած առկա մեծ հնարավորություններին, կարտոֆիլի ցանքատարածությունից ստանում էին ցածր բերք։ Դրա գլխավոր պատճառներից մեկն այն էր, որ սովխոզի կուսակցական կազմակերպությունն ու դիրեկցիան*

սրտացավ, հետևողական վերաբերմունք չէին ցուցաբերում ընդունված որոշումների կատարման, կոմունիստների և անկուսակցականների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կատարման նկատմամբ։

Շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ կուսակցական կազմակերպությունն ուսումնասիրեց կարտոֆիլի ցանքատարածությունների ընդլայնման և բերքատվության բարձրացման հնարավորությունները։ Որոշվեց հարցը քննության առնել սովխոզի կուսակցական կազմակերպության ժողովում։ Կոմունիստները խելացի առաջարկություններ արեցին, և ժողովը գործնական միջոցառումներ մշակեց տնտեսության այդ ճյուղի զարգացման համար։ Ժողովն օգնեց բարելավելու կարտոֆիլագործների աշխատանքը, մտցվեց անհատական-գործարքային սիստեմ, ընդլայնվեց ցանքատարածությունը։ Շուտով երևացին լավ աշխատանքի պտուղները։ 1965 թվականին սովխոզը մեկ հեկտարից ստացավ 174 ցենտներ կարտոֆիլ, իսկ Կ. Քոլոզյանի և Խ. Յթոյանի ղեկավարած օղակները՝ 300 ցենտներ։

Փորձը ցույց է տալիս, որ ընդունված որոշումները հաջողությամբ են կատարվում միայն այն դեպքում, երբ դրանք ընդունելիս հանգամանորեն հաշվի են առնվում եղած հնարավորություններն ու ռեզերվները։ Հակառակ դեպքում, որոշումը գրվում է, ձևականորեն ընդունվում, բայց մնում թղթի վրա, որովհետև այն պարզապես անհնար է իրագործել։

Շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների կուսկազմակերպությունները միշտ որոշում են հանրային հոտն ապահովել հյութալի կերի առատ պաշարով, բայց ոչ մի տարի չի կատարվել սիլոսի կուտակման պլանը։ Ինչո՞ւ։ Որովհետև նրանց ուժերից վեր է եղել. կերաբույսեր չէին ցանվում, սիլոսը կուտակվում էր մոլախոտերից. իսկ միայն մոլախոտով հնարավոր չէ հյութալի կերի առատ բազա ստեղծել։ Այդ էր պատճառը, որ անցյալ տարի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները պլանավորեցին 2453 հեկտար ոլոռ ու վարսակ ցանել, սիլոսը կուտակել բացառապես կերային կուլտուրաների հաշվին, իսկ մոլախոտերը հնձել որպես խոտ։ Այդ միջոցառման իրագործման շնորհիվ շրջանը գերակատարեց սիլոսի կուտակման սոցիալիստական պարտավորությունը. նախատեսված 18420-ի փոխարեն կուտակեց 19021 տոննա սիլոս։

Որոշումների կենսագործման խնդրում պակաս կարևոր չէ կադրերի պատասխանատվության բարձրացումը։ Այդ ուղղությամբ մենք դեռևս լուրջ թերություններ ունենք։ Հաճախ մարդիկ պատասխանատվություն հանդես չեն բերում հանձնարարված գործում, աշխատում են ուրիշի վրա բարդել իրենց մեղքը։

Ամեն անգամ, երբ առիթ էր լինում զրուցել Կարմիր գյուղի կոլտնտեսության կուսակցական կոմիտեի քարտուղար Հրաչիկ Ջոհրաբյանի հետ, նա չէր մոռանում տեղի-անտեղի բողոքել, տրտնջալ, սրան-նրան մեղադրել եղած թերությունների համար։ Նույնպիսին էր նաև կոլտնտեսության վարչության նախագահ Մ. Արևշատյանը։ Եվ այդ ամենի հետևանքն այն եղավ, որ տնտեսությունն անցյալ տարի թերակատարեց անասնաբուծական և գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության ու վաճառքի, կերի կուտակման պլանները։ Պատահական չէ, որ կոլտնտեսության հաշվետու ժողովում կոլտնտեսականները չընտրեցին արտելի նախկին նախագահին, իսկ կուսակցական կոմիտեի քարտուղար Հ. Ջոհրաբյանին շրջկոմի բյուրոն տուժարկեց։



Հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության բացակայությունը գցում է կարգապահությունը, ձախողում կուսակցական-պետական առաջադրանքների կատարումը։ Ահա թե ինչու կուսշրջկոմի պլենումը քննարկեց կուսակցական-պետական կարգապահության վիճակը շրջանի ձեռնարկություններում և հիմնարկություններում։ Շրջկոմի պլենումի որոշման համաձայն կոնկրետ միջոցներ մշակվեցին թերությունները վերացնելու համար։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները կատարման ստուգման բազմաթիվ ձևեր ու մեթոդներ են կիրառում. շրջկոմի բյուրոյի նիստերում, սկզբնական կուսկազմակերպությունների ընդհանուր ժողովներում պարբերաբար քննարկվում են վերադաս կուսակցական և սովետական օրգանների, ինչպես նաև սեփական որոշումների կատարման ընթացքը։ Կատարման ստուգման այդ ձևը ճիշտ է, սակայն դրանով չպետք է բավարարվել. միևնույն հարցի մասին կարող են ընդունվել բազմաթիվ որոշումներ, բայց առանց կազմակերպական աշխատանքի, ոչ մեկն էլ չի կատարվի։

Շրջանային կոմիտեի բյուրոն հաճախ քննարկել է կատարման ստուգման վիճակը այս կամ այն կազմակերպությունում, համապատասխան միջոցառումներ մշակել թերությունների վերացման համար։ Անցյալ տարվա սկզբին Կամոյի տրիկոտաժի ֆաբրիկայում գործերն անմխիթար վիճակում էին։ Սկզբնական կուսկազմակերպությունը ոչ միայն չէր իրականացնում ֆաբրիկայի դիրեկցիայի գործունեությունը վերահսկող իր ֆունկցիան, այլև դատապարտելի անտարբերություն էր ցուցաբերում իր իսկ ընդունած որոշումների կատարման նկատմամբ։ Կուսկազմակերպությունը շատ անգամ է անդրադարձել արտադրանքի որակին և աշխատանքային կարգապահության բարձրացմանը, քաղաքական-մասսայական աշխատանքների բարելավմանը, սակայն ֆաբրիկայում հենց այդ բնագավառներում աղաղակող թերություններ կային։

Շրջանային կոմիտեն անդրադարձավ տրիկոտաժի ֆաբրիկայի կուսակցական կազմակերպության գործունեությանը, նշեց նրա անբավարար աշխատանքը ընդունած որոշումների կենսագործման ուղղությամբ։ Կուսշրջկոմի բյուրոյի որոշումից հետո ֆաբրիկայի կուսակցական կազմակերպությունն ու դիրեկցիան վերակառուցեցին իրենց աշխատանքը և ապահովեցին պլանների կատարումն ու գերակատարումը։

Շրջանային կոմիտեի բյուրոն նաև քննարկել է որոշումների կատարման վիճակը Կամոյի շրջկոոպի, քաղսոի, Գեղարքունիքի, Լանջաղբյուրի և Լճափի կոլտնտեսային կուսակցական կազմակերպություններում։

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունքներում, որոնք հրավիրվում են ամիսը մեկ անգամ, հատուկ զեկուցումներ են լսվել ընդունած որոշումների կատարման ստուգման մասին։ Այնուհետև շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ սեմինարի մասնակիցները մեկնել են առաջավոր կոլտնտեսություններ, սովխոզներ ու արդյունաբերական ձեռնարկություններ՝ տեղում ուսումնասիրելու որոշումների կատարման ստուգման փորձը։ 1966 թվականի մարտի 3-ին այդպիսի միջոցառում կազմակերպվեց Նորադուզ գյուղի կոլտնտեսությունում։ Շրջկոմի կազմակերպական բաժինը նախապես ուսումնասիրեց որոշումների կատարման վիճակը հիշյալ կուսկազմակերպությունում և ստուգման արդյունքները քննարկման դրեց սեմինար պարապմունքում։ Զեկուցեց ՀԿԿ շրջկոմի անդամ, կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Ս. Կարապետյանը։ Այդ ուսա-

նելի միջոցառմանը մասնակցում էին կուսակցական խոշոր կազմակերպությունների քարտուղարները, շրջանային կոմիտեի բյուրոյի անդամներ, Նորադուզի կոլտնտեսության դաշտավարության և անասնապահության բնագավառում աշխատող ղեկավար ընկերներ: Նման միջոցառումներ են անցկացվել նաև Սարուխանի, Հացառատի, Կամոյի սովխոզներում, կարելի գործարանում:

Կենսագործելով ընդունված որոշումները, շրջանի կուսակցական կազմակերպությունները որոշակի հաջողությունների հասան: 1965 թվականին զգալիորեն ավելացավ անասունների գլխաքանակը, անասնաբուծական մթերքների արտադրությունն ու դրանց վաճառքը պետությանը: Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման տարեկան պլանը կատարվեց 100,2, ոչխարներինը՝ 100,3, խոզերինը՝ 118,8 տոկոսով: Նախորդ տարվա համեմատությամբ 1965 թվականին կաթի համախառն արտադրանքն ավելացավ 522 տոննայով, իսկ մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը՝ 81 կիլոգրամով: Շրջանը պետությանը մսի վաճառքի տարեկան պլանը կատարեց 102, կաթինը՝ 101,7, բրդինը՝ 106 տոկոսով: Կոլտնտեսություններն ու սովխոզները հացահատիկի վաճառքի առաջադրանքը կատարեցին 103, ձվինը՝ 103 տոկոսով:

Շրջանում հացահատիկի յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 13,2, կարտոֆիլինը՝ 86,3 ցենտներ կամ, 1964 թվականի համեմատությամբ, ավելի արտադրվեց՝ հացահատիկ 2215, կարտոֆիլ 1500 տոննա: Կուտակվեց 18915 տոննա խոտ և պատրաստվեց 19021 տոննա սիլոս: Անասնաբուծական մթերքների ավելացման ուղղությամբ հաջողություններ կան նաև 1966 թվականի առաջին կիսամյակում: Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացել է 10,6, մսինը՝ 11,5 տոկոսով:

Կամոյի շրջանի կուսակցական կազմակերպություններն որոշակի հաջողությունների են հասել նաև արդյունաբերության զարգացման և արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրման գործում: Յոթնամյակում շրջանի արդյունաբերության արտադրանքի ծավալը ավելացավ 4,5 անգամ, ստեղծվեց և արագ զարգանում է կարելի, սարքաշինական և ուրիշ արտադրանքների արտադրությունը: 1965 թվականի արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարվեց 104 տոկոսով:

Շրջանի աշխատավորներն, արդյունաբերական ձեռնարկությունների և սովխոզների կոլեկտիվները պատվով կատարեցին նախահամագումարյան մրցություններում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները և այժմ պայքարում են ութերորդ հնգամյակի առաջին տարվա պլանի կատարման և գերակատարման համար:

Կուսակցության XXIII համագումարը, անդրադառնալով կուսակցականկազմակերպական աշխատանքի հարցերին, կրկին ընդգծեց կատարման ստուգման ուժեղացման անհրաժեշտությունը: Կենսագործելով համագումարի որոշումները, ՀԿԿ Կամոյի շրջկոմը և սկզբնական կազմակերպություններն առաջիկայում ավելի մեծ ուշադրություն կնվիրեն կուսակցական աշխատանքի այդ կարևորագույն բնագավառին, հաջողությամբ կգլխավորեն բանվորների ու կոլտնտեսականների աշխատանքային վերելքը:

Բ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀԿԿ Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար

---

# ՍԵՎԵՌՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՇԱՐՔԵՐԻ ԱՃՄԱՆԸ

Հայտնի է, որ նոր անդամների ընդունելության հարցում կուսակցությունը ելնում է լենինյան այն գաղափարներից, որ գլխավորը ոչ թե կուսակցության շարքերի քանակական աճն է, այլ դրանց որակական կազմը, որ հարկավոր է ավելի ու ավելի բարձրացնել կուսակցության անդամի կոչումը: «Ավելի լավ է,— նշել է Վ. Ի. Լենինը,— որ տասն աշխատողներ իրենց կուսակցության անդամներ չանվանեն (իսկական աշխատողները աստիճանների ետևից չեն ընկնում), քան թե մի շաղակրատ իրավունք ու հնարավորություն ունենա լինելու կուսակցության անդամ»:

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, թե որքան կարևոր է ապահովել այն միջոցառումները, որոնք կուսակցությունը պաշտպանում են խցկվողներից, որպեսզի այն աճի, ամենից առաջ, ի հաշիվ բանվորների:

Այժմ էլ կուսակցության մեջ ընդունվողների նկատմամբ պահանջկոտությունը ոչ թե նվազեցվում, այլ, ընդհակառակը, ավելի ու ավելի է բարձրացվում: Այդ թելադրվում է այն հսկայական խնդիրներով, որոնք լուծում է կուսակցությունը, նրա՝ որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի ու նշանակության հետագա բարձրացմամբ: Կուսակցության մեջ յուրաքանչյուր ընդունվողին ներկայացվող պահանջները բխում են այն մեծ ու հսկայական պատասխանատվությունից, որ կուսակցությունն ունի սովետական ժողովրդի հանդեպ:

Հաշվի առնելով այս, Կիրովական քաղաքի սկզբնական կուսակցական կազմակերպություններն անհրաժեշտ պահանջկոտություն են ցուցաբերում կուսակցության մեջ ընդունվողների նկատմամբ: Նրանք կուսակցության շարքերն են ընդունում ամենաառաջավոր ու ակտիվ մարդկանց, ցուցաբերելով անհատական մոտեցում և հաշվի առնելով յուրաքանչյուր ընդունվողի քաղաքական, գործարար ու բարոյական հատկանիշները: Եվ պատահական չէ, որ վերջին տարիներին մեզ մոտ նկատելիորեն բարելավվել է ՍՄԿԿ շարքերի որակական կազմը:

1964 թ. ընթացքում քաղաքի կոմունիստական կազմակերպությունները ՍՄԿԿ շարքերն են ընդունել 245 հոգի: Նրանցից 129-ը բանվորներ են, 33-ը՝ կանայք, 24 տոկոսը՝ ինժեներա-տեխնիկական աշխատողներ: Իսկ 1965 թվականին այդ թվերը համապատասխանաբար ներկայացնում են հետևյալ պատկերը. 232 ընդունվածներից բանվորներ են 123-ը, կանայք՝ 44-ը և 25 տոկոսը՝ ինժեներա-տեխնիկական աշխատողներ:

Կուսակցության շարքերի աճի հարցով հետևողականորեն է զբաղվում արհեստական մետաքսաթելի գործարանի կուսակցական կազմակերպությունը (կուսկոմի քարտուղար՝ Ս. Ավետյան): Ընդունվածները այն մարդիկ են, որոնք աշխատում են արտադրության վճռական տեղամասերում, անթերի կատարում իրենց պարտքը հայրենիքի նկատմամբ: Նրանք աչքի են ընկնում ո՛չ միայն արտադրության մեջ, այլև հասարակական աշխատանքում, կենցաղում, լավագույն օրինակ ծառայում մյուսներին: Այսպես, ՍՄԿԿ երիտասարդ անդամներ Մուշեղ Գրիգորյանը և Ամրաստան Աղաբեկյանը աշխատում են գործարանի քիմիական արտադրամասում որպես ապարատավարներ: Նրանք արտա-

դրության առաջավորներ են, տեխնոլոգիական կանոնների ճիշտ պահպանման շնորհիվ մշտապես ապահովում են թողարկվող լուծույթի բարձր որակը։ Երիտասարդ կոմունիստները միայն իրենց հաջողությամբ չեն բավարարվում։ Նրանք իրենց փորձն ու գիտելիքները մեծ սիրով հաղորդում են աշխատանքային ընկերներին, օգնում արտադրամասի ընդհանուր ցուցանիշները բարձրացնելուն։ Գրիգորյանը և Աղաբեկյանը ակտիվ մասնակցում են արտադրամասի և գործարանի հասարակական կյանքին, ժողովրդական դրուժինայի գործունեությանը։

Մանող արտադրամասում և ամբողջ գործարանում մեծ հարգանքով են խոսում մանող բանվորուհի, երիտասարդ կուսանդամ Էսֆիրա Կոխլիկյանի մասին։ Նա արտադրամասում առաջինն էր, որ «խախտեց» առաջին տեսակի արտադրանքի թողարկման նախատեսված 56,6 տոկոսի սահմանը, այն հասցնելով 76 տոկոսի։ Արտադրության առաջավորի փորձը մեծ ուշադրության արժանացավ և տարածվեց ամբողջ արտադրամասում։ Այդ գործում ակտիվություն ցուցաբերեց նաև ինքը՝ առաջավոր բանվորուհին։ Արտադրամասի կոլեկտիվը շուտով նվաճեց 76 տոկոսի սահմանը։ Բայց այդ նույնպես վերջին բնագիծը չէր։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո արտադրամասի կոլեկտիվը լուրջ պայքար ծավալեց շահութաբերության համար։ Մանողները փորձից գիտեին, որ դրան հասնելու պայմաններից մեկը հենց առաջին տեսակի արտադրանքի ավելացումն է։ Որոնումներն էլ սկսվեցին այդ ուղղությամբ։ Այստեղ նորից օգնության հասավ Էսֆիրան։ Նրա առաջարկությամբ կոլեկտիվը որոշեց աշխատել առանց որակի գծով հսկիչների։ «Բանվորի խիղճը ամենալավ վերահսկողն է» լոզունգը դարձավ բոլոր մանողների սեփականությունը, կյանքի օրենքը։ Գործարանի, արտադրամասի ղեկավարությունը, կուսակցական կազմակերպությունը և կուսկոմիտեն հավանություն տվեցին և ջերմորեն պաշտպանեցին այդ նախաձեռնությունը։ Առաջին արդյունքները շուտով ակնհայտ դարձան։ Արտադրամասի կոլեկտիվը 76-ի փոխարեն առաջին տեսակի արտադրանքի թողարկումը հասցրեց 98 տոկոսի։

Մանողներին ընդօրինակեցին նաև գործարանի մյուս տեղամասերի կոլեկտիվները։ Ձեռնարկության որակի գծով 30 հսկիչներ աշխատանքի անցան արտադրության առավել կարևոր տեղամասերում, անմիջապես մասնակցելով նյութական բարիքների ստեղծման գործին։ Իսկ որակի բարձրացման հաշվին գործարանը ստացավ 193 հազար ռուբլու օգուտ։

Էսֆիրա Կոխլիկյանը պատվով է կատարում նաև քաղաքային սովետի դեպուտատի և արհեստական մետաքսաթելի գործարանի ԼԿԵՄ կոմիտեի անդամի պարտականությունները։

Երիտասարդ ինժեներ, ՍՄԿԿ անդամ Նյուտոն Գրիգորյանն աշխատում է ճշգրիտ հաստոցների գործարանում որպես գործիքային արտադրամասի պետ։ Նա աշխատում է բարեխղճորեն, պատասխանատվության բարձր զգացումով, անձնական օրինակով վարակում կոլեկտիվի անդամներին։ Այդ արտադրամասը ձեռնարկության ամենապատասխանատու տեղամասերից մեկն է։ Այստեղ են ծնվում նոր հաստոցների փորձնական նմուշները, որոնք արտադրական ուղեգիր են ստանում։ Կոմունիստի ղեկավարած կոլեկտիվը պատվով ու մեծ պատասխանատվությամբ է կատարում յուրաքանչյուր առաջադրանք։ Արտադրամասը թողարկել է 5 նոր հաստոց, որոնք պետական հանձնաժողովի կողմից ընդունվել են որպես բարձր որակի։ Իսկ «45—31» մակնիշի էլեկտրա-



կայծային ճշգրիտ հաստոցը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ցուցահանդեսում արժանացել է արծաթե, Լայպցիգի միջազգային ցուցահանդեսում՝ ոսկե մեդալների։

Երկաթուղային հանգույցի կուսակցական կազմակերպությունը և նրա բյուրոն (քարտուղար՝ Գ. Մաշուրյան) կազմակերպական և գաղափարական-դաստիարակչական հատուկ աշխատանք են կատարում կուսակցության շարքերն ընդունվելու ցանկություն հայտնողների հետ։ Հանձնարարություններ են տալիս, ուշադրությամբ հետևում դրանց կատարմանը, ընդգրկում քաղուսցանցում, մասնակից դարձնում դասախոսություններին։ Այսպես, կուսակցության մեջ ընդունվելու ցանկություն էր հայտնել հանգույցի մեքենավարի օգնական Ա. Մխիթարյանը։ Նա լավ աշխատող է, տիրապետում է էլեկտրիկի, փականագործի և այլ մասնագիտությունների, սակայն անհրաժեշտ քաղաքական պատրաստականություն չուներ։ Եվ կուսբյուրոյի հանձնարարությամբ կոմունիստներ Լ. Ղազախեցյանը և Ս. Բեժանյանը սկսեցին զբաղվել նրա քաղաքական մակարդակի բարձրացմամբ։ Անցավ որոշ ժամանակ, և կազմակերպությունը նրան միաձայն ընդունեց ՍՄԿԿ շարքերը։

Կուսակցության շարքերի աճով լավ են զբաղվում նաև քիմիական կոմբինատի (կուսկոմի քարտուղար՝ Ա. Բալյան), ճշգրիտ հաստոցների գործարանի (կուսբյուրոյի քարտուղար՝ Ե. Գրիգորյան), ավտոմատիկա ինստիտուտի (բյուրոյի քարտուղար՝ Ա. Դավթյան) և շատ ուրիշ սկզբնական կազմակերպություններ, որոնք համաչափորեն համալրվում են լավագույն բանվորներով ու ինժեներա-տեխնիկական աշխատողներով։

Այդ ուղղությամբ նշված կազմակերպությունների կատարած դրական աշխատանքը բացատրվում է նրանով, որ սրանք իրենց շուրջն են համախմբում անկուսակցական լայն ակտիվ և նրա հետ սիստեմատիկ ու պլանավորված աշխատանք տանում։ Կուսակցության շարքերի համալրման գործը նրանք դիտում են ոչ թե որպես մի ինքնուրույն բնագավառ, այլ կուսակցական կազմակերպական աշխատանքի մի մասը։ Այս կազմակերպությունները թափանցում են արտադրության գործերի մեջ, մոտիկից շփվում մարդկանց հետ, ճանաչում լավագույններին, նրանց հանձնարարություններ են տալիս, հսկում դրանց կատարմանը, ակտիվիստներին մասնակից դարձնում կուսակցական դռնբաց ժողովներին, հոգ տանում նրանց գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման մասին։ Օրինակ, ճշգրիտ հաստոցների գործարանի կուսբյուրոյին կից գործում է ՍՄԿԿ Ծրագիրն ու Կանոնադրությունը, ինչպես նաև Վ. Ի. Լենինի կենսագրությունն ուսումնասիրող խմբակ, որոնցում ընդգրկվում են այն բանվոր-ծառայողները, որոնք ցանկություն են հայտնում ընդունվել ՍՄԿԿ շարքերը։ Այդ խմբակում մասնակցում են նաև ՍՄԿԿ անդամության թեկնածուները, որոնք պատրաստվում են ՍՄԿԿ շարքերը որպես անդամ ընդունվելու համար։ Այսպիսի խմբակներ են ստեղծված նաև արհեստական մետաքսաթելի գործարանի, քիմկոմբինատի, երկաթուղու հանգույցի կուսկոմիտեներին կից, որոնք ղեկավարում են կոմիտեի քարտուղարները։

Հասկանալի է, երբ կազմակերպությունը գործում է ակտիվ, սերտորեն կապված է անկուսակցականների հետ, նրա անդամները աշխատում են արտադրության վճռական տեղամասերում և անձնական օրինակ են ցույց տալիս աշխատանքում, հոգատարությամբ վերաբերվում հանրային ունեցվածքին, պաշտպանում լավագույն նախաձեռնությունները, այդպիսի կազմակերպու-

թյունները իրենց շարքերը միշտ էլ համալրում են լավագույն մարդկանցով:

Մեր կուսակցությունն իր շարքերն ընդունվողների համար սահմանել է ընդունելության միասնական կանոններ՝ անկախ ընդունվողների սոցիալական դրությունից: Բայց դա բոլորովին չի նշանակում, թե վերացել է կուսակցության շարքերի աճը կարգավորելու անհրաժեշտությունը և որ կարելի է թուլացնել ՍՄԿԿ շարքերն ընդունելու խիստ անհատական սկզբունքը:

ՀԿԿ Կիրովականի քաղկոմը և սկզբնական կազմակերպությունները խստությամբ են հետևում, որ կուսակցության մեջ մուտք չգործեն մարդիկ, որոնք հետապնդում են կարիերիստական կամ այլ շահադիտական նպատակներ: Նրանք հետևում են, որ կուսակցության մեջ ընդունվեն միայն նրանք, ովքեր նվիրված են կոմունիստական կուսակցության մեծ գործին: Ահա շատերից մեկ օրինակ:

1965 թվին ՍՄԿԿ շարքերն ընդունվեց Հովհաննես Նշանի Ջուլումյանը: Նա 1927—46 թթ. եղել է Հունաստանի կոմկուսի անդամ, աշխատել որպես կուսակցության ընդհատակյա շրջկոմի քարտուղար, հեղափոխական գործունեության համար 11 տարի նստել է Հունաստանի բանտերում ու աքսորավայրերում, 1943—44 թթ. Հունաստանի ազատագրական ճակատում կռվել է գերմանական ֆաշիստների դեմ, եղել է գումարտակի կոմիսար, 1946 թվականին վերադարձել է սովետական հայրենիք և ներգրավվել ակտիվ աշխատանքի՝ ի բարօրություն հայրենի երկրի:

Ընկ. Ջալումյանի կյանքի ուղին կոմկուսին անձնվեր ծառայելու վառ օրինակ է:

Սակայն, պետք է ասել, որ մեզ մոտ էլ կան առանձին կազմակերպություններ, որոնք անբավարար աշխատանք են տանում երիտասարդ կոմունիստների դաստիարակության և կուսշարքերի աճի կարգավորման ուղղությամբ: Որոշ կազմակերպություններ միշտ չէ, որ ճիշտ են լուծում կուսակցության մեջ նոր անդամների ընդունելության հարցերը, հաճախ նվազեցնում են պահանջկոտությունը, հանդես բերելով շտապողականություն: Ավելին, ընկնելով ՍՄԿԿ շարքերի քանակական աճի ետևից, երբեմն ընդունում են մարդկանց, առանց մանրակրկիտ ստուգելու նրանց քաղաքական, գործնական ու բարոյական հատկանիշները: Այսպես, անցյալ տարի մորթու-մուշտակի ֆաբրիկայի սկզբնական կազմակերպությունը ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու էր ընդունել ֆաբրիկայի տնտեսագետ Զարզանդ Թորոսյանին: Ինչպես կուսբյուրոյում, այնպես էլ կազմակերպության ժողովում ուշադրություն չէին դարձրել նրա արժանիքներին: Թորոսյանը, նախկինում, գողության համար 4 տարի ազատազրկվել էր: Բանը միայն այդ չէ. նա չէր մասնակցում ֆաբրիկայի քաղաքական ու հասարակական կյանքին, քաղաքականապես անպատրաստ էր: Իսկ կազմակերպությունը նրան կոնկրետ հանձնարարություններ չէր տվել, չէր ստուգել նրա հատկությունները: Եվ բնական է, որ քաղկոմի բյուրոն չհաստատեց կազմակերպության որոշումը:

Այսպիսի փաստեր կան շինտրեստի արտադրական կոմբինատի, բաղնիք-լվացքատան և վարսավիրների, ավտոբուսա-տաքսամոտորային պարկի կազմակերպություններում: 1965 թվականի և ընթացիկ տարվա անցած 5 ամսում քաղկոմի բյուրոն չի հաստատել 5 հոգու ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունելու մասին սկզբնական կուսկազմակերպությունների որոշումները: Այս փաստերը հնարավոր էր կանխել սկզբնական կազմակերպություններում, որով



մեծապես կբարձրանար այդ կազմակերպությունների հեղինակությունը: Որքանով որ ընդունելության հարցը առաջին հերթին լուծվում է սկզբնական կազմակերպությունում, նրանք պարտավոր են ամենայն լրջությամբ զբաղվել ընդունելության գործով և կանխել անարժան մարդկանց, կարիերիստական միտումներով մեր կուսակցության մեջ ընդունվել ցանկացողների հոսքը:

Այս հարցում մեծ պատասխանատվություն են կրում երաշխավորողները: Այդ ընդգծված է ՍՄԿԿ Կանոնադրության մեջ: Սակայն միշտ չէ, որ կոմունիստները անհրաժեշտ սկզբունքայնություն և խստապահանջություն են ցուցաբերում այս կարևոր հարցում: Կան դեպքեր, երբ առանձին կոմունիստներ երաշխավորել են անարժան մարդկանց: Այսպես, բնակչության սպասարկման կոմբինատի կոմունիստներ Ի. Մովսիսյանը, Մ. Խաչատրյանը և Մ. Երեմյանը երաշխավորել են Ց. Առաքելյանին ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունելու, չմոռանալով նշել, որ նա քաղաքականապես պատրաստ է, ծանոթացել է ՍՄԿԿ Ծրագրին ու Կանոնադրությանը: Սակայն ՀԿԿ քաղկոմի կուսհանձնաժողովը պարզեց, որ նա չի ծանոթացել Ծրագրին ու Կանոնադրությանը, քաղաքականապես անպատրաստ է, հասարակական աշխատանքներին ակտիվ չի մասնակցում:

Անհրաժեշտ սկզբունքայնություն չեն ցուցաբերել «Ավտոմատիկա» գործարանի կազմակերպության անդամներ Հ. Հովնանյանը, Ս. Տանաիլովան և Ս. Խառատյանը, որոնք Ա. Գրիգորյանին երաշխավորել են ՍՄԿԿ շարքերը ընդունվելու, գիտենալով, որ նա 1964 թ. վտարվել է կուսակցությունից՝ կեղծ կինոտոմսեր տպագրելու համար:

Որպես թերություն պետք է նշել, որ առանձին կազմակերպություններ հետևողական աշխատանք չեն տանում ՍՄԿԿ անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների դաստիարակության ուղղությամբ, որի պատճառով առանձին թեկնածուներ ու երիտասարդ կոմունիստներ դուրս են մնում կազմակերպությունների ուշադրությունից, թույլ են տալիս անվայել արարքներ ու վտարվում կուսակցությունից:

ՍՄԿԿ անդամության թեկնածու Սերգեյ Ղարուզյանը սովետական բանակում ծառայելու ժամանակ մեկ ամսով արձակուրդ է վերցնում՝ բարձրագույն ուսումնական հաստատությունում ընդունելության քննություններ հանձնելու համար: Հենց առաջին քննությունից կտրվելով, Ղարուզյանը փոխանակ ներկայանալու զորամաս, կեղծ տեղեկանքներ է ձեռք բերում և վաղաժամկետ ազատվում բանակից: Այնուհետև նա աշխատելով շինվերանորոգման վարչությունում, 7 ամիս անդամավճար չի մուծում և կտրվում է կուսակցական կյանքից: Կեղծիքի միջոցով հետագա ծառայությունից խուսափելու և կուսակցական կյանքից կտրվելու համար Ղարուզյանը վտարվեց կուսակցության շարքերից, իսկ նրան աջակցողները պատասխանատվության ենթարկվեցին:

Կուսակցական կազմակերպությունների թվական աճը, նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ինքնանպատակ չէ: Այն պետք է տեղի ունենա կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հիման վրա: Կուսակցության մեջ ընդունելիս անհրաժեշտ է նկատի ունենալ, որ կոմունիստի կոչմանն անարժան մարդկանց ՍՄԿԿ անդամ ընդունելու նույնիսկ եզակի փաստերը վնաս են հասցնում կուսակցությանը, աղտոտում նրա շարքերը և թուլացնում կուսկազմակերպությունների մարտունակությունը: Ահա թե ինչու

կուսշարքերի աճը, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը պետք է մշտապես գտնվի սկզբնական կուսկազմակերպությունների և քաղկոմի ամենօրյա ուշադրության կենտրոնում:

Հ. ՈՍԿԱՆՅԱՆ
ՀԿԿ Կիրովականի քաղաքային կոմիտեի առաջին քարտուղար

## ՏՆՏԵՍՎԱՐԸ՝ ԴԱՍՏԻԱՐԱԿ

*Նոր հնգամյակի առաջադրանքները հաջող կատարելու համար առաջնակարգ նշանակություն ունի աշխատավորների քաղաքական դաստիարակությունը, աշխատանքային կարգապահության ամրապնդումն ու հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության բարձրացումը: Կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպություններից բացի այս ուղղությամբ խոշոր անելիքներ ունեն նաև ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները: Նրանք մեր օրերում ոչ միայն արտադրության կազմակերպիչ են, մասնագետ, այլև ավագ ընկեր, կոլեկտիվի դաստիարակ: Ահա թե ինչու ամեն մի ձեռնարկության գործերի համար, ամենից առաջ, պատասխանատվություն է կրում տնտեսական ղեկավարը: Նրա հմուտ, մտածված գործունեությունից շատ բան է կախված:*

*Դիրեկտորի՝ միանձնյա ղեկավարի աշխատանքը զուգակցվում է արտադրության անմիջական ղեկավարման մեջ լայն մասսաների ակտիվ ներգրավմամբ: Նա իր ամենօրյա գործունեության ընթացքում պարտավոր է հենվել առաջավորների, ինժեներների և, որ կարևորն է, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և հասարակական այլ կազմակերպությունների վրա: Իսկ կուսակցական կազմակերպություններն, իրենց հերթին, պետք է զբաղվեն ձեռնարկության ղեկավարի գաղափարական դաստիարակությամբ, հեղինակության ամրապնդմամբ: Փորձը ցույց է տվել, որ այնտեղ, ուր այս իմաստով վիճակը բարվոք է, գործերը լավ են ընթանում:*

*Լենինական քաղաքում ճանաչված, հեղինակավոր ու փորձված տնտեսական ղեկավարներ շատ կան, դրանցից են՝ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի դիրեկտոր Գ. Դարբինյանը, դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանի դիրեկտոր Կ. Աբրահամյանը, հղկող հաստոցների գործարանի դիրեկտոր Է. Թաթունցը, սարքաշինական գործարանի դիրեկտոր Է. Կիրակոսյանը, մսի-պահածոների կոմբինատի դիրեկտոր Մ. Նալբանդյանը և շատ ուրիշներ: Այս ընկերները հարցերը լուծելիս ցուցաբերում են գործիմացություն ու համառություն, վստահորեն հենվում են կոլեկտիվի վրա, խորհրդակցում հասարակական կազմակերպությունների ղեկավարների և պարտիական կազմակերպության քարտուղարի հետ: Այս ամենի շնորհիվ նրանց ղեկավարած ձեռնարկությունների կոլեկտիվները միշտ էլ ընթանում են սոցիալիստական մրցության առջևից, պայքարում են տեխնիկական առաջադիմության, արտադրանքի որակի բարելավման համար, մի շարք հայրենասիրական նախաձեռնությունների հեղինակներ են: Վերոհիշյալ տնտեսական ղեկավարները միաժամանակ կոլեկտիվի քաղաքական դաստիարակներ են:*



*Բայց, ցավոք, բոլոր ձեռնարկությունների ղեկավարները չեն, որ գործում են նման մեթոդով: Դեռևս կան դիրեկտորներ, որոնք չունենալով քաղաքական կոփվածք և արտադրությունը ղեկավարելու անհրաժեշտ կարողություն, ձախողում են գործը: Ավելին, նրանք վերևից են նայում իրենց ենթականերին, անտարբերություն ցուցաբերում նրանց պահանջների ու կարիքների հանդեպ: Նման վատ ղեկավարների վարքագիծը կուսակցությունը միշտ դատապարտել է:*

*Կուսակցության Լենինականի քաղկոմի բյուրոն բացահայտելով Արդարք կոնստրուկտորական բյուրոյի և գարեջրի գործարանի նախկին դիրեկտորներ Հ. Սերոբյանի և Ա. Պետրոսյանի գործունեության կոպիտ սխալներն ու թերությունները, նրանց պաշտոնազրկեց: Ինչպես Հ. Սերոբյանը, այնպես էլ Ա. Պետրոսյանը աշխատում էին կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպություններից կտրված, չէին հենվում ակտիվի վրա, կոպիտ էին վարվում բանվորների, ինժեներների ու մյուս աշխատողների հետ: Դրա հետևանքով նրանք չէին գտնվում իրենց բարձրության վրա և արտադրական հարցերն անհրաժեշտ լուծում չէին ստանում:*

*Կուսակցության քաղկոմը հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսական ղեկավարների քաղաքական ակտիվությունը բարձրացնելու, այդ գործում եղած թերությունները վերացնելու նպատակով ձեռնարկեց մի շարք միջոցներ: 1963 թվականից քաղկոմին առընթեր ստեղծվել է կոմունիստական շինարարության տեսության և պրակտիկայի համալսարան: Համալսարանն ունի մշտական գործող երկու ֆակուլտետ՝ հասարակագիտական և տնտեսագիտական: Ռեկտորն է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ, պրոֆեսոր Գ. Ղարիբջանյանը:*

*Քաղաքի ղեկավար կադրերի գաղափարական դաստիարակության հարցերին էր նվիրված կուսակցության քաղկոմի անցյալ տարի տեղի ունեցած պլենումը, որի օրակարգն էր՝ «Աշխատել և ապրել լենինաբար»: Պլենումը նշելով քաղաքի կուսակցական կազմակերպությունների ձեռք բերած լուրջ հաջողությունները, միաժամանակ բացահայտեց ղեկավար կադրերի քաղաքական դաստիարակության ասպարեզում եղած թերությունները և դրանք վերացնելու նպատակով միջոցներ ձեռնարկեց:*

*Չնայած դրան, դեռևս կան տնտեսական այնպիսի ղեկավարներ, որոնք ոչ միայն չեն ապրում և աշխատում լենինաբար, այլև շատ ցածր են կանգնած սոցիալիստական ձեռնարկության ղեկավարի քաղաքական մակարդակից: Նրանք գործիմացությունը և պահանջկոտությունը հաճախ փոխարինում են հապճեպ ընդունած որոշումներով և վարչարարական մեթոդներով: Երբեմն էլ չբավարարվելով դրանով, նրանք գործը հասցնում են անձնական վիրավորանքի: Ենթակաների հետ այդպես են վարվում խճուղային ճանապարհների գլխավոր վարչության պետ Ս. Անդրեասյանը և կոնստրուկտորական ջոկատի պետ Մ. Գալստյանը: Կուսակցական կազմակերպությունները, իհարկե, ուղղում են նման կոմունիստներին: Բայց հարցը միայն ուղղելը չէ: Կարևորն այն է, որ այդ վնասակար երևույթներն իսպառ վերացվեն և շարքային աշխատողն իր ղեկավարի մեջ տեսնի միայն լավը, օրինակելին:*

*Սխալ է այն պատկերացումը, թե իբր գաղափարական աշխատանքը միայն կուսակցական գործունեության այդ բնագավառի մասնագետների գործն է: Գաղափարական աշխատանքը բոլոր կոմունիստների և ղեկավար կադրերի անմիջական պարտականությունն է, նրանց հարազատ գործը: Պետք է միշտ*

հիշել, որ կուսակցության անդամների, ղեկավարների անձնական օրինակը մեծ նշանակություն ունի մասսաների վրա գաղափարական ազդեցության, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի ներգործության համար։ Խոսքի և գործի միասնություն. Լենինյան այս կարևորագույն պահանջը պետք է դառնա յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր ղեկավար աշխատողի կյանքի ու գործունեության օրենքը։ Հենց այստեղ է, որ յուրաքանչյուր տնտեսական ղեկավար պարտավոր է դրսևորել իր քաղաքական հատկանիշները, բարոյական դեմքը։

Հայտնի է, որ պետական պլանի կատարումը սոցիալիստական ձեռնարկության համար օրենք է։ Հետևաբար պետության, ինչպես նաև ձեռնարկության ղեկավարի համար կարևոր է, թե ինչպիսի մեթոդներով կամ ինչ ձևերով է կատարվում այն։ Պլանի հաջող կատարումը կախված է բանվորների տրամադրությունից, նրանց կենցաղային պահանջների բավարարումից, ձեռնարկության բարեկարգման աստիճանից և բանվորական ճաշարանի ու նույնիսկ մսուր-մանկապարտեզների լավ վիճակից։ Որտեղ այս հարցերը լավ են լուծվում, այնտեղ վատորակ արտադրանքի մասին խոսք լինել չի կարող։

Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատն արդեն չորրորդ տարին է, ինչ կատարում է արտադրական պլանները և առաջավոր ձեռնարկությունների շարքում է։ Կոմբինատը մի քանի անգամ արժանացավ Հանրապետության Մինիստրների սովետի, Ժողտնտխորհի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշին, իսկ այս տարի, երկրորդ անգամ՝ ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության և թեթև ու տեքստիլ արդյունաբերության արհմիության Կենտկոմի առաջին մրցանակին ու փոխանցիկ դրոշին։

Երկու տարի առաջ Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկայում փոխվեցին ղեկավար կադրերը, նշանակվեց նոր դիրեկտոր։ Նոր ուժերն իրենց հետ բերեցին նոր թափ ու եռանդ։ Բարեկարգվեցին արտադրամասերը, բարելավվեցին բանվորների կենցաղային պայմանները, բարձրացավ նրանց աշխատանքային խանդավառությունը։ Անշուշտ, այս բոլորը տվեց իր արդյունքը. ֆաբրիկան կարճ ժամանակում անցավ քաղաքի առաջավոր ձեռնարկությունների շարքը, սկսեց սիստեմատիկաբար կատարել և գերակատարել պետական առաջադրանքը։

Սակայն, դեռևս որոշ ձեռնարկությունների դիրեկտորներ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում բանվոր-ծառայողներին հուզող հարցերին։ Հոգ չի տարվում գործարանում կենցաղային հարմարանքներ ստեղծելու, մանկապարտեզների, մանկամսուրների և ճաշարանների աշխատանքը բարելավելու, ձեռնարկության բակի, բանավանի բարեկարգման համար։ Այսպիսի ղեկավարներից էին քաղաքի խոշոր գործարաններից մեկի նախկին դիրեկտոր Ա. Կոստանյանը և գլխավոր ինժեներ Մ. Նահապետյանը, որոնք չէին մասնակցել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքին, հանդես չէին եկել դասախոսություններով ու զեկուցումներով, անբավարար էին զբաղվել աշխատողների դիմումներով ու բողոքներով։

Նման ղեկավարներից են նաև քաղսովետի գործկոմի կենցաղսպասարկման կոմբինատի նախկին դիրեկտոր Հ. Տիրատուրյանը, մետաղյա իրերի կոմբինատի նախկին դիրեկտոր Հ. Պետրոսյանը, № 2980 «Գ» ավտոշարասյան պետ Մ. Մկրտչյանը, շինարարության մինիստրության № 6 տրեստի կառավարիչ Վ. Հայրապետյանը և ապակու գործարանի դիրեկտոր Վ. Գևորգյանը։



Նրանց վատ աշխատանքով էլ պետք է բացատրել այս ձեռնարկությունների ետ մնալը։

Այս փաստերի հետ չի կարելի հաշտվել։ Չէ որ պետությունը դիրեկտորներին հանձնարարել է ոչ միայն ղեկավարել արտադրությունը, այլև դառնալ կոլեկտիվի գաղափարական ղեկավարը և հոգ տանել մարդկանց մասին։

Ձեռնարկության ամեն մի ղեկավար պետք է լինի բազմակողմանի զարգացած, շրջահայաց ու գործունյա, ունենա բարձր գաղափարայնություն, քաղաքական հասունություն, արտադրությունն արդյունավետ վարելու հմտություն։

Անհրաժեշտ է ղեկավար աշխատանքի առաջ քաշել այն ընկերներին, որոնք տեղերում անցել են պրակտիկ գործունեության մեծ դպրոց, ո՛չ միայն լավ գիտեն արտադրությունը, այլև ունեն մարդկանց հետ աշխատելու կարողություն։

Պետք է միաժամանակ բարելավել կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավար կադրերի պատրաստումն ու վերապատրաստումը։ Ինչպես նշված է ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում, անհրաժեշտ է թե՛ կենտրոնում և թե՛ տեղերում ստեղծել ղեկավար աշխատողների որակավորումը և տեսական գաղափարական պատրաստությունը բարձրացնելու մշտապես գործող դասընթացների լայն ցանց։

Կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը ձեռնարկության դիրեկտորներին վստահել են մեր ընդհանուր գործի ամենակարևոր տեղամասը՝ արտադրությունը, ուր և ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ձևավորվում մեր դարաշրջանի նոր մարդը՝ իր հարուստ ներքնաշխարհով, վսեմ հատկություններով։ Ձեռնարկության յուրաքանչյուր ղեկավարի սրբազան պարտքն է՝ իր ողջ էներգիան, գիտելիքները և փորձը նվիրաբերել այդ վեհ նպատակին։

Ռ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ
ՀԿԿ Լենինականի քաղկոմի քարտուղար

## ՄԱՍՍԱՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴՊՐՈՑԸ

Հարուստ և բազմաբովանդակ է մեր երկրի աշխատավորների կյանքը, նրանց առօրյան։ Այսօրվա բանվորն ու կոլտնտեսականը, շինարարն ու այլ մասնագետը ձգտում են հետաշխատանքյա ժամերը օգտագործել իրենց գիտելիքների բազմակողմանի հարստացման համար։ Սովետական մարդուն այլևս չեն բավարարում մասնագիտական նեղ իմացությունները, յոթժամյա աշխատանքային օրվա սահմաններում կիրառած գիտելիքները։ Մեր երկրում արդեն բանվորին, թե՛ շինարարին, վարպետին, թե՛ վաճառասեղանի աշխատողին օտար չեն արվեստի նվաճումները. Նրանք կարող են վիճել գիտության, երաժշտության, գեղանկարչության, գրականության շատ հարցերի շուրջ, իրենց նախասիրություններն ունենալ արվեստի այս կամ այն ճյուղում։

Աշխատավորների օրավուր աճող հոգևոր պահանջներն անարձագանք չեն մնում։ Մասսաների առջև իրենց դռները լայնորեն են բացել այնպիսի հասարակական հաստատություններ, որպիսիք ժողովրդական համալսարաններն են։ Կուլտուրայի այդ օջախները նշանակալից դեր են խաղում աշխատանքի մարդ-

կանց քաղաքական, կուլտուրական և արտադրատեխնիկական մակարդակի բարձրացման գործում:

Տարբեր մասնագիտություն ունեցող մարդիկ են ժողովրդական համալսարանների ունկնդիրները, որոնք տիրապետում են ժամանակակից գիտության և տեխնիկայի հիմունքներին, հաղորդակից դառնում հայրենական և համաշխարհային կուլտուրայի նվաճումներին և դրանով իսկ ընդլայնում իրենց ընդհանուր կուլտուրական և քաղաքական մտահորիզոնը:

Երևանում, ինչպես նաև հանրապետության շատ շրջաններում գործող ժողովրդական համալսարանների աշխատանքի կարևոր հատկանիշներից մեկն էլ այն է, որ այստեղ ուսուցումը զուգակցվում է դաստիարակչական աշխատանքին, կիրառվում պարապմունքների անցկացման արդյունավետ մեթոդներ ու ձևեր: Ունկնդիրներին մատուցվում են տեսական գիտելիքներ, որոնք կտրված չեն կյանքից և սերտորեն շաղկապված են կոմունիստական շինարարության պրակտիկային:

Հնգամյա պատմություն ունեն Լենինական քաղաքի ժողովրդական համալսարանները. Նրանց կուտակած փորձն ու աշխատանքի արդյունավետ ոճը ուսանելի են և արժանի ընդօրինակման: ՀԿԿ քաղաքային կոմիտեի ղեկավարությամբ և «Գիտելիք» ընկերության քաղաքային կազմակերպության ակտիվ մասնակցությամբ Լենինականում հիմնադրվել և գործում են կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի, գիտաաթեիստական, իրավաբանական, ինչպես նաև մանկավարժական, ծնողական, քիմիական գիտելիքների, ժողովրդական վերահսկողության, բանթղթակիցների ժողովրդական համալսարաններ և հասարակական կարծիքի ինստիտուտ: Այդ համալսարաններում այժմ սովորում են ավելի քան 1650 աշխատավոր: Պարապմունքներն այստեղ անցնում են կանոնավոր և տեսական բարձր մակարդակով:

Լենինականի ժողովրդական համալսարաններում ճիշտ են ընտրված դասախոսական կադրերը. դրանք կոմպլեկտավորված են ըստ ունկնդիրների մասնագիտության և աշխատանքի բնույթի: Ունկնդիրների համար դասախոսություններ են կարդացել ակադեմիկոսներ Վ. Համբարձումյանը, Կ. Ջավրիևը, ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ Մ. Կիմը և ուրիշներ: Ժողովրդական համալսարանները գործում են ՀԿԿ և ՀԼԿԵՄ Լենինականի քաղկոմներին, «Գիտելիք» ընկերության քաղաքային կազմակերպությանը, ժողովրդական վերահսկողության կոմիտեին, «Բանվոր» թերթի խմբագրությանն առընթեր:

Համալսարաններն ավարտողներից շատերը առաջադրվում են պրոպագանդիստներ: Հասարակագիտության և տնտեսագիտական գիտելիքների ֆակուլտետների ունկնդիրները զինվում են կոմունիստական շինարարության տեսությամբ ու պրակտիկայով և ձեռք բերած հարուստ գիտելիքներն օգտագործում արտադրության ղեկավարման որոշակի բնագավառներում: Իսկ ովքե՞ր են նրանք: Հիմնականում հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական-տնտեսական ղեկավարներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, արտադրության առաջավորներ: Կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի համալսարանը ուսումնական տարին ավարտվելուց հետո վերակառուցվեց տնտեսական գիտելիքների համալսարանի, որտեղ նորից ընդգրկվեցին հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական ու տնտեսական ղեկավար աշխատողներ:

Բայց միայն համալսարանի պատերի ներսում չէ, որ ունկնդիրները տիրա-



պետում են գիտելիքների: Նրանք մասնակցում են նաև ՀԿԿ քաղաքային կոմիտեի կազմակերպած զանազան միջոցառումներին:

Միութենական հանրապետությունների քրեական օրենսդրության հիմունքների, ՍՍՀՄ քաղաքացիների անձի, իրավունքի, ունեցվածքի պաշտպանության և սոցիալիստական սեփականության հափշտակողների դեմ մղվող պայքարի համար շատերն են (թաղային կոմիտեների, ընկերական դատարանների և դրուժինաների նախագահներ ու անդամներ, ժողովրդական ատենակալներ) կամենում իրավաբանական անհրաժեշտ գիտելիքներ ստանալ: Եվ ահա, իրավաբանական գիտելիքների համալսարանում (որի ռեկտորն է միլիցիայի բաժանմունքի պետ Ս. Պողոսյանը) կազմակերպեցին արդյունավետ և ուսանելի պարապմունքներ: Հետաքրքրությունը բուռն էր, համալսարանի ծրագիրն ու թեմատիկան՝ խիստ առօրեական: Այդ էր պատճառը, որ ունկնդիրների ցանկությամբ համալսարանն իր աշխատանքները շարունակում է նաև այս տարի:

Հատկանշական է համալսարանականների մի այլ նախաձեռնություն: Նորավան, Այգաբաց և Ստրոմմաշինա թաղամասերի բնակչության ընդհանուր ժողովներում քննարկվեցին հակահասարակական երևույթների դեմ տարվող պայքարի հարցերը: Քաղաքի բոլոր թաղային կոմիտեներին և ողջ բնակչությանն ուղղած կոչում ժողովի մասնակիցները պարտավորվեցին պայքարել Լենինի անունը կրող քաղաքը կոմունիստական կենցաղավարության մեծ պատվին արժանացնելու համար: Կոչը լայն արձագանք գտավ բոլոր քաղաքացիների շրջանում, իսկ արդյունքը այն եղավ, որ զգալիորեն նվազեցին հակահասարակական երևույթները:

Եռամյա այս համալսարանը օրերս տվեց իր անդրանիկ շրջանավարտները: Հանդիսավոր պայմաններում ՀԿԿ քաղաքային կոմիտեի ներկայացուցիչն ունկնդիրներին վկայականներ հանձնեց իրավաբանական համալսարանի ավարտման մասին: Լավագույն ունկնդիրները, ակտիվ դասախոսներ և համալսարանի ռեկտորը արժանացան խրախուսանքի:

Երեք տարվա աշխատանքային փորձ ունի հասարակական կարծիքի ինստիտուտը, որի խորհրդում ընդգրկված են մանկավարժներ, արվեստի և գրականության գործիչներ, հին բոլշևիկներ, կոմերիտական աշխատողներ:

Հասարակական կարծիքի ինստիտուտում բովանդակալից, աշխույժ զրուցավեճով են անցնում պարապմունքները: Երիտասարդներին օգնում են մասնագետ դասախոսները, քաղաքի կուսակցական ու սովետական ղեկավարները, որոնք պատասխանում են քննարկվող հարցերին, ամփոփում դրանք:

Մեր կենցաղում դեռևս պահպանվել են անցյալի մի շարք վնասակար սովորույթներ: Դրանց հաղթահարմանն ու վերացմանը նպաստում են ինստիտուտի մի շարք պարապմունքները:

Մասսաների համակրանքն է վայելում նաև ժողովրդական վերահսկողության համալսարանը, որի տնտեսագիտական-արտադրական և ընդհանուր հասարակագիտության ֆակուլտետներում անցած ուսումնական տարում անց է կացվել 22 պարապմունք, որոնց ընթացքում առանձնահատուկ ուշադրություն է հատկացված տեսության ու պրակտիկայի զուգակցմանը: Ունկնդիրների համար դասախոսություններ են կարդացվել հետևյալ թեմաներով՝ «ՍՄԿԿ XXII համագումարը և կոմունիզմի կառուցումը ՍՍՀՄ-ում», «Վ. Ի. Լենինը կուսակցական պետական և համաժողովրդական վերահսկողության մասին», «Սովետական պետական ապարատի աշխատանքի լենինյան սկզբունքները», «Հա-

սարակական կազմակերպությունների դերը հանցագործությունների արմատախիլ անելու համար մղվող պայքարում» և այլն:

Թեմաների լավ յուրացման նպատակով համալսարանի դասախոսություններին զուգընթաց կազմակերպվել են «Կոմերիտական լուսարձակ» պատի թերթերի ստուգատես, խոտանի ցուցահանդես, էքսկուրսիաներ դեպի քաղաքի արտադրական ձեռնարկությունները և մի շարք այլ միջոցառումներ:

Քաղաքում ամեն օր ծնվում է նորը, շարք են մտնում նոր ձեռնարկություններ, սխրանքների են ձգտում արտադրության մարդիկ, հաջողությունների հասնում արվեստի մշակները: Իսկ քաղաքի բովանդակալից կյանքը լուսաբանելու գործում քիչ դեր չունի կատարելու «Բանվոր» թերթը, որին առընթեր գործում է բանթղթակիցների երկամյա համալսարանը: Ունկնդիրների համար դասախոսություններ են կարդացել Երևանի և Լենինականի ճանաչված ժուռնալիստներ, «Բանվոր» թերթի աշխատողներ, տնտեսագետներ, ինժեներներ, կուսակցական և սովետական աշխատողներ:

Լենինականի ժողովրդական համալսարանների դրական աշխատանքին նպաստում է ՀԿԿ քաղաքային կոմիտեի ամենօրյա օգնությունը: Քաղկոմը բազմիցս քննարկել է համալսարանների գործունեության հետ կապված բազմաթիվ կարևոր հարցեր, ռեկտորներ է նշանակել բանիմաց ու եռանդուն մարդկանց, անխոնջ գործիչների:

Քաղկոմի բյուրոն վերջերս հաստատել է ժողովրդական համալսարանների աշխատանքը ղեկավարող խորհուրդ, որի կազմում ընդգրկված են ժողովրդական համալսարանների ռեկտորներ, կուսակցական-սովետական ղեկավար աշխատողներ և դասախոսներ:

Լենինականի ժողովրդական համալսարանների պարապմունքները հիմնականում ընթանում են դասախոսությունների ձևով: Մինչդեռ ավելի արդյունավետ կլինի, եթե լայն տեղ հատկացվեն գիտա-պրակտիկ կոնֆերանսներին, բանավեճերին, առաջավոր փորձի ուսումնասիրմանը: Հարկ է նշել նաև, որ համալսարանների պարապմունքների թեմատիկայում քիչ տեղ է հատկացված սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության հարցերին: Ժողովրդական համալսարանների աշխատանքի գիտական և քաղաքական մակարդակի բարձրացմանն զգալիորեն կօգնի նաև հանրապետության գիտահետազոտական հիմնարկների, բուհերի, ստեղծագործական միությունների, ինչպես նաև Միության մյուս համալսարանների հետ փոխադարձ կապի ստեղծումը:

Մարդը, լուսավոր ապագան կերտող սովետական քաղաքացին, իր պատրաստակամությունն է հայտնում հարուստ գիտելիքներով զինվելու: Դրանք ձեռք են բերվում տքնությամբ, աշխատանքով, որոնք նրա բնավորության հատկանշական գծերն են: Մարդը որ բնագավառում էլ աշխատի, չի կարող ապրել առանց շրջապատի, առանց հայրենիքի նվաճումներին իրազեկ լինելու, առանց կուլտուրական մակարդակի բարձրացման: Աշխատավորների այդ հարաճուն պահանջները կոչված են բավարարելու բոլոր բարձրագույն ուսումնական հաստատությունները, գիտական կազմակերպությունները և կուլտուրայի օջախները, դրանց թվում նաև ժողովրդական համալսարանները՝ կոմունիստական դաստիարակության դպրոցները:

Վ. ՂԱԶԱՆՉՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի դասախոս

---

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Ք. ՌԱՀԻՄՈՎ
«Ազերբայջան կոմունիստի» ամսագրի գլխավոր խմբագիր

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Մեր երկիրը հաղթական քայլերով է ընթանում դեպի կոմունիզմ: Սովետական մարդու ֆիզիկական ու մտավոր աշխատանքի յուրաքանչյուր օրը նորանոր հրաշքներ է ծնում: Օր-օրի ամրապնդվում, հզորանում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան:

ՍՄԿԿ XXIII համագումարն ամփոփեց սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքները, նշեց արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, գիտության և տեխնիկայի զարգացման ասպարեզներում ձեռք բերած նվաճումները, քննարկեց ու հաստատեց երկրի ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվները:

Դիրեկտիվներում նշված է, որ կուսակցությունը նոր հնգամյակի գլխավոր տնտեսական խնդիրն է համարում գիտության ու տեխնիկայի նվաճումների ըստ ամենայնի օգտագործման, ամբողջ հանրային արտադրության ինդուստրիալ զարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ապահովել արդյունաբերության հետագա նշանակալից աճ, գյուղատնտեսության զարգացման արագ և կայուն տեմպեր և դրա շնորհիվ էապես բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը, ավելի լրիվ բավարարել բոլոր սովետական մարդկանց նյութական և կուլտուրական պահանջմունքները:

Մեր երկրի միասնական ընտանիքի եղբայրական մյուս հանրապետությունների հետ միասին Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը մեծ ավանդ ունի յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարման, գիտության և տեխնիկայի զարգացման գործում:

Յոթնամյակում ապահովվել է հանրապետության էկոնոմիկայի ավելի կոմպլեքս զարգացումը: Արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 1,63 անգամ, նյութական արտադրության ճյուղերինը՝ 45 և ազգային եկամուտը՝ 43 տոկոսով, կապիտալ ներդրումների ծավալը նախապատերազմյան բոլոր տարիների ցուցանիշները գերազանցել է մոտ 4 անգամ, իսկ նախորդ յոթնամյակի ծավալը՝ մոտ 1,6 անգամ: Կառուցվել և շահագործման են հանձնվել արդյունաբերական 61 նոր ձեռնարկություններ:

Հանրապետության ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերը ավելացել են մոտավորապես 1,65 անգամ, այդ թվում արդյունաբերությանը՝ 1,6, գյուղատնտեսությանը՝ 1,8 անգամ:

Յոթնամյակի տարիներին հանրապետության էկոնոմիկայի բնագավառում քանակական և որակական լուրջ փոփոխություններ են տեղի ունեցել:

Արդյունաբերական արտադրանքի ընդհանուր քանակը ավելացել է 63 տոկոսով, այդ թվում արտադրական միջոցների արտադրությունը («Ա» խումբ)՝ 74, լայն սպառման ապրանքների արտադրությունը («Բ» խումբ)՝ 41 տոկոսով: Աննախընթաց զարգացում են ապրել հանրապետության քիմիական, մեքենաշինության, սև և գունավոր մետաղների արդյունաբերությունը: Քիմիական արդյունաբերության ընդհանուր արտադրանքը ավելացել է 3,6, իսկ սինթետիկ կաուչուկինը՝ 2,9 անգամ: Մոտ երկու անգամ ավելացել է սև և գունավոր մետաղների արտադրությունը, իսկ մեքենաշինությանն ու մետաղամշակությանը՝ 2,4 անգամ: Հանրապետության վառելանյութի բալանսում գազի և նավթի տեսակարար կշիռը հասել է 93,4 տոկոսի: 1959—1964 թվականներին նավթի արտահանումն ավելացել է 5 միլիոն տոննայով, իսկ գազինը՝ 1 միլիարդ 733 միլիոն խորանարդ մետրով:

Հանրապետության էկոնոմիկայի կարևորագույն ճյուղերից մեկն էլ գյուղատնտեսությունն է: Չնայած այս բնագավառում սուբյեկտիվիզմի հասցրած վնասներին, 1965 թվականին գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 19 տոկոսով:

Յոթնամյակի տարիներն առողջապահության, լուսավորության, մշակույթի զարգացման, բնակչության նյութական բարեկեցության առավել բարձրացման տարիներ եղան: Այդ ժամանակամիջոցում հանրապետության բնակչությունը ապահովվեց 7,3 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածությամբ: Կառուցվեցին նոր դպրոցներ՝ 125,4 հազար աշակերտների և մսուր-մանկապարտեզներ՝ 19,2 հազար նախադպրոցական երեխաների համար: Շահագործման են հանձնվել 3.800 տեղանոց նոր հիվանդանոցներ: Յոթնամյակի առաջին տարում հանրապետությունն ուներ 4,2 հազար դպրոց, իսկ այժմ դրանց թիվը 5,5 հազար է: Դպրոցներում սովորող աշակերտների թիվը 660 հազարից հասել է 1.141 հազարի, բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորող ուսանողների թիվը ավելացել է երկու անգամ: Աշխատավորների բարեկեցության բարձրացման շնորհիվ վերջին յոթ տարիներին ապրանքաշրջանառությունը աճել է 1,6 անգամ:

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964) պլենումի որոշումները մեր հանրապետության տնտեսական զարգացման համար մեծ նշանակություն ունեցան: Այդ են վկայում 1965 թվականին ձեռք բերված նվաճումները: Յոթնամյակի վերջին տարում հանրապետությունը արդյունաբերական արտադրանքի արտադրության տարեկան պլանը կատարելով 102 տոկոսով, պլանից ավել տվեց մեծ քանակությամբ արտադրանք: Նախորդ տարվա համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալն ավելացել է 6 տոկոսով:

Աշխատանքի արտադրողականությունը 1965 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 3,7 տոկոսով և արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ տնտեսվել է մոտ 8 միլիոն ռուբլի: Հիմնական շինարարության ասպարեզում կապիտալ ներդրումներն ավելացել են 8 տոկոսով: Մեծ հաջողությունների են հասել գյուղի աշխատավորները, բարձրացել է նրանց բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը:

Հասարակական օգտագործման ֆոնդից հանրապետության բնակչությանը տրվել է 573 միլիոն ռուբլի կենսաթոշակ, նպաստ, նյութական օգնություն, ուղեգրեր՝ սանատորիաներում ձրի բուժվելու և հանգստյան տներում հանգստանալու համար: Բարձրացել է նաև



աշխատավորների դրամական եկամուտը:

Ընդլայնվել են հանրապետության միջազգային կապերը: Ներկայումս Ադրբեջանը 250 տեսակի տարբեր սարքավորումներ է ուղարկում աշխարհի 50-ից ավելի երկրներ: Արտասահմանյան ուղարկվող ապրանքների ծավալը 1965 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, ավելացել է 2,2 անգամ:

Յոթնամյա պլանը պատվով կատարելու շնորհիվ ստեղծված տնտեսական ամուր բազան հիմք ընդունելով, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը նոր հնգամյակում տնտեսական և կուլտուրական շինարարության, բնակչության նյութական բարեկեցության առավել բարձրացման ուղղությամբ վիթխարի միջոցներ են ձեռնարկել: Հնգամյակի խնդիրները որոշելիս կուսակցությունը ղեկավարվել է տնտեսական և հասարակական պրոցեսների գիտական ղեկավարման մասին լենինյան ուսմունքով:

Երկրի տնտեսական կյանքի գիտական ղեկավարումը կոմունիստական կուսակցության գործունեության հիմնական և բնորոշ գիծն է: Վ. Ի. Լենինը գրել է. «Բուրժուական հասարակարգում գործով զբաղվում էին տնտեսատերերը և ոչ թե պետական օրգանները, իսկ մեզանում տնտեսական գործը մեր ընդհանուր գործն է: Մեզ համար ամենահետաքրքրական քաղաքականությունն է այդ» (Երկեր, հ. 32, էջ 554):

Ներկա հնգամյա պլանում դրված է ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական արագ վերազինման, նրա կառուցվածքի բարելավման, հնացած արտադրանքը նոր, ավելի կատարյալ արտադրանքով փոխարինելու խնդիրը: Նախատեսված է նաև հանրային արտադրության բոլոր ճյուղերի արագ զարգացում: Հնգամյակում մեծ ուշադրություն կնվիրվի գիտության և առաջավոր փորձի նվաճումների արմատավորմանը արտադրության մեջ: Ընկ. Ա. Ն. Կոսիգինը ՍՄԿԿ XXIII համագումարին տված իր զեկուցման մեջ ցույց տվեց, որ գիտատեխնիկական նվաճումներն արտադրության մեջ արագ արմատավորելը հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու վճռական գործոնն է: Առանց դրա հնարավոր չէ հաջողությամբ լուծել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը:

Դիրեկտիվներում նշված խնդիրները կյանքում իրագործելու շնորհիվ կավելանա բանվորների և կոլտնտեսականների եկամուտը, կբարձրանա ժողովրդի նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը, մեծ ծավալ կստանա լայն սպառման ապրանքների արտադրությունը:

Նոր հնգամյա պլանի կարևոր խնդիրներից մեկն էլ հասարակական արտադրության ինդուստրիալ զարգացումն է: Իսկ տնտեսության ինդուստրիալ զարգացումը նշանակում է՝ մեքենայացում, նոր տեխնոլոգիա, գիտության նվաճումների ու տեխնիկայի նորությունների ավելի լայն կիրառում ժողովրդական տնտեսության, արտադրության բոլոր ճյուղերում, աշխատավարձի բարձրացում և, վերջապես, հաստատում է մարդու իշխանությունը և հաղթանակը բնության ուժերի նկատմամբ:

Հնգամյակում արտադրողական ուժերի հարանուն զարգացման շնորհիվ կբարձրանա սովետական ժողովրդի կենսամակարդակը, կապահովվեն նրա կուլտուրական պահանջները:

Հնգամյակի ընթացքում արդյունաբերության արտադրանքի ծավալը, անցած հինգ տարիների 41 տոկոսի փոխարեն, կավելանա մոտ 1,6 անգամ, տարեկան աճի միջին տեմպը 1961—1965 թվականների 7,2 տոկոսից կը-

հասնի 9,9-ի: Կավելանա նավթի, գազի և քիմիական արդյունաբերության արտադրությունը, աննախընթաց զարգացում կապրի նաև մեքենաշինությունը, թեթև և սննդի արդյունաբերությունը: Քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը կավելանա 2,3, մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 1,8, իսկ գունավոր մետալուրգիայինը՝ 2,5 անգամ: Արտադրության արտադրանքի ընդհանուր ծավալում վերը նշված ճյուղերի տեսակարար կշիռը 1965 թվականին 27,4 տոկոսից 1970 թվականին կհասնի 39 տոկոսի:

Հնգամյակում մեծապես կընդլայնվի թեթև և սննդի արդյունաբերությունը: Արդյունաբերության այս ճյուղերի եկամուտը, անցած հինգ տարիների 24 տոկոսի փոխարեն, կավելանա 54 տոկոսով, հիմնական արտադրական ֆոնդերի (յուրաքանչյուր ռուբլու հաշվով) արտադրանքի թողարկումը՝ 10 տոկոսով:

Ադրբեջանի նավթարդյունաբերության աշխատողները հպարտանում են, որ իրենց արտադրած նավթը և նավթամթերքները օգնում են մեր երկրում նոր հնգամյակի հոյակապ խնդիրների լուծմանը: Մինչհեղափոխական Բաքվում շատ քիչ նավթ էր հանվում, իսկ այժմ մի քանի անգամ ավելացել է նավթի և գազի արդյունահանումը: Հերոսների առասպելական աշխատանքի շնորհիվ Կասպից ծովի ընդերքից դուրս է հանվում սև ոսկին և տրամադրվում ժողովրդին:

Նոր հնգամյակում նավթի և գազի արդյունաբերության զարգացումը հանրապետության ամենահիմնական խնդիրներից է: Դիրեկտիվներում նշված է, որ 1970 թվականին Ադրբեջանում նավթի հանույթը պետք է հասնի 23,5 միլիոն տոննայի, իսկ գազինը՝ 8 միլիարդ խորանարդ մետրի: Հանրապետության նավթի ու գազի արդյունաբերության հիմնական աղբյուրը ծովի նավթային տարածություններն են: Նախատեսվում է արդյունաբերական մշակման մեջ մտցնել ծովային նավթաբեր նոր տարածությունները, Ապշերոնի և Բաքվի արշիպելագներում, մերձկասպյան և Կոբիստանի շրջաններում, Քռամերձ հարթավայրում, ինչպես նաև նոր հանքավայրեր՝ արդեն մշակվող հանքավայրերում: Նավթահորերի հորատանցման աշխատանքի ծավալը անցած յոթնամյակում եղած 1,6 միլիոն մետրի փոխարեն կհասցվի 2,1 միլիոն մետրի:

Սովետական իշխանության տարիներին մեր հանրապետությունում էներգետիկայի ուժեղ բազա է ստեղծվել: Կառուցվել և շահագործման են հանձնըվել Մինգեչաուրի հիդրոէլեկտրակայանը և Ալիբայրամլիի խոշոր պետական շրջանային էլեկտրակայանի 3 բլոկները: Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1965 թվականին, 1920 թվականի համեմատությամբ, ավելացել է 85 անգամ, իսկ 1958 թվականի համեմատությամբ՝ ավելի քան 86 տոկոսով: Մեր հանրապետության գյուղերն ու քաղաքները լուսավորված են Իլյիչի լամպերով: Նոր հնգամյակում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 1,4, իսկ ջերմաէլեկտրակայաններինը՝ 2,6 անգամ: Հնգամյակի ընթացքում կավարտվի Ալիբայրամլիի էլեկտրակայանի վերջին հերթի, Սումգայիթի երկրորդ ջերմաէլեկտրակայանի, Շամխորի և Թարթառի հիդրոէլեկտրակայանների կառուցումը և կխոշորացվի «Կարմիր աստղ» պետական շրջանային էլեկտրակայանը: Ընդամենը շահագործման կհանձնվեն մոտավորապես 800 հազար կիլովատ նոր էներգետիկ կարողություններ, 35 կիլովատ և ավելի լարվածությամբ էլեկտրահաղորդման 2.200 կիլոմետր գծեր: Դրանց հետ համատեղ կիրագործվի Նախիջևանի ԻՍՍՀ-ում Արաքս գետի վրա հիդրոէլեկտրակայանի և խոշոր ջրամբարի կառուցումը:



1965 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, սև և գունավոր մետաղների արտադրության արտադրանքի ծավալն ավելացել է 1.189 անգամ, քիմիական և ռետին-ասբեստի արդյունաբերությունը՝ 7,5, մեքենաշինությունն ու մետաղամշակությունը՝ 12,8 անգամ, թեթև արդյունաբերությունը՝ 151, իսկ սննդինը՝ 110 տոկոսով:

Առաջիկա հնգամյակում արդյունաբերության մյուս ճյուղերի համեմատությամբ մեծ տեղ կտրվի քիմիական արդյունաբերության զարգացմանը: Արդյունաբերության այս ճյուղի զարգացմանը հատկացվում են 1961—1965 թվականների համար նախատեսված ծավալը 1,4 անգամ գերազանցող կապիտալ ներդրումներ:

Գունավոր մետալուրգիայի զարգացման համար ևս մեծ աշխատանքներ կտարվեն: Կիրովաբադում կավարտվի ալյումինի օքսիդի գործարանի կառուցումը, կստեղծվի գունավոր մետալուրգիայի նոր օջախ՝ Բելոկանի շրջանի Ֆիլիզչայի կիսամետաղների կոմբինատը:

Հնգամյակում հատուկ ուշադրություն է նվիրվելու մեքենաշինության արտադրության զարգացմանը: Դրա շնորհիվ մեքենաշինության ընդհանուր արտադրանքի ծավալը կավելանա 1,8 անգամ:

Այժմ մեծ տեղ է տրվում թեթև և սննդի արդյունաբերության զարգացմանը, իսկ դա նշանակում է, որ պետք է ավելի բարձրանա կուլտուր-կենցաղային և գյուղատնտեսական ապրանքների արտադրությունը: Նոր հնգամյակում թեթև արդյունաբերության զարգացման համար, 1961—1965 թվականի համեմատությամբ, 3,5 անգամ ավելի միջոցներ են հատկացվել: Դա հնարավորություն կտա գործարկել գործվածքեղենի, տրիկոտաժի, կոշիկի նոր ֆաբրիկաներ և ուրիշ ձեռնարկություններ: Հնգամյակի ընթացքում գործվածքեղենի արտադրանքը կավելանա 36 տոկոսով, այդ թվում մետաքսեղենինը՝ 2,2 անգամ, տրիկոտաժե սպիտակեղենինը՝ 2,2—2,3 անգամ, տրիկոտաժե վերնազգեստինը՝ 2—2,8 անգամ և կոշկեղենինը՝ 50 տոկոսով և այլն:

Աննախընթաց վերելք է ունենալու սննդի արդյունաբերությունը, որի համար կապիտալ ներդրումը, 1961—1965 թվականների համեմատությամբ, կավելանա 2,2 անգամ, կկառուցվեն պահածոների 5 և ծխախոտի 4 նոր գործարաններ, ինչպես նաև ըմպելիքի նոր գործարան:

Հնգամյակում բավականին կընդլայնվի բնակչության կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների արտադրությունը: Այդ ապրանքների արտադրանքի ծավալը կավելանա 3 անգամ, այդ թվում՝ հեռուստացույցերինը՝ 3,4—3,9, կենցաղում օգտագործվող սառնարաններինը՝ 5,1—5,5, իսկ կահույքի արտադրությունը՝ 2 անգամ:

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման տեմպերը մեծ չափով կախված են գյուղատնտեսությունից: Խնդիրն այն է, որ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի (1965) որոշումների հետագա կենսագործման հիման վրա ապահովվի գյուղատնտեսության նոր հուժկու վերելք: Հնգամյակում հատկապես լուրջ ուշադրություն կդարձվեն ոռոգվող հողերի խելացի օգտագործմանը, նրանց մելիորատիվ վիճակի բարելավմանը, այդ նույն հողերից բարձր բերք ստանալուն, ջրաշինարարական կառույցների ընդհանուր արդյունավետության բարձրացմանը:

Հողերի մելիորատիվ վիճակի բարելավումը նոր հնգամյակում հանրապետության գյուղատնտեսության կենտրոնական պրոբլեմն է: 1966—1970 թվականներին պետք է բարելավվեն Քուռ-Արաքսի հարթավայրի և Մուղանի տափաստանի հողերի մելիորատիվ վիճա-

կը: Դրա համար կաղազրկվի ավելի քան 200 հազար հեկտար հող: Բացի դրանից, շահագործման կհանձնվեն 60 հազար հեկտար ոռոգելի նոր հողատարածություններ:

Նոր հնգամյակի կարևորագույն խնդիրներից է անասնաբուծության զարգացումն ու անասնապահական մթերքների արտադրության ավելացումը: Այդ կարևորագույն խնդիրը կլուծվի հանրային հոտի տոհմային կազմի բարելավման և կերային բազայի ուժեղացման ճանապարհով:

Գյուղատնտեսության հետագա զարգացման բնագավառում նախատեսված միջոցառումների իրականացման համար կկատարվեն խոշոր կապիտալ ներդրումներ: Անցած հինգ տարիների համեմատությամբ, այս հնգամյակում գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կավելանա 2 անգամ: Հնգամյակում գյուղատնտեսական տեխնիկական բազայի ամրապնդման, տեխնիկայի ժամանակին մատակարարման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվելու: Միայն 1966 թվականին գյուղատնտեսությունը կստանա 3.600-ից ավելի տրակտոր, 770 կոմբայն, 1.800 բեռնատար ավտոմեքենա և մեծ քանակությամբ ուրիշ տեխնիկա: Եվ այս բոլորը կօգնեն, որպեսզի գյուղատնտեսության ընդհանուր եկամուտը, 1965 թվականի համեմատությամբ, ավելանա մոտ 10 տոկոսով:

Նոր հնգամյակում նյութական արտադրության և սպասարկման բոլոր բնագավառներում նախատեսված աճն ապահովելու համար մեծ չափով կզարգանա կապիտալ շինարարությունը: Նախատեսված է հանրապետության ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման համար մոտավորապես 3,4 միլիարդ ռուբլի կապիտալ ներդրում կատարել, որը 1961—1965 թվականների կապիտալ ներդրումից 1,5 անգամ ավելի է:

Ժողովրդական տնտեսության զարգացման համար նախատեսված կապիտալ ներդրումը տնտեսության հիմնական ճյուղերում հետևյալ կերպ կբաշխվի՝ արդյունաբերության, տրանսպորտի և կապի զարգացման համար մոտ 1,87 միլիարդ ռուբլի, իսկ սա անցած հինգ տարիների համեմատությամբ 1,3 անգամ ավելի է, գյուղատնտեսության զարգացման համար՝ 750 միլիոն ռուբլի, որն անցած հինգ տարիների համեմատությամբ երկու անգամ ավելի է, բնակարանային-կոմունալ և կուլտուր-կենցաղային կառուցումների համար մոտ 717 միլիոն ռուբլի, որն անցած հինգ տարիների համեմատությամբ 30 տոկոսով ավելի է:

Կապիտալ շինարարության ուղղությամբ տարվող աշխատանքները կնպաստեն, որպեսզի կարճ ժամանակամիջոցում և նվազագույն ծախսումներով ավարտվի բնակելի շենքերի և այլ ձեռնարկությունների կառուցումը:

Ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի կատարումը կնպաստի աշխատավորության նյութական բարեկեցության և կուլտուր-կենցաղային մակարդակի բարձրացմանը, որը և պարտիայի ամենօրյա ուշադրության կենտրոնում է:

Հնգամյակի ընթացքում է՛լ ավելի կաճի լայն սպառման ապրանքների արտադրությունը, կավելանա ազգային եկամուտը, կբարելավվի բնակչության առողջապահության և կենցաղային, ինչպես նաև հասարակական-կուլտուրական սպասարկումը: Հինգ տարվա ընթացքում հանրապետության ազգային եկամուտը կավելանա մոտ 1,5 անգամ: Աշխատավարձի աճն աշխատավորության նյութական բարեկեցության և կուլտուր-կենցաղային մակարդակի բարձրացման հիմնական աղբյուրը պետք է հանդիսանա: Հինգ տարվա ընթացքում բանվորների և ծառայողների աշխատավարձը միջին հաշվով կավելանա 20, կոլտնտեսականների եկամուտը 35—40 տոկոսով: Հասարակական սպառման ֆոնդերի հաշվին աշխատավորների դրամական եկամուտները կավելանան 40 տոկոսով:



Լայն սպառման ապրանքների արտադրության և բնակչության դրամական եկամուտի ավելացման շնորհիվ հանրապետությունում ապրանքաշրջանառության ծավալը (համադրելի գներով) կավելանա 1,6—1,7, իսկ կենցաղային սպասարկման ծավալը՝ 3,3 անգամ:

Կընդլայնվի բնակարանային շինարարության ծավալը: Հինգ տարվա ընթացքում մոտ 6,4 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն կհանձնվի շահագործման, իսկ սա 1961—1965 թվականների համեմատությամբ ավելի է 40 տոկոսով: Այս բոլորը հավասար է հանրապետության՝ սովետական իշխանության տարիներին շահագործման հանձնված բոլոր բնակելի տարածության 40 տոկոսին:

Բնակչության կոմունալ սպասարկման համար առանձնացված գումարը անցած հինգ տարիների համեմատությամբ կավելանա 43 տոկոսով:

Հնգամյակի հիմնական խնդիրներից մեկն էլ սովետական մարդկանց կենցաղի, առողջապահության և հանգստի բարելավման գործն է: 1970 թվականին հանրապետության հիվանդանոցներում մահճակալների թիվը կհասնի 52 հազարի, կամ կավելանա 33 տոկոսով: Կընդլայնվի նաև առողջարանների և հանգստյան տների ցանցը, կբարելավվի նրանց աշխատանքը: Հնգամյակում կուլտուրայի, ժողովրդական կրթության, կապի և տրանսպորտի աշխատանքների բարելավման համար 1967—1970 թվականներին, անցած հինգ տարիների համեմատությամբ, կհատկացվեն երկու անգամ ավելի միջոցներ:

Աշխատուժի պահանջը բավարարելու և արտադրության օրինաչափ զարգացումը ապահովելու նպատակով նոր հնգամյակում մեր հանրապետության մեծ և փոքր քաղաքներում արդյունաբերական նոր ձեռնարկություններ կըկառուցվեն: Արդյունաբերական նոր ձեռնարկությունները կկառուցվեն, օրինակ, Նախիջևանում և Ստեփանակերտում, Եվլախ-Բարդա-Աղդամ, Ղազախ-Աղստաֆա. Նուխի-Զաքաթալայի գոտիներում, ինչպես նաև Ալի-Բայրամալիի. Սալյանի և այլ քաղաքներում:

Հնգամյակի տարիներին հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացմանը զուգընթաց կկատարելագործվեն սոցիալիստական հասարակության արտադրական հարաբերությունները, նոր առաջընթաց քայլ կկատարվի նոր մարդու դաստիարակման ու ձևավորման ասպարեզում, էլ ավելի լայնորեն կծավալվի աշխատավորների ստեղծագործական ուժերը կոմունիզմի կառուցման համար մղվող համաժողովրդական պայքարում:



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀԱՍՏՈՑԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Մեքենաշինությունը վճռական դեր է խաղում երկրի ժողովրդական տնտեսությունը նոր, առաջնակարգ և ժամանակակից հաստոցներով, մեքենաներով ու գործիքներով հագեցնելու գործում: Մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանը չի ունեցել արդյունաբերության այս ճյուղը: Մեքենաշինությունը, մասնավորապես հաստոցաշինությունն ու գործիքաշինությունը, ՀՍՍՀ-ում հիմնադրվել է սովետական իշխանության տարիներին և իր զարգացման աննախընթաց վերելքն է ապրել հետպատերազմյան շրջանում: Մեր հանրապետությունում այն բարձր տեմպերով է աճել հատկապես յոթնամյակում: Հաստոցաշինական արդյունաբերության մեջ 1959—1965 թվականներին ներդրվել է մոտ 30 միլիոն ռուբլի, որը մեծ չափերով գերազանցում է 1953—1958 թվականների մեքենաշինության բոլոր ճյուղերի զարգացման կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը: Եթե 1958 թվականին արդյունաբերության այդ ճյուղը ուներ երեք գործարան, ապա 1965 թվականին դրանց թիվը հասավ 13-ի, որի շնորհիվ արտադրության ծավալն աճեց 4,7 անգամ: Հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերությունը 1958 թվականին թողարկել է 6,5 միլիոն ռուբլու համախառն արտադրանք, իսկ անցյալ տարի՝ 30,5 միլիոն ռուբլու:*

*Հաստոցաշինական գործարաններն էլ ավելի մասնագիտացնելու և միջճյուղային կոոպերացումը ընդլայնելու նպատակով հանրապետությունում ստեղծվել են հաստոցների հիդրավլիկ և ցածրավոլտ ապարատուրա, հաստոցային նորմալներ ու ամրակներ, պլաստմասսային արուրքներ, դրոշմներ և հարմարանքներ թողարկող ձեռնարկություններ:*

*Հաստոցաշինության թուջի ձուլվածքի կարիքներն ապահովելու համար ավելացված է Ձերժինսկու անվան գործարանի ձուլման արտադրամասի կարողությունը և շահագործման է հանձնված Լուսավանի սարքաշինական գործարանի թուջաձուլական կոմպլեքսը: ՍՍՀՄ-ում թողարկվող մեքենաների ընդհանուր ծավալում աճել է նաև հանրապետությունում թողարկվող հաստոցների տեսակարար կշիռը: Այսպես, 1958 թվականին հանրապետությունը թողարկել է ՍՍՀՄ-ում թողարկվող ընդհանուր հաստոցների 1,66 տոկոսը, իսկ 1965 թվականին դրա տեսակարար կշիռը հասավ 5,2 տոկոսի:*

*Ներկայումս հանրապետությունում թողարկվում են (ՍՍՀՄ ընդհանուր քանակի համեմատությամբ)՝ խառատահաստոցների 10 տոկոսը, ներտաշ հաստոցների 10, ֆրեզերային հաստոցների 5, հղկիչ հաստոցների 7 և էլեկտրաէրոզիոնային հաստոցների ավելի քան 15 տոկոսը: Հաստոցների արտադրության ծավալով մեր հանրապետությունը Միության մեջ գրավում է* հինգերորդ *տեղը: Վերջին տարիներին նկատելիորեն ընդլայնվել և ամրապնդվել են հանրապետության հաստոցաշինական ձեռնարկությունների արտաքին տնտեսական կապերը: Հանրապետության բոլոր հաստոցաշինական գործարանները ներկայումս մասնակցում են արտաժման հայթայթումներին:*



*Մեր հաստոցաշինական արդյունաբերության ձեռնարկությունները վերջին տարիներին որոշակի առաջխաղացում են կատարել նոր տեսակի մետաղահատ հաստոցների, մեխանիկական մամլիչների, գիլոտինային մկրատների, հաստոցների համար հիդրոապարատուրային, հաստոցային նորմալների, մետաղահատ ձգող-գործիքների, ֆրեզների պատրաստման և սերիական արտադրության բնագավառում:*

*Յոթնամյակի ընթացքում յուրացված է նոր տեսակի 23 մոդելի մետաղահատ հաստոցների, 6,3 և 25 տոննա կարողություն ունեցող մեխանիկական մամլիչների, 18 տիպի հաստոցային ապարատուրաների թողարկումը. ընդ որում, վերջին տարիների համար բնորոշ է մետաղի պակաս տեսակարար կշիռ և մեծ աշխատատարություն ունեցող բարձր արտադրողական հաստոցների արտադրության յուրացումը, ինչպես նաև բարձր ճշգրտություն ունեցող հաստոցների թողարկման սիստեմատիկ ավելացումը:*

*Վերջին տարիներին հաստոցաշինական արդյունաբերության յուրացրած հաստոցների մեջ կարելի է նշել հետևյալ մոդելները՝ խառատա-պտուտակահան 1* В *61-ը՝ շրջիկ արհեստանոցների համար, 2* Е *52 շառավղագայլիկոնիչ, 2* Л *614 և 2615 հորիզոնական ներտաշիչ, 3* Б *12 հղկիչ, 675 և 676 ֆրեզերային, 4531 էլեկտրակայծային,* МЭ—22 *ուլտրաձայնային հաստոցները և ածխագրաֆիտ էլեկտրոդներ պատրաստող* МАЧ 59 *հաստոցը: Գործիքաշինական գործարանները յուրացրել են մետաղահատ միջանձիչ գործիքի առավել բարդ տեսակներից մեկի, ալմաստե հատիչ գործիքի մի քանի տեսակների, ամրահալ դանակներով հագեցված ֆրեզների և մի շարք այլ գործիքների պատրաստումը: Նոր արտադրանքների յուրացումը տեղի է ունեցել արտադրական կարողությունների անընդհատ աճման, տեխնոլոգիայի կատարելագործման, աշխատատար պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, դետալների մշակման արագացված ու պրոգրեսիվ մեթոդների արմատավորման պայմաններում: Ընդլայնվել է ալմաստե հատիչ գործիքների կիրառման բնագավառը, մետաղե շատ դետալներ փոխարինվել են պլաստմասսե դետալներով:*

*Այդ բոլոր միջոցները նպաստեցին է՛լ ավելի կատարելագործելու արտադրությունը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, բարելավելու թողարկվող արտադրանքի որակը, աշխատանքի պայմանները և իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը:*

*Ձեռնարկությունները զգալի տեղաշարժեր ունեն շահութաբերությունն ավելացնելու ուղղությամբ: Եթե 1960 թվականին հաստոցաշինական գործարանների մեծ մասը վնասով էր աշխատում, ապա ներկայումս բոլոր ձեռնարկությունները շահութաբեր են: Միայն 1964—1965 թվականներին ստացված շահույթը կազմում է 8 միլիոն ռուբլի:*

*Հաստոցաշինական գործարանների զարգացման հետ մեկտեղ հանրապետությունում զարգացել է կոնստրուկտորական և գիտահետազոտական սպասարկումը: Ստեղծվել են մետաղահատ հաստոցների փորձնական գիտահետազոտական ինստիտուտի (ՄՀՓԳՀԻ) Անդրկովկասի ֆիլիալը և հայկական գիտահետազոտական մեքենաշինության ինստիտուտը, որոնց գործունեության շնորհիվ հաստոցների ու մեքենաների նոր նմուշներ ստեղծելու ուղղությամբ գործարանները զգալի օգնություն ստացան: Մետաղահատ հաստոցների փորձնական գիտահետազոտական ինստիտուտի Անդրկովկասի ֆիլիալը վերջին չորս տարում ստեղծել է հաստոցների և գարբնոցամամլիչ մեքենաների ավելի քան 15 մոդել, որոնք ներկայումս յուրացված են և սերիապես թողարկվում են ինչպես հանրապետության, այնպես էլ Միության մի շարք ձեռնարկություններում: Գործարանների համագործակցությամբ ստեղծվեցին կոնստրուկտորական ծառայություններ և հետազոտական լաբորատորիաներ, որոնք հետազոտական աշխատանք են կատարել թողարկվող հաստոցների որակը, ինչպես նաև դրանց երկարատևությունն ու հուսալիությունը բարելավելու ուղղությամբ: Հետազոտվել և հետազոտվում են սերիական հաստոցների ավելի քան 10 մոդել, ինչպիսիք են՝* 2 Е 52, 1 Б 61, 163, 1603, 3 Б 12 *և այլն:*

Հատուկ ուշադրության է արժանի Անդրկովկասի ֆիլիալի պատրաստած 1603 B մոդելի բարձր ճշգրտության հաստոցը, որը թողարկվելու է Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանում և MA—459 շաղափող-պատճենահան հաստոցը, որի լիցենզիան Սովետական Միությունն առաջին անգամ վաճառել է Ֆրանսիային: Դրանց սերիական թողարկումը կազմակերպված է Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում: Յոթնամյակի ընթացքում ստեղծված հայկական գիտահետազոտական մեքենաշինության ինստիտուտը նույնպես որոշակի աշխատանք է կատարել նոր, բարձր արտադրողականություն ունեցող տեխնոլոգիական պրոցեսների և նոր տեխնիկայի արմատավորման խնդրում գործարաններին օգնություն ցույց տալու ուղղությամբ:

Հաջողությամբ նոր արտադրանքներ են յուրացնում Լուսավանի ներտաշ, «Հիդրոպրիվոդ», Լենինականի դարբնոցա-մամլիչ սարքավորման և Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանները:

Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանում սիստեմատիկ աշխատանք է տարվում նոր հաստոցների մոդելներ ստեղծելու և թողարկվողները կատարելագործելու ուղղությամբ: Իր կազմակերպման օրից այդ գործարանը լրիվին թարմացրել է թողարկվող սերիական հաստոցների տիպաժը, արտադրությունից հանելով հնացած կոնստրուկցիաները: Գործարանը կարողացավ հատկապես հաջողությամբ կատարել 2Л614 և 2615 մոդելի հորիզոնական ներտաշ, ինչպես և 2И614 մոդելի կոորդինատների կիսաավտոմատիկ հաշվանք ունեցող հաստոցների ստեղծման առաջադրանքը: Այդ հաստոցները բարձր գնահատականի են արժանացել ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճումների ցուցահանդեսում:

Լենինականի դարբնոցա-մամլիչ սարքավորման գործարանը 1960—1965 թվականներին յուրացրել է 14 տիպաչափերի տարբեր դարբնոցամամլիչ մեքենաներ և դարբնոցա-դրոշմիչ աշխատանքների ավտոմատացման միջոցներ, ինչպես՝ 6,3 և 25 տոննա ճնշման ուժի մեխանիկական մամլիչներ, 2,5 և 13 մմ հաստության մետաղաթերթեր կտրող գիլյոտինային և կոմբինացված մկրատներ:

Նոր հաստոցներ յուրացնելու գործում որոշակի հաջողությունների է հասել Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանը, որը վերջերս յուրացրել ու պատրաստել է նոր հաստոցների 16 փորձնական մոդելներ: Դրանցից են 1600 B և 1603 B մոդելների հատուկ բարձր ճշգրտության, MЭ—22 մոդելի գերձայնային, 4531 մոդելի էլեկտրակայծային հաստոցները:

Երևանի Ձերժինսկու անվան գործարանը մեծ գործունեություն է ծավալել հատուկ և մասնագիտացված հաստոցների արտադրությունը յուրացնելու ուղղությամբ: 1965 թվականին այն թողարկել է 10 մոդելների 50 հատուկ հաստոց: Ուշադրության է արժանի Սովետական Միությունում առաջին անգամ ստեղծված պտտվող մարմինները զուգընթաց մշակող ET—50 կիսավտոմատը: Գործարանի կոնստրուկտորական բաժինն այդ հաստոցն ստեղծել է Բաումանի անվան Մոսկվայի բարձրագույն տեխնիկական ուսումնարանի հաստոցների ամբիոնի տեսական մշակումների հիման վրա: Հատումը կատարվում է գործիքի ու արուրքի միաժամանակյա պտտվելու նոր սկզբունքով: Հաստոցը լայնորեն կկիրառվի առանցքակալային և ավտոմոբիլային արդյունաբերության խոշոր սերիական արտադրություններում:

Մեր հաստոցաշինական գործարանները քիչ գործ չեն արել արտադրանքը նորացնելու ուղղությամբ: Սակայն, դեռևս լուրջ թերություններ ունենք տեխնիկական պրոգրեսն արագացնելու, արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու և նոր տեխնիկան արմատավորելու ուղղությամբ: Շատ հաստոցներ իրենց մի շարք կարևորագույն պարամետրերով, հատկապես ճշգրտությամբ, հուսալիությամբ, տնտեսական էֆեկտով և արտաքին տեսքով դեռևս զիջում են հայրենական ու արտասահմանյան լավագույն նմուշներին: Շարունակվում է ցածրորակ արտադրանքի թողարկումը: Այսպես. կոնստրուկցիայով և պատրաստման որակով ցածր է Ձերժինսկու անվան գործարանի 1B61 մոդելի հաստոցը, Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանի C—193—H,



C193A և T1A մոդելների, նույն գործարանի P—130 ակոսահատ հաստոցները և այլն, որոնցից շատերը թեև ՍՍՀՄ ժողտնտպլանով պետք է արտադրությունից հանվեին, սակայն գործարանները բավականաչափ ուշադրություն չեն նվիրել տիպաժը նորոգելու և շարունակում են թողարկել հնացած մոդելներ:

Հանրապետության հաստոցաշինական գործարանները դեռևս թողարկում են այնպիսի հաստոցներ, որոնք թեև ունեն կատարյալ կոնստրուկցիաներ, բայց իրենց կատարողական որակով ցածր են: Դրանցից են Ձերժինսկու անվան գործարանի 1Б61A խառատահաստոցը, Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանի 1603, նույն գործարանի C—155 գայլիկոնիչ սեղանի, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանի 675 և 676 մոդելի, Լենինականի հղկիչ հաստոցների 3Б12 կլորահղկիչ հաստոցները:

Այժմ մի քանի խոսք արտադրանքի որակի բարձրացման մասին: Թողարկվող մի շարք հաստոցների անբավարար որակը հիմնականում բացատրվում է հետևյալով.

ա) խախտվում է հաստոցների պատրաստման տեխնոլոգիան, թույլ է արտադրական կարգապահությունն ու կազմակերպվածությունը.

բ) հաստոցագործարաններում պետք եղածը չի արվում մեքենաների շահագործման ընթացքում հայտաբերված թերությունները վերացնելու ուղղությամբ.

գ) ցածր է կոմպլեկտավորվող արուրքի որակը, որի հետևանքով չեն ապահովվում հաստոցների հուսալիությունը, երկարատևությունն ու ճշգրտությունը:

Հաստոցների որակը բարձրացնելու և դրանց թողարկումը հայրենական ու համաշխարհային լավագույն ստանդարտներին համապատասխանեցնելու համար անհրաժեշտ է խստորեն պահպանել արտադրության տեխնոլոգիան:

Բարձր տեխնիկական ցուցանիշների համար մղվող պայքարում լուրջ նշանակություն է ստանում նախապատրաստող արտադրության հստակ կազմակերպումը: Յուրաքանչյուր գործարան, նկատի ունենալով զգալի նյութական ծախսերը, հնարավորություն չունի ինքնուրույն լուծելու նախապատրաստող արտադրությունն անհրաժեշտ դրոշմներով ու հարմարանքներով հագեցնելու պրոբլեմները, ուստի անհրաժեշտ է, որ Երևանի, Լուսավանի գործիքաշինական, հաստոցանորմալ և մյուս գործարանները ժամանակին հաստոցաշինական ձեռնարկություններն ապահովեն այնպիսի որակյալ սարքավորումներով ու ձուլվածքներով, որոնք անհրաժեշտ են ինչպես նոր տեխնիկան արմատավորելու, այնպես էլ արտադրական ծրագրերը կատարելու համար:

Հաստոցների տեխնիկական մակարդակը մեծ չափով կախված է դրանց ստեղծողների ու սպառողների սերտ կապից: Հաստոցաշինարարների պարտքն է ո՛չ միայն լրիվին բավարարել մյուս ճյուղերի աշխատողների պահանջները, այլև կանխատեսել նրանց կարիքները, ստեղծել բարձր արտադրողականություն և հուսալիություն ունեցող, այլ կերպ ասած՝ «գերազանցող» հաստոցների կոնստրուկցիաներ: Դժբախտաբար, մեր շատ գործարաններ բավականաչափ ուշադրություն չեն նվիրում իրենց արտադրած սարքավորման աշխատանքի ուսումնասիրմանը, արդյունաբերական փորձարկման պրակտիկա չեն կիրառում: Ահա թե ինչու թողարկվող արտադրանքի փորձարկումը կազմակերպելու և նրա կոնստրուկտորական ու որակական հատկությունները հայտաբերելու համար հարկավոր է տեխնիկական ծառայությունն ուժեղացնելու և անհրաժեշտ բազա ստեղծելու կոնկրետ միջոցներ ձեռնարկել. ընդ որում հատուկ ուշադրություն նվիրելու այն լաբորատորիաներին, որոնք կոչված են ավելի բարելավելու հաստոցների որակն ու աշխատունակությունը, բարձրացնելու նրանց հուսալիությունն ու երկարատևությունը:

Արտադրանքի որակի բարձրացման համար մեծ նշանակություն ունի արտադրության կուլտուրան, աշխատանքի կազմակերպումը, ձեռնարկության և նրա առանձին օղակների գործունեության ռիթմիկությունը: Մեքենաշինությունը պահանջում է ամենօրյա հոգատարություն թողարկվող մեքենաների մոդեռնացման և կատարելագործման համար:

վորման ջրավազան ունեցող պոմպակայաններն ունեն հետևյալ առավելությունները.

1. Հնարավորություն է ընձեռվում լրիվին օգտագործել պոմպակայանում տեղադրվող սարքավորումը, երկարացնել պոմպերի աշխատաժամերը, որի շնորհիվ փոքր հզորությամբ պոմպերով մեծ ծավալի ջուր է բարձրացվում։ Այդ երևույթը ակնհայտ է հետևյալ բանաձևից.

W=T . Q։ Ըստ բանաձևի, որքան մեծանա T-ն (պոմպերի աշխատաժամը), այնքան կավելանա բարձրացվող ջրի տարեկան ծավալը՝ W-ն (Q պոմպի արտադրողականությունն է մեկ ժամում)։ Օրինակ, Գլաձորի պոմպակայանը իր 320 լ/վրկ հզորությամբ, համաձայն ոռոգման գրաֆիկի, բարձրացնում է 2,54 միլիոն խմ ջուր, իսկ պոմպակայանինը՝ 320 լ/վրկ հզորության լրիվ օգտագործման դեպքում, նույն ժամանակամիջոցում (ապրիլի 1-ից օգոստոսի 31-ը) կարող է բարձրացնել 4,15 միլիոն խմ։ Եթե պոմպակայանի աշխատանքը սկսվի մարտի 1-ից, ապա մինչև օգոստոսի 31-ը կբարձրացվի 4,98 միլիոն խմ ջուր, այսինքն՝ մոտավորապես երկու անգամ ավելի։

Վերևում նշված օրինակներից պարզ երևում է, որ կանոնավորման ջրավազան ունենալու դեպքում կարելի է պոմպակայանի պոմպերի հզորությունը փոքրացնել երկու անգամ, ոռոգվող հողատարածությունը թողնելով նույնը, կամ պոմպերի հզորությունը նույնը թողնելով, կարելի է կրկնապատկել ոռոգվող հողատարածությունը։

2. Կանոնավորող ջրավազանի շնորհիվ պոմպակայանում տեղադրված պոմպերի և մյուս սարքերի օգտագործման տևողությունն ավելանում է, որի շնորհիվ ծախսվող էլեկտրաէներգիայի արժեքն իջնում է։ Պոմպակայաններում օգտագործվող էլեկտրաէներգիայի արժեքը հաշվվում է երկդրույք տարիֆով։

$$\text{Э} = P_1 + A \quad . \quad . \quad . \quad . \quad . \quad . \quad (1),$$

որտեղ Э-ն տարվա ընթացքում օգտագործված էլեկտրաէներգիայի լրիվ արժեքն է։ $P_1$ միացված հզորության արժեքն է մեկ տարվա համար։

Ըստ Հայգյուղպետնախագիծ ինստիտուտի նախագծերի տվյալների, $P_1$ էլեկտրաէներգիայի լրիվ արժեքի մեջ կազմում է Մխչյանի պոմպակայանի համար՝ 60, Այրումի պոմպակայանի համար՝ 63 տոկոս և այլն։

Այստեղից ակնհայտ է, որ եթե կարողանանք ջրավազանի օգնությամբ պոմպակայանի պոմպերի հզորությունը փոքրացնել 50 տոկոսով, ապա համաձայն (1) բանաձևի օգտագործված էլեկտրաէներգիայի արժեքի Э-ի առաջին մասը $P_1$-ը կպակասի 50 տոկոսով և քանի որ $P_1$-ը կազմում է Э-ի 60—63 տոկոսը, Э-ն կպակասի 30—31 տոկոսով։

Պոմպակայանի հզորությունը 50 տոկոսով պակասեցնելու համար անհրաժեշտ կլինի կառուցել կանոնավորող ջրավազան ոչ թե բարձրացվող ջրի 50 տոկոսի չափով, այլ բարձրացվող ջրի 25—30 տոկոսի չափով, որովհետև 5—6 ամսվա ընթացքում պոմպակայանները լրիվ բեռնվածությամբ աշխատում են միայն 1—2 ամիս։

Պոմպերի լրիվ հզորության օգտագործման և նրանց աշխատանքի ժամկետը 1—2 ամսով ավելացնելու դեպքում մենք հնարավորություն կունենանք պոմպակայանի միջոցով բարձրացրած ջրի տարեկան ծավալը կրկնապատկել։ Գարնան ամիսներին գրաֆիկից դուրս պոմպակայանի բարձրացրած ջուրը կուտակվում է կանոնավորող ջրավազանում. ջրի մեծ պահանջի դեպքում այն աստիճանաբար բաց է թողնվում պոմպակայանի հաստատուն ելքերի հետ մեկտեղ։

Ստորև նշված ոռոգման առաջավոր մեթոդների և նորագույն տեխնիկայի մասսայական կիրառմամբ հնարավորություն կընձեռվի գործող ոռոգման ցանցի ջրերով ավելացնել ոռոգվող հողատարածությունը, իսկ վերջինիս որակի բարձրացմամբ ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Պոմպակայաններին կից կառուցվող ջրավազանների շնորհիվ հնարավորություն կընձեռվի կուտակելու ոռոգման համար պիտանի հոսող ջրերը և, թանկարժեք սարքավորումների տեղակայման փոխարեն, հողային պատվարների օգնությամբ, մեծացնելու ոռոգվող հողատարածությունը։



Արտաշատի և Վեդու շրջանների ոռոգման համար կարևոր նշանակություն ունի Ազատ և Վեդի գետերի վրա ջրամբարների կառուցումը։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ տարվա 4—5 (ապրիլ—նոյեմբեր) ամիսներին այդ գետերի ջրից չի օգտագործվում 36 միլիոն խորանարդ մետր։ Ջրամբարում ջրի կուտակմամբ հնարավոր կլինի լրացուցիչ ոռոգել 4300 հեկտար հող։

Այնուհետև, շատ ջուր կարելի է խնայել կոլտնտեսությունների և սովխոզների ոռոգման սիստեմների կատարելագործման և այդ բնագավառում գիտության նվաճումների ներդրման, արտադրության առաջավորների փորձի արմատավորման շնորհիվ։ Արտաշատի և Վեդու շրջաններում գործող ոռոգման ցանցը հիմնականում բաց տիպի է։ Մակերեսային գոլորշիացման, ներծծման պատճառով կորչում է մեծ քանակությամբ ջուր։ Բացի այդ, այն ունի նաև այլ թերություններ՝ մեծ հողատարածություն է զբաղեցնում, խանգարում է գյուղատնտեսական կուլտուրաների մշակության մեքենայացմանը, նպաստում մոլախոտերի սերմերի տարածմանը։

Գիտության և տեխնիկայի նվաճումների ներկա մակարդակին համապատասխանում է ոռոգման փակ սիստեմը։ Ճիշտ է, այն պահանջում է մեծ չափերի կապիտալ ներդրում, բայց զերծ է վերը նշված թերություններից, այնպես որ, կատարված ծախսերը կարճ ժամանակում կհատուցվեն։

Այժմ մեզ մոտ ոռոգումը կատարվում է ակոսային մեթոդով։ Սրա ճիշտ կիրառման պայմաններում արդյունքները վատ չեն։ Այդ մեթոդով ոռոգելիս անհրաժեշտ է ջուրը հավասարաչափ բաշխել ոռոգվող հողակտորի բոլոր ակոսների վրա, որպեսզի բոլոր բույսերը նույն չափ ջուր ստանան։ Բացի այդ, ակոսային ոռոգման ժամանակ ակոսներին տրվող ջուրը պետք է սկզբում շատ լինի, որ հողի մեջ ներծծվելուց բացի, տարածվի հողակտորի ողջ երկարությամբ։ Երբ ակոսին տրված ջուրը հասնում է հողակտորի ներքին ծայրին, պետք է պակասեցնել նրա չափը։ Դանդաղ հոսող ջուրն ավելի լավ է ներծծվում հողի մեջ։ Դրան հասնելու համար ներկայումս թե՛ մեր Միությունում և թե՛ արտասահմանյան շատ երկրներում լայնորեն օգտագործվում են սիֆոնխողովակները, որոնք ունեն 0,6—1,2 մետր երկարություն, պատրաստված են մետաղից, պոլիէթիլենից կամ քիմիական այլ նյութերից։ Այդ խողովակների միջոցով ժամանակավոր կամ հիմնական ոռոգիչ ջուրը վերցվում և տրվում է ակոսներին։ Ակոսներին տրվող ջրի քանակը կարգավորվում է ըստ հողատեսակների, համապատասխան տրամագծի խողովակներով։ Ակոսներին ջուր տալու համար ժամանակավոր ոռոգիչների և սիֆոն-խողովակների փոխարեն այժմ կիրառվում են մեծ տրամաչափի շարժական պոլիէթիլենային առաձգական խողովակներ, որոնք դրվում են ոռոգվող հողամասի վերևի մասում և նրա վրա ակոսների հեռավորության համապատասխան անցքերից ջուրը հավասարաչափ բաշխվում է ակոսներին։ Երբ հարկ է լինում պակասեցնել ակոսներին տրվող ջուրը, պակասեցվում է խողովակին տրվող ջուրը։ Ոռոգումն ավարտվելուց հետո խողովակը փոխադրվում է հողամասի հաջորդ հատվածը։

Ոռոգման ակոսային այժմյան մեթոդի կիրառմամբ ջրի կորուստ է լինում, իսկ ոռոգման որակը ցածր է, որովհետև ակոսների վրա ջրի անհավասարաչափ բաշխման հետևանքով միջակոսային տարածությունների որոշ մասերում ջուրը կուտակվում է, որոշ մասեր լրիվ չափով ջուր չեն ստանում, այդ պատճառով էլ իջնում է ոռոգման արդյունավետությունը և ստեղծվում են աշխատանքի անբարենպաստ պայմաններ։ Կան որոշ հողատեսակներ, որոնք չի կարելի ոռոգել ակոսային եղանակով (Արտաշատի շրջանի Երևան—Նախիջևան ավտոճանապարհից ներքև գտնվող հողերի մեծ մասը)։ Ստորերկրյա ջրերին մոտ լինելու պատճառով այդ հողերի ծծողականությունը մեծ է. ջուրը, փոխանակ հողամասի երկարությամբ հոսելու, ամբողջովին ներծծվում է խոր շերտերը։ Նման հողերի ակոսային ոռոգումը, սովորական հողերի համեմատությամբ, շատ երկար է տևում և 2—3 անգամ ավելի ջուր է կլանում։

Այդ տիպի հողերի ոռոգման համար պետք է անցնել ջրի խնայողաբար օգտագործման մեթոդներին։ Դրանցից ամենաարդյունավետը անձրևացման

միջոցով ոռոգելն է, որը կարելի է կիրառել ոռոգման թե փակ, թե բաց ցանցի դեպքում։

Ոռոգման փակ ցանցի դեպքում անձրևացումը կարելի է անցկացնել հաստատուն, տեղում ամրացված կամ շարժական անձրևացնող սարքերի միջոցով։ Եթե ոռոգման փակ ցանցի ջրատար խողովակները դասավորված են իրար մոտիկ, այնպես որ մի անձրևացնող սարքից թափվող ջրի շիթը կարող է հասնել հարևան սարքերից ցայտող ջրի շիթերին, ապա անձրևացման համար օգտագործում են հաստատուն, տեղում ամրացված սարքեր։ Այս դեպքում հողամասի ոռոգման համար բավական է բացել փականը։ Ոռոգման այս սիստեմի կիրառմամբ ոռոգումը լրիվ ավտոմատացվում է, թեթևանում է ոռոգող բանվորի գործը։ Նա հետևում է միայն ավտոմատ սարքերի անխափան աշխատանքին։ Այս սիստեմի կիրառման համար էլ պահանջվում են կապիտալ խոշոր ներդրումներ։

Երբ ոռոգման փակ ցանցի խողովակները դասավորված են իրարից շատ հեռու, այսինքն՝ ծառայում են միայն ջուրը ոռոգվող հողամասին հասցնելու համար, ապա անձրևացումը կատարվում է շարժական սարքերի միջոցով, որոնք շարժական խողովակաշարի օգնությամբ ջուրն ստանալով, ոռոգման փակ ցանցով տալիս են ոռոգվող հողամասին։ Հողամասի խոնավությունը նախատեսվածին հասցնելուց հետո անձրևացնող սարքը առաջ է շարժվում առանց անձրևացումը դադարեցնելու։ Ոռոգման այս սիստեմի համար ևս պահանջվում են կապիտալ մեծ ներդրումներ, բայց տնտեսվում է ջուրը և բարձրանում ոռոգող բանվորի աշխատանքի արտադրողականությունը։

Ոռոգման բաց ցանցի պայմաններում անձրևացումը կատարվում է շարժական անձրևացնող սարքերի օգնությամբ, որոնց շարժական խողովակների միջոցով ջուրը վերցվում է ժամանակավոր ոռոգիչներից և անձրևակերպ տրվում ոռոգվող հողամասին, շարժվելով հողամասի երկայնքով։ Ոռոգման այս սիստեմը կապիտալ մեծ ներդրումներ չի պահանջում, բացի անձրևացնող սարքերի արժեքից։ Բայց դրա շնորհիվ բարձրանում են ոռոգող բանվորների աշխատանքի արտադրողականությունը, ոռոգման որակը, ավելանում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Եվ, որ ամենագլխավորն է, պակասում է ոռոգման ջրի կորուստը։ Հողամասին տրվում է այնքան ջուր, որքան անհրաժեշտ է տվյալ կուլտուրային։ Այսպես, եթե ոռոգման ակոսային մեթոդի կիրառմամբ մեկ հեկտար հողամասի ոռոգման համար տարեկան պահանջվում է 6—8 հազար խորանարդ մետր ջուր (կախված հողակլիմայական պայմաններից և մշակվող կուլտուրայի տեսակից), ապա ոռոգման անձրևացման մեթոդով բնակլիմայական նույն պայմաններում և միևնույն կուլտուրաները մշակելիս կպահանջվի 2—4 հազար խորանարդ մետր ջուր։ Այսպիսով, կիրառելով ոռոգման անձրևացման մեթոդը, նույն քանակությամբ ջրով հնարավոր կլինի ոռոգել երկու անգամ ավելի հողատարածություն։

Անձրևացման սարքերը բացի ոռոգումից, կարելի է օգտագործել նաև գյուղատնտեսական կուլտուրաները վաղ գարնանային և ուշ աշնանային ցրտահարություններից պաշտպանելու նպատակով։ Գարնանային ցրտահարություններից պաշտպանվելու նպատակով ոչ ցրտակայուն բույսերի (պոմիդոր, վարունգ և այլն) ցանքսը գարնանը ուշ է կատարվում, որի հետևանքով ստացվում է ցածր բերք։ Խաղողի և պտղատու այգիները տաք եղանակի պայմաններում անմիջապես ծաղկում են և եթե ջերմաստիճանն իջնում է, մասնակիորեն կամ լրիվ չորանում են, մեծ վնաս հասցնելով տնտեսությանը։ Վաղ գարնանային և աշնանային ցրտահարություններից պաշտպանելու ուղղությամբ կատարված փորձերը թե՛ մեզ մոտ և թե՛ արտասահմանյան շատ երկրներում ցույց են տվել, որ դրանից պաշտպանվելու արդյունավետ միջոց է ցուրտ ժամանակ կատարվող անձրևացումը։ Եթե օդի ջերմաստիճանը 0-ից իջնում է, կատարվում է արհեստական անձրևացում. դրա շնորհիվ խոնավանում է հողի շերտը, այն ջերմության լավ հաղորդիչ է դառնում և հողի խոր շերտից ջերմությունը բարձրանում է վերև։

Ոռոգելի ջրի արդյունավետ օգտագործմանը մեծ չափով նպաստում է նաև



գիշերվա ջուրը, մինչդեռ կոլտնտեսությունների և սովխոզների մեծ մասում արտերը գիշերները չեն ջրում։ Այդ, առաջին հերթին, մեր կարծիքով, հետևանք է այն բանի, որ ցերեկային և գիշերային ջրվորները նույն նորմայով են վարձատրվում, մինչդեռ գիշերվա ջրելը դժվար է և այն պետք է ավելի բարձր վարձատրվի։ Հաճախակի գիշերները դադարում են գործել ջրհան կայանները։ Այդ ևս ճիշտ չէ։ Չէ՛ որ գիշերը դրանց աշխատացնելու համար ավելի շատ հնարավորություններ կան՝ առաջին հերթին էլեկտրաէներգիայով ապահովելու առումով։

Ոռոգելի ջուրը մեզ համար մեծ հարստություն է։ Այդ բնագավառի ամեն մի աշխատող պետք է ձգտի խնայողաբար և արդյունավետ օգտագործել այն։

Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Պոլիտեխնիկական ինստիտուտի ասպիրանտ

## ՔԱՂԱՔԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԸ

Երևանը Սովետական Միության այն քաղաքներից է, որը վերջին երեսուն տարում, երկրի ընդհանուր տնտեսական վերելքի շնորհիվ, աճել է բուռն թափով, դարձել խոշորագույններից մեկը։ Այդ ժամանակաշրջանում այն զգալի չափով ընդարձակվել է, վեց անգամ ավելացել է բնակչությունը։ Այսօրվա Երևանը վարչական, կուլտուրական, գիտական ու արդյունաբերական խոշոր կենտրոն է։ Տարեցտարի փոխվում է հանրապետության մայրաքաղաքի դեմքը, զարգանում է արդյունաբերությունը, ստեղծվում են նորանոր բարեկարգ բնակելի թաղամասեր, զբոսայգիներ, սպորտային կառույցներ, առևտրական ձեռնարկություններ։

Շատ բան է արվել քաղաքային տնտեսության զարգացման բնագավառում, որը նպաստում է բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավմանը։

Քաղաքային տնտեսության կարևորագույն ճյուղերից մեկը էլեկտրատրանսպորտն է՝ ամենամասսայական փոխադրամիջոցը։ Այն քաղաքի տարբեր ծայրամասերը կապում է իրար հետ, օգնում մարդկանց՝ կարճ ժամանակում անցնելու երկար տարածություն։

Երևանում ամենահին էլեկտրատրանսպորտը տրամվայն է, որը շահագործման է հանձնվել 1933 թվականից։ Սկզբում տրամվայի գծերի ընդհանուր երկարությունը 7,5 կիլոմետր էր, շարժակազմը՝ 13 միավոր։ Առաջին տարում փոխադրվել են 12 միլիոն ուղևոր։

Նախապատերազմյան տարիներին քաղաքի ընդարձակման, արդյունաբերական նոր ձեռնարկությունների կառուցման ու բնակչության աճի հետ մեկտեղ երկարացվում էր տրամվայի գիծը, ընդարձակվում վագոնների պարկն ու օժանդակ տնտեսությունները։ 1940 թվականին տրամվայի գծի երկարությունն արդեն 34,3 կիլոմետր էր, իսկ վագոնների շարժական կազմի օրական միավորը՝ 63։ Այդ տարում փոխադրվել է 47 միլիոն ուղևոր։

Հետպատերազմյան տարիներին Երևան քաղաքն ավելի ընդարձակվեց, կառուցվեցին նոր միկրոշրջաններ՝ Շահումյան, Աջափնյակ, Զեյթուն, Նոր Արեշ, Ավան։ Քաղաքի ընդարձակմանն ու բնակչության աճին զուգընթաց զարգացավ նաև էլեկտրատրանսպորտը։ Ռելսային տրանսպորտի երթուղիների երկարությունը 1965 թ. հասավ 85,8 կմ-ի, որը հնարավորություն տվեց Երևանի

ծայրամասային թաղամասերը կապել իրար: Անցյալի համեմատությամբ գրեթե լիովին փոխվեց տրամվայի շարժակազմը: Այժմ մայրաքաղաքի երթուղիներում հիմնականում նոր, հարմարավետ վագոններ են: Շարժական կազմի արդիականացման հետ բարելավվել է նաև տեխնիկական բազան: 1965 թվականին տրամվայով փոխադրվել են ավելի քան 45 միլիոն ուղևոր: 1940 թվականի համեմատությամբ տրամվայով ուղևորների թվի նվազումը հիմնականում հետևանք է տրոլեյբուսի, ավտոբուսի և տրանսպորտի մյուս տեսակների գործարկմանը:

Քաղաքի էլեկտրական տրանսպորտի մյուս ձեը՝ տրոլեյբուսը, Երևանում շահագործման է հանձնվել 1949 թվականի օգոստոսին: Տրամվայի համեմատությամբ այն որոշ առավելություններ ունի. այդ է պատճառը, որ կարճ ժամանակում նրա երթուղիների երկարությունը հասավ մոտ 70 կմ, շարժակազմը՝ 177 միավորի:

Մեկուկես տասնամյակում տրոլեյբուսը դարձել է քաղաքային տրանսպորտի գերակշռող միջոցներից մեկը: Սակայն, ինչպես տրամվայի, այնպես էլ տրոլեյբուսի երթուղային տվյալներից երևում է, որ համամասնություն չկա կարողությունների ու փոխադրված ուղևորների թվի աճի միջև: Այսպես, շարժակազմն ու սպասարկող անձնակազմը ավելացել են 10—14, իսկ ուղևորների թիվը միայն՝ 3,7—5,6 անգամ:

Շարժական կազմի ոչ-ռացիոնալ օգտագործումն անհամաչափ նյութատեխնիկական մատակարարման, ցածրորակ նորոգումների և երթևեկության վատ կազմակերպման արդյունք է: Պրակտիկան ցույց է տալիս, թե ինչպիսի վնասներ է կրում քաղաքային տնտեսությունը, երբ տրանսպորտի շարժակազմը մեծ պարապուրդներ է տալիս: 1964 թվականի ընթացքում զանազան անսարքությունների պատճառով գծից պարկ են վերադարձել 6780 գնացք: Համանման վիճակ է եղել նաև 1965 թվականին: Բացի դրանից, մեծ պարապուրդներ են տրվել ինչպես գծերում, այնպես էլ պարկերում: Այսպես. 1965 թվականին տրամվայի երկու պարկերը միասին տվել են 63 հազար ժամ պարապուրդ: Պարկից ուշացումով դուրս գալու 17702 դեպք է արձանագրվել: Տրոլեյբուսի պարկը, նույն պատճառներով, տվել է 77 հազար ժամ պարապուրդ և պարկից ուշ դուրս գալու 28813 դեպք:

Աշխատանքը լավ կազմակերպելու, պարապուրդները մինիմումի հասցնելու դեպքում կբարելավվի բնակչության սպասարկումը, տրանսպորտը դուրս կգա ֆինանսական ծանր դրությունից: Տրանսպորտի միջոցների ռացիոնալ օգտագործումը, նրա դեռևս չհայտնաբերված ռեզերվների բացահայտումն ու գործադրումն ունեն տնտեսական մեծ նշանակություն: Հարկավոր է բարձրացնել պահեստամասեր արտադրող, նորոգումներ ու ստուգումներ կատարող անձնակազմի պատասխանատվությունը:

Աշխատանքի որակի վրա բացասաբար է անդրադառնում կադրերի հոսունությունը: Նրանց մեծ մասը պատրաստվում, վերապատրաստվում է և հենց որ սկսում է հմտանալ մասնագիտության մեջ, հեռանում է էլեկտրական տրանսպորտից: Վերջին մի քանի տարվա ընթացքում քաղսովետի գործկոմը տասնյակ հազար քառ. մետր բնակելի տարածություն է հատկացրել տրանսպորտի աշխատողներին, սակայն նրանց մեծ մասը բնակարան ստանալուց հետո թողել է գործը: Այսպիսով, վարչությունն ամեն տարի հարյուրավոր վագոնավարներ, վարպետներ ու փականագործներ է պատրաստում, իսկ հետո



մնում առանց որակյալ կադրերի: Այդ, առաջին հերթին, աշխատանքի վատ պայմանների և նյութական խրախուսության բացակայության հետևանք է:

Ոչ ռիթմիկ երթևեկության կազմակերպման հետևանքով տարեցտարի իջնում է փոխադրվող ուղևորների թիվը. 1962 թվականին 195 վագոններով փոխադրվել են 53 միլիոն 700 հազար ուղևոր, իսկ 1964 թվականին 252 վագոններով՝ 52 միլիոն 985 հազար: Տրոլեյբուսի պարկը 120 տրոլեյբուսով 1962 թվականին փոխադրել է 42 միլիոն 900 հազար ուղևոր, իսկ 1964 թվականին, չնայած դրանց թվի ավելացմանը՝ 37 միլիոն 38 հազար: 1963 թվականին ամբողջ էլեկտրական տրանսպորտը (315 միավոր) փոխադրել է 95,6 միլիոն ուղևոր, իսկ 1965 թվականին, 410 միավորով՝ 97,8 միլիոն: Ինչպես տեսնում ենք, իջել է նաև տրանսպորտով երթևեկող ուղևորների թիվը: Այստեղ մեծ դեր է խաղացել այն, որ վերջին մի քանի տարում քաղաքի ազգաբնակչության մի մասը ապակենտրոնացվել է, դուրս մնալով էլեկտրական տրանսպորտի սպասարկումից. այդ անդրադարձել է ուղևորների խտության վրա: Մյուս պատճառը, մեր կարծիքով, այն է, որ քաղաքացիների զգալի մասը տոմս չի վերցնում:

Բնակչության կուլտուրական սպասարկմանը վատ է ազդում նաև գծերի կառուցման ու շահագործման տեխնիկական կանոնների անտեսումը, որի պատճառով էլ խախտվում է երթևեկության նորմալ ընթացքը: Ըստ տեխնիկական շահագործման կանոնների, յուրաքանչյուր 3 կմ գծից հետո պետք է լինի մեկ փակուղի՝ անսարք տրամվայները կանգնեցնելու և երթևեկությունն արագ վերականգնելու համար: Սակայն Զարբախից մինչև Զեյթուն, կամ Զարբախից մինչև Շահումյան ձգվող երթուղիները հասնում են տասնյակ կիլոմետրերի և չկա ոչ մի փակուղի:

Բնակչության կուլտուրական սպասարկումը կախված է երթևեկության պահանջների կազմակերպումից: Առաջին հերթին անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունը վարորդների նկատմամբ և ապա հասնել այն բանին, որ դեպոներից ստացվեն տեխնիկապես սարքին գնացքներ ու դրանք ճիշտ բաշխվեն ըստ երթուղիների: Այս ամենը, անտարակույս, կնպաստի երթևեկության բարելավմանը: Բայց Երևանում երթևեկությունը դժվարանում է նաև նրանով, որ ավտոբուսի պարկն ու էլեկտրական տրանսպորտն իրենց աշխատանքը չեն կոորդինացնում:

Մեր կարծիքով, քաղաքի ընդհանուր չվացուցակի առկայությունը պայմաններ կստեղծի մասսայական տրանսպորտի բոլոր տեսակների ռացիոնալ օգտագործման համար, ի հայտ կգան նորանոր ռեզերվներ: Առաջնահերթ խնդիր է երթևեկության պարբերականության ճշգրիտը: Լավ կլինի համաքաղաքային չվացուցակը հրապարակել մամուլում, փակցնել տրանսպորտի բոլոր տեսակների կարևոր հանգուցակետերում ու վերջին կայաններում: Ամեն մի քաղաքացի պետք է իմանա, թե տրանսպորտի որ տեսակով ե՞րբ և որտե՞ղ կարող է գնալ:

Համաքաղաքային երթևեկության չվացուցակը կազմելիս առաջին հերթին պետք է հոգալ այն մասին, որ կրճատվի ուղևորի ճանապարհի վրա ծախսվող ժամանակը: Երևանի տրամվայի և տրոլեյբուսի 1965 թվականի չվացուցակը կազմվել է 10 րոպեի պարբերականությամբ. մեկը մյուսից պետք է 10 րոպե ուշ դուրս գա: Եթե մի գնացքը գիծ դուրս չգա կամ անսարքության պատճառով գծից պարկ վերադառնա, այն կհասնի 20—30 րոպեի, որն անհանդուր-

ժելի է։ Նույնն է նաև տրոլեյբուսների երթևեկության պարբերականությունը։ Տրամվայի երկու պարկերն ունեն 223 գնացք, որոնցից պլանավորված է օգտագործելու 100-ը։ Ստացվում է, որ պարկերի օգտագործման գործակիցը 50 տոկոսից էլ ցածր է։

1966 թվականի հունվար ամսվա աշխատանքի արդյունքները ցույց տվեցին, որ շարժակազմի ռացիոնալ օգտագործման և բնակչության կուլտուրական սպասարկման ուղղությամբ տարվող աշխատանքները մնացել են նախորդ տարիների մակարդակին։ Այս տարի նույնպես ցածր է տրամվայների օգտագործման գործակիցը։ Երթուղիներում, ըստ չվացուցակի, նախատեսված է 100 միավոր, բայց դրանց մի մասը զանազան պատճառներով շահագործման չի ուղարկվում։ Հունվար ամսվա ընթացքում երթուղի չեն ուղարկվել 672 գնացք. այդ հավասար է 6 աշխատանքային օրվա։ Վիճակն ավելի վատ է № 1, 3, 4, 5, 7 և 9-րդ երթուղիներում։ № 5 երթուղում մեկ ամսվա համար սահմանված է 360 գնացք, սակայն դրանց թիվը չի անցել 129-ից, այսինքն՝ երթուղային գնացքների 64 տոկոսը։

Հաշվի առնելով էլեկտրական տրանսպորտի կարևորությունը ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում, Երևանի քաղսովետի գործկոմը և հանրապետության վերադաս օրգանները պրակտիկ միջոցներ են ձեռնարկում էլեկտրական տրանսպորտի շարժակազմի քանակն ու նրա տեխնիկական բազան ընդլայնելու ուղղությամբ։ Վերջերս Երևանի քաղաքային սովետի սեսիան 1966 թվականի բյուջեն հաստատելիս էլեկտրական տրանսպորտի զարգացմանը հատկացրեց մեկ միլիոն ռուբլի։ Էլեկտրական տրանսպորտի աշխատանքային պայմանները սերտորեն կապված են քաղաքաշինության զարգացման հարցերի, նրա երթուղիների բացումը՝ մի շարք կոմպլեքս խնդիրների կարգավորման հետ։ Մոտակա երկու տարիներին շահագործման կհանձնվեն Շահումյանը Մալաթիայով երրորդ մասին և Բաքվի փողոցը Կալինինի փողոցին միացնող տրամվայի երթուղիները։ Բնակչության ժամանակը տնտեսելու նպատակով նախատեսված է մոտ ապագայում ստեղծել արագաշարժ ռելսային տրանսպորտ։ Խոշոր, հարմարավետ վագոններով տրամվայի գիծը կունենա 57 կիլոմետր երկարություն. անցնելով առավել մարդաշատ տեղերով, այն չի հատվի մայրուղիներին։ Կավելանա էլեկտրական տրանսպորտի, մասնավորապես տրամվայի շարժակազմը այն հաշվով, որ ներկայիս 10 րոպեի փոխարեն նույն երթուղու գնացքները մեկը մյուսից 4 րոպե միջանցումով ընթանան. դրանով բոլոր երթուղիներում կստեղծվի ինտենսիվ երթևեկություն։ Նման միջոցառումը, անկասկած, կնպաստի բնակչության կուլտուրական սպասարկման գործի կարգավորմանը։

Ապագայում տրոլեյբուսի նոր պարկեր կկառուցվեն 26 կոմիսարների շրջանում և Նոր Արեշում։ Տրոլեյբուսի տնտեսության այդպիսի մեծացումը նպաստավոր պայմաններ կստեղծի բնակչության փոխադրումը քաղաքի բոլոր երթուղիներով կազմակերպելու համար։ Դրա նշանակությունը մեծ է ո՛չ միայն սպասարկման, այլև դատարկ վազքի կրճատումը մինիմումի հասցնելու գործում։ Այս ամենի հետ մեկտեղ նախատեսվում է ձեռք բերել մեծ թվով տրոլեյբուսներ՝ բոլոր երթուղիների միջանցը 3—4 րոպեի հասցնելու համար։

Բնակչության սպասարկումը պատշաճ ձևով կազմակերպելու նպատակով պետք է վերացնել նաև էլեկտրական տրանսպորտի վազքի արագության չափը։ Այժմ Երևանի տրամվայը, որ աշխատում է տասնյակ տարիների նորմատի-



վով, ժամում ունի 14 կիլոմետր արագություն։ Շարժակազմի այժմեականությունն ու վազքի կատարելագործումը, բնականաբար, պահանջ են հարուցում վերանայելու արագությունը, որը կտա շարժակազմի խնայողություն, ինչպես և կնպաստի դրա ռացիոնալ օգտագործմանն ու բնակչության սպասարկման բարելավմանը։ Էլեկտրական տրանսպորտի արագությունը ժամում 20—25 կմ հասցնելու դեպքում կխնայվի շարժակազմի 20—25 տոկոսը, որի միջոցով կլրանա անվաշարժակազմի պակասը։ Արագության ավելացումը կարևոր նշանակություն ունի նաև բնակչության համար, քանի որ վերջին տարիներին Շահումյանի, Զեյթունի, Նոր-Արեշի, Նորքի, Ջարբախի և այլ թաղամասերում բնակարանային շինարարությունը արագ թափ է ստացել, իսկ բանվոր-ծառայողների աշխատավայրը չի փոխվել։ Այժմ երթևեկության ծանր կացություն է ստեղծվել հատկապես Շահումյանից 1-ին, 3-րդ մաս և Ջարբախ, Ջարբախից Շահումյան, Նոր-Արեշ, Զեյթուն և այլ երթուղիներում։ Այդ հետևանք է այն բանի, որ հաճախ Կիրովի, Հայէլեկտրո գործարանների բանվորները բնակարան են ստանում Շահումյանի, Զեյթունի, Կանազի շրջաններում, իսկ Կանազի բանվորները՝ Ջարբախում, Նոր-Արեշում և այլուր։

Երևան քաղաքի բնական պայմաններն ուրույն են, հետևաբար և նրա տրանսպորտի տեսակները պետք է բազմազան լինեն։ Այդ նկատի ունենալով, որոշված է կառուցել ճոպանուղիներ։ Մեր կարծիքով, դրանց թիվը պետք է ավելացնել, հասցնելով 5—6 երթուղու։

Մեծ է Երևան քաղաքի բնակչության բնական և արհեստական աճը։ Այժմյան տրանսպորտի տեսակներն ու փոխադրական կարողությունը մի քանի տարուց չեն ապահովի բնակչության փոխադրումը։ Անհրաժեշտ է ձեռնամուխ լինել մետրոպոլիտենի կառուցմանն ու նախապատրաստմանը։ Այն նպաստավոր պայմաններ կստեղծի ո՛չ միայն ուղևորների սպասարկման կուլտուրան բարձրացնելու, այլև բավականին ժամանակ կտնտեսի, ինչպես և կթեթևացնի քաղաքային տրանսպորտի ծանրաբեռնվածությունը։

Ժամանակն է, որ քաղսովետի գործկոմը զբաղվի անցումների կարգավորմամբ, նաև թունելային անցումների կառուցմամբ, ուր բնակչության ու տրանսպորտի հոսքը մեծ է։

Երկու խոսք էլ մարդատար ավտոտրանսպորտի պարկի մասին։ Երևան քաղաքին սպասարկում է չորս ավտոբուսային պարկ. № 1 և 4 լրիվին, իսկ 2-րդն ու 3-րդը՝ կիսով չափ։ Ժամանակն է ստեղծելու ավտոբուսային մեկ միավորում՝ 600—700 ավտոբուսով, դրանք խումբ-խումբ տեղադրելով քաղաքի տարբեր մասերում։ Մեր կարծիքով, այդ ևս կնպաստի երթևեկության ճկուն ու հստակ կազմակերպմանը։

Կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվների համաձայն ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանով հսկայական միջոցներ են հատկացվում քաղաքային տրանսպորտի բոլոր տեսակների ավելացմանը։ Բավական է նշել, որ հնգամյակի ընթացքում արտադրվելու են 10 հազար տրամվայ, 11 հազար տրոլեյբուս, որոնց ցանցը զգալի չափով ընդլայնվելու է։ Ավտոբուսով փոխադրվող ուղևորների քանակը ավելանալու է 1,9 անգամ։ Բերված թվերը ցույց են տալիս, որ կուսակցությունը և կառավարությունը ամեն ինչ անում են ազգաբնակչության պահանջմունքները բավարարելու համար։ Մնում է, որ այդ ուղղությամբ տրվող միջոցները ռացիոնալ օգտագործել։

Ա. ԲԱՂԴՅԱՆ

«Ամեն մի հասարակարգի տնտեսական հարաբերությունները,— գրում է Հ. Ութմազյանը,— ամենից առաջ ի հայտ են գալիս որպես շահ ու որպես այդպիսին, կյանքի բոլոր ոլորտների շարժիչ ուժն են դրանք՝ հասարակության զարգացման բոլոր ժամանակաշրջաններում» (նույն տեղը, էջ 20)։ Այս քաղվածքի առաջին մասը պատկանում է էնգելսին։ Քննադատելով Պրուդոնին, որը տնտեսական հարաբերությունների մասին դատում էր ոչ թե ըստ տնտեսական օրենքների, այլ հավերժական արդարության սկզբունքի, էնգելսը գրում է. «Ամեն մի հասարակարգի տնտեսական հարաբերություններն ամենից առաջ ի հայտ են գալիս որպես շահ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 18, стр. 27)։ Նա միաժամանակ նշում է, որ տնտեսական հարաբերությունների զարգացումը միաժամանակ սոցիալական էլեմենտների զարգացում է մի կողմից պրոլետարիատի և մյուս կողմից արտադրողական ուժերի, որոնք իրենց զարգացմամբ դուրս են եկել կապիտալիստական հասարակության շրջանակներից և պետք է պատռեն դրանք ու վերացնեն դասակարգային հարաբերությունները, ելնելով հենց հասարակական պրոգրեսի շահերից (նույն տեղը, էջ 269)։ Ինչպես տեսնում ենք, երբ էնգելսը խոսում է շահի մասին, նա նկատի ունի հասարակական արտադրողական ուժերի զարգացման, հասարակական պրոգրեսի շահերը, որը նույնն է, ինչ արտադրողական ուժերի բնույթին արտադրական հարաբերությունների համապատասխանության տնտեսական օրենքը։ Մեր կարծիքով այս ամենը դեռևս չի նշանակում, որ ամեն մի շահ, այդ թվում և ընտանիքի անդամների շահն է կյանքի շարժիչ ուժը և այն էլ հասարակության զարգացման բոլոր ոլորտներում։

Անհատի, ընտանիքի շահի ամենազոր ուժն ապացուցելու համար ընկ. Հ. Ութմազյանը հիմնվում է նաև Լենինի մի հանրածանոթ ցուցումի վրա։

Հայտնի է, որ քաղաքացիական պատերազմից հետո մեր երկիրը ծայր աստիճան քայքայված դրությունից դուրս բերելու և հետագա զարգացումն ապահովելու միակ ելքը ռազմական կոմունիզմից նոր տնտեսական քաղաքականության անցնելն էր։ Ելնելով սոցիալիզմի կառուցման շահերից, Լենինը սովորեցնում էր խելացիորեն օգտագործել թե՛ կապիտալիզմի, թե՛ մանր բուրժուազիայի և թե սոցիալիզմի նյութական ու բարոյական բոլոր լծակները, նրանց օբյեկտիվ ու սուբյեկտիվ խթանները, որովհետև «մեզ հարկավոր է նախ և առաջ ու ինչ էլ ուզում է լինի մեծացնել արտադրությունը» (Երկեր, հ. 33, էջ 47)։

Դա այն ժամանակն էր, երբ սոցիալիստական տնտեսաձևը շատ թույլ էր, իսկ մասնավոր տնտեսաձևը ավելի մեծ ծավալ ուներ։ Այս պայմաններում Լենինը սովորեցնում էր, որ «...ոչ **թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տընտեսական հաշվարկի վրա, աշխատեցեք կառուցել նախ ամուր կամուրջներ, որոնք մանր գյուղացիական երկրում պետական կապիտալիզմի վրայով տանում են դեպի սոցիալիզմ**» (Երկեր, հ. 33, էջ 46—ընդգծումը մերն է—Լ. Հ.)։ Լենինի այս ցուցումը հաճախ է բերվում մեր գրականության մեջ և միշտ ընդգծվում է դրանում նշված առանձնապես մեկ գործոնը՝ անձնական շահը, անձնական շահագրգռվածությունը, ավելի պակաս՝ տնտեսական հաշվարկը և կարծես մոռացության է տրվում ամեն մի խանդավառություն։ Այդպես է վարվում նաև ընկ. Հ. Ութմազյանը, երբ գրում է, որ «...ուշագրավն այն է, որ դեռ այն ժամանակ... հիմնական օղակը Լենինը համարում էր անձնական շահագրգռվածությունը... Նա... առաջարկեց հենման կետը հեղափոխական խանդավառությունից փոխադրել անձնական շահի ու անձնական շահագրգռվածության վրա» (նույն տեղը, էջ 21)։ Իսկ ինչու է այդ օղակից ընկ. Հ. Ութմազյանը դուրս շպրտում «մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության օգնությամբ», «հենվելով տընտեսական հաշվարկի վրա» գործոնները։

Պետք է նկատի ունենալ, որ Լենինը «անձնական շահը» դնում է տնտեսական հաշվարկին հավասար պայմաններում, որովհետև նա նկատի ունի «մանր գյուղացիական երկիր», երբ գյուղատնտեսության մեջ տիրապետում էր մանր ապրանքային տնտեսությունը, երբ սոցիալիստական կացութաձևի հետ միասին մեր երկրում կային ևս չորս կացութաձևեր, որոնք հիմնված էին արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա, որոնց մոտ իսկապես անձնական շահը հանդիսանում է շարժիչ ուժը, իսկ հասարակական շահերը դրսևորվում են որպես անձնական շահերի գործունեության տարերային հետևանքը։

Դժվար է ասել, որ կոլտնտեսային գյուղացիության մոտ մասնավոր սեփականությունից մնացած անհատական շահի ձգտումն ամբողջապես վերացել է։ Կանգնած լինելով հիմնականում սոցիալիստական տնտեսության զարգացման սկզբունքի վրա, նրա մեջ միաժամանակ մնացել է անձնական ունեցվածքի աճի, անձնական շահի այնպիսի տենդենց, որ նպաստավոր պայմաններում կարող է դրսևորվել որպես մասնավոր շահ, անհատական շահագրգռվածություն։



Անհատական, մասնավոր շահը շատ կենսունակ է, այն օրենքով վերացնել չի կարելի, նա պետք է մահանա։ Քանի որ նրա մահացման տնտեսական պայմանները չեն հասունացել, որոշ դեպքերում նա իրեն ցույց է տալիս։ Դրան որոշ չափով նպաստում է ապրանքային արտադրության և արժեքի օրենքի գործունեությունը, առանձնապես կոլտնտեսային սեփականության մեջ։ Անհատական շահի այդ տենդենցն առանձնապես իրեն ցույց է տալիս կոլտնտեսային շուկայում, տնամերձ տնտեսությունների մշակման մեջ և նույնիսկ աշխատանքի նկատմամբ վերաբերմունքում։ Դժբախտաբար մենք հաճախ անհատական շահի այդ տենդենցը դիտում ենք որպես անձնական շահագրգռվածություն, ուշադրություն չդարձնելով նրա բացասական կողմի վրա, իսկ որոշ դեպքերում նույնիսկ խրախուսելով այն։

Այս տեսակետից պետք է մոտենալ հողատարածությունները անհատներին, մանր խմբերին ամրացնելու կամ ընտանիքների մեջ բաժանելու հարցին։ Մեր կարծիքով այդպիսի առաջարկություններ անողները որոշ գիջում են անում անհատական շահերին՝ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու համար։ Նրանք այդ նպատակին հասնելու միակ ելքը գտնում են հողատարածությունները ընտանիքներին բաժանելու մեջ։ Այդ ընկերները կարծում են, թե նյութական շահագրգռվածության բարձրացման, աշխատանքի կազմակերպման ու վարձատրման գործող մեթոդներն ու ձևերը կոլտնտեսություններում սպառել են իրենց դրական կողմերն ու արդյունավետությունը և այժմ մեր գյուղատնտեսության վերելքի ուղին պետք է տեսնել միայն անձնական շահի մեջ, մանր ապրանքային արտադրողին հատուկ անհատական, մասնավոր զգացմունքների գրգռման մեջ։

Այդ նշանակում է, նախ՝ անտեսել կամ թերագնահատել սոցիալիստական գյուղատնտեսական սիստեմի առավելությունները։

Վերցնենք, օրինակ, տնտեսական հաշվարկը՝ տնտեսության վարման սոցիալիստական մեթոդը։ Տնտհաշվարկի սկզբունքներում ամենաճիշտ, ամենահասկանալի կերպով արտահայտվում են նյութական շահագրգռվածության բարձրացման ուղիները, նրա մեջ ամենից ճիշտ կերպով զուգակցվում են անձնական, կոլեկտիվ և հասարակական շահերը։ Տնտհաշվարկի իրականացմամբ բացառվում է հավասարարական բաշխումը, անմիջական կապ է ստեղծվում արտադրության չափի և վարձատրման չափի միջև, բարձրանում է յուրաքանչյուրի պատասխանատվությունը կոլտնտեսային սեփականության ամրապնդման ու զարգացման, հանրային ֆոնդերի խնայման նկատմամբ։ Տնտհաշվարկի կիրառմամբ, յուրաքանչյուր անհատ ձգտում է ընդլայնել հանրային արտադրանքը, որովհետև դրանով է պայմանավորված նրա անձնական եկամուտը։ Միաժամանակ, տնտհաշվարկը բարձրացնում է աշխատողների աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվությունը, որի հետևանքով յուրաքանչյուրն իրեն ճանաչում է որպես տնտեսության տեր և զգում է իր աշխատանքի հասարակական օգտակարությունը։ Տնտհաշվարկը, առանձնապես ներտնտեսային, բրիգադային հաշվարկը ռեալ հնարավորություններ է ստեղծում սոցիալիստական մրցության տարբեր ձևերի առաջացման ու զարգացման համար, նպաստում է կոլտնտեսականների կոմունիստական դաստիարակմանը։ «Հայտնի է,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965) պլենումում,— որ տնտեսությունը ճիշտ վարել կարելի է միայն լավ կազմակերպված տնտեսական աշխատանքի, տնտեսական ճշգրիտ հաշվարկի հիման վրա... Բայց, դժբախտաբար, ներկայումս տնտհաշվարկային սկզբունքները մեր տնտեսություններում թույլ են օգտագործվում»։ Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման կարևոր լծակներ են հանդիսանում նաև ներկայումս մեծ տարածում ստացած կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրությունը դրամական և բնամթերային ձևերով, աշխօրերի կիրառմամբ։

Զգալով հողատարածություններն ընտանիքների միջև բաժանելու և ընտանիքներով մշակելու վտանգը, ընկ. Հ. Ութմազյանը շտապում է ապահովագրել այդ առաջարկությունը։ «Հողատարածություններն ընտանիքներով մշակելու այս ձևը,— գրում է նա,— ամենևին չի փոխում կոլտնտեսության հանրային բնույթը... մանր ապրանքային տնտեսության վերականգնման ոչ մի վտանգ չի ներկայացնում»։

Իհարկե, միամտություն կլիներ հողատարածությունները ընտանիքներին բաժանելու վտանգը ներկայումս տեսնել կոլտնտեսային կարգերի վերացման կամ մանր ապրանքային տնտեսության վերականգնման մեջ։ Տնտեսության սոցիալիստական սիստեմի հաղթանակով մեզ մոտ այդ վտանգը անվերադարձ կերպով վերացել է։ Սակայն չի վերացել անհատական շահերը կոլեկտիվի և հասարակական շահերին հակադրելու վտանգը, քանի դեռ գոյություն ունի հակասություն անձնական ու հանրային շահերի միջև։ Դեռևս չի վերացել արտադրության և արդյունքների բաշխման պրոցեսներում մանր ապրանքային և կապիտալիստական մնացուկների աշխուժացման

վտանգը: Վերջիններս շատ կենսունակ են և դժվար հաղթահարելի, որովհետև առանձին դեպքե-
րում մակերեսի վրա այդ մնացուկները իրենց ցույց են տալիս որպես նորություն, թարմ ու
համարձակ առաջարկություն:
Հողատարածությունները ընտանիքներով մշակելու ձևի առավելությունը ընկ. Հ. Ութմազ-
յանը փորձում է հիմնավորել և տնտեսապես: Այդ եղանակով հողատարածությունները մշակելու
հետևանքով,— գրում է նա,— Մարտունիում առանձին կոլտնտեսականներ ստանում են հեկտա-
րից 200 ցենտներ կարտոֆիլ, իսկ շրջանը միջին հաշվով ստանում է 100 ցենտներ: Նախ, այդ
մեկ ցուցանիշը, առանց վերլուծության, չի կարող ընտանիքով մշակելու առավելության ապա-
ցույց լինել: Եթե ընկ. Հ. Ութմազյանը հաշվարկեր յուրաքանչյուր ցենտներ կարտոֆիլի արտա-
դրության վրա կատարված աշխատանքային ծախսումները, ապա կնկատեր, որ ընտանիքով
մշակելիս տնտեսությունը վնասաբեր է: Այնուհետև, ինչպես կարելի է Մարտունու առանձին
կոլտնտեսականների ստացածը համեմատել ամբողջ շրջանի միջին ցուցանիշի հետ: Օրինակ,
նույն տարին այդ շրջանի Վարդենիկի կոլտնտեսությունը կարտոֆիլի ամբողջ տարածության յու-
րաքանչյուր հեկտարից ստացել է 180 ցենտներ կարտոֆիլ: Բոլորովին զարմանալի չէ, որ հա-
ճախ առանձին օղակներ, բրիգադաներ ստանում են տնտեսության ստացած միջին բերքից 3—4
անգամ ավելի: Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, երբ օղակը, բրիգադան, կոլտնտեսու-
թյունը, առանց ընտանիքներով մշակման ձևի, հեկտարից ստանում են մինչև 300 ցենտներ
կարտոֆիլ, 30—40 ցենտներ ցորեն, մինչև 200—250 ցենտներ խաղող և այլն:
Առաջարկելով հողատարածությունները ընտանիքներով մշակելու ձևը, ընկ. Հ. Ութմազյանը
միաժամանակ նշում է, պետք է զգույշ լինել, հենց սկզբից ևեթ չվարկաբեկել այս ձևը: Դրա
կիրառումը կարդարացվի միայն այն պայմանով, գրում է նա, «եթե արտադրված ամբողջ ար-
դյունքից անհրաժեշտ մասհանումներ կատարվեն տվյալ տնտեսության բնակլիմայական պայ-
մանների առանձնահատկությունների համապատասխան և այն հաշվով, որ անհրաժեշտ չափով
արդյունք մնա ոչ միայն տվյալ բրիգադային, օղակին, ընտանիքին վարձատրելու, այլև աշխա-
տանքի համար նրանց խրախուսելու համար» (նույն տեղը, էջ 26): Հենց ամբողջ խնդիրը նրա-
նումն է, որ եթե այժմ կոլտնտեսություններում ցածր բերք է ստացվում, պատճառն այն է, որ
այդ պայմանները չեն պահպանվում, իսկ եթե դրանք ճիշտ կիրառվեն տնտեսություններում, ապա
դժվար թե որևէ մեկին կարիք լինի մտածելու հողօգտագործման այլ ձևի ացման մասին:
Հայտնի է, որ տնտեսության վարման առաջավոր ձևերն ու մեթոդներն առաջանում են
առաջավոր տնտեսություններում, իսկ որտեղից է վերցրել ընկ. Հ. Ութմազյանը հողատարածու-
թյունները ընտանիքներով մշակելու ձևը: Այդ հարցին պատասխանում է ինքը՝ հեղինակը:
«Սակայն մեզ հետաքրքրում է հարցի այն կողմը, թե ինչու կոլտնտեսականների անձնական
օժանդակ տնտեսություններում նույն հողատարածությունների հաշվով ավելի շատ արդյունք է
ստացվում, քան կոլտնտեսություններում»: Որն է, ըստ հեղինակի, դրա պատճառը: «Մեզ
թվում է,— գրում է նա,— որ... այդ գործում մեծ դեր ունի այն հանգամանքը, որ անձնական
օժանդակ տնտեսությունը վարվում է ընտանիքով և դրա վրա թափված աշխատանքի արդյունքն
ամբողջովին պատկանում է ընտանիքին (ընդգծումը մերն է—Լ. Հ.): Այդ պատճառով էլ նա
լավ է աշխատում, որպեսզի շատ արդյունք ստանա» (նույն տեղը, էջ 27):
Այստեղից ընկ. Հ. Ութմազյանը հանում է այն եզրակացությունը, որ գյուղատնտեսության
մեջ արդյունքների ավելացման առավել արդյունավետ ուղին հողատարածություններն ընտանիք-
ներով մշակելն է: Ահա որն է այդ նոր ուղու ելակետը՝ տնամերձ տնտեսությունները, որովհետև
«դրա վրա թափված աշխատանքի արդյունքը ամբողջովին պատկանում է ընտանիքին», իսկ
կոլտնտեսություններում կոլտնտեսականները վատ են աշխատում, որովհետև դրանցում թափված
աշխատանքի արդյունքը ամբողջովին իրենց չի պատկանում: Թող մեզ ների ընկ. Հ. Ութմազ-
յանը, որ նրա չավարտած միտքը հասցրինք իր տրամաբանական ավարտին:
Ընկ. Հ. Ութմազյանի կողմից առաջ քաշած այս հարցի մեկ կողմը ևս պարզաբանման
կարիք ունի: Նա գրում է, որ ընտանիքը լավ է աշխատում: Բայց հայտնի է, որ նրա աշխա-
տանքն ամբողջովին կատարվում է ձեռքով, քանի որ տնամերձ տնտեսություններում ոչ մի
մեքենա չկա, ընտանիքի անդամները տնամերձ տնտեսությունում աշխատում են հանրային տըն-
տեսությունում աշխատանքն ավարտելուց հետո: Ընկ. Հ. Ութմազյանը մոռանում է, որ կոլտըն-
տեսականի տնամերձ տնտեսությունը խլում է կոլտնտեսականի ամբողջ ազատ ժամանակը, եր-
բեմն կտրում է երեխաներին դպրոցից, իսկ կոլտնտեսականը հաճախ չի մասնակցում հանրային
աշխատանքին:

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



# ՀԱՅԿ ԳԱԲՐԻԵԼԻ ԳՅՈՒԼԻՔԵՎԽՅԱՆ

## (Ծննդյան 80-ամյակի առթիվ)

Սովետական ներկա սերունդը երախտագիտության բարձր վգացումով է հիշում ու գնահատում բոլշևիկյան կուսակցության այն սերնդին, որն իր ուսերի վրա է տարել բանվորական շարժման, սոցիալիստական հեղափոխության, սովետական կարգերի ստեղծման ծանրությունը, կյանքի ու արյան գնով դրել սոցիալիստական նոր հասարակարգի հիմքերը:

Մեր հանրապետության առաջին տասնամյակներին, լենինյան կուսակցության առաջին սերնդի հայ գործիչներից իր բազմակողմանի պարգացմամբ լայնորեն ճանաչված էր պրոֆեսոր Հայկ Գաբրիելի Գյուլիքևխյանը:

Նրան տեսնողներից ու լսողներից ո՞վ չի հիշում լայնաճակատ, թախծոտ աչքերով, ինտելեկտուալ մեծ կարողություններով օժտված այդ անվանի քաղաքական-հասարակական գործչին, որ փիլիսոփայական, գրականագիտական խոր իմացության հետ մեկտեղ արտակարգ համեստ էր:

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու օրից տարիներ շարունակ գրավոր ու բանավոր խոսքով, ինչպես համալսարանական, այնպես էլ ստեղծագործական միությունների և հրապարակախոսական բարձր ամբիոններից ու մամուլի միջոցով նա պրոպագանդել է մարքսիստական ուսմունքը: Նրան սիրում ու հարգում, նրա կարծիքին մեծ կարևորություն էին տալիս Սովետական Հայաստանի մտավորականների բոլոր խավերի ներկայացուցիչները՝ գրողները, գիտնականները, բժիշկները, ճարտարապետները, թատրոնի ու կինոյի աշխատողները, ուսուցիչները, ուսանողները, կուսակցական ու կոմերիտական ակտիվը, որոնց գաղափարական դաստիարակության ուղղությամբ նա շատ բան է արել:

***

Լեռնային Ղարաբաղի Շուշի քաղաքում, ժողովըրդական ուսուցչի ընտանիքում է ծնվել Գյուլիքևխյանը (1886 թվականին): Միջնակարգ կըրթությունն ստացել է հայրենի քաղաքի ռեալական ուսումնարանում: Այստեղ էլ նա սկսել է ծանոթանալ մարքսիզմի ուսմունքին, հետաքրքրվել հասարակական գիտություններով, բանվորական հեղափոխական շարժմամբ, կարդացել Պլեխանովի **Մոնիստական պատմահայեցողության** կար-

**գացման հարցի շուրջ** հոչակավոր գիրքը: Այդ ամենը նրան տանում է դեպի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը:

Կուսակցական գործունեության առաջին շրջանից իսկ իր մտերիմ ընկերների՝ Աշոտ Հովհաննիսյանի ու Իսահակ Դովլաթյանի հետ ուսումնարանի բարձր դասարանների աշակերտներից, արհեստավորների աշակերտներից ու ենթավարպետներից, քաղաքային ուսումնարանի ու հոգևոր սեմինարիայի աշակերտներից Շուշիում կազմակերպում է սոցիալ-դեմոկրատիային համակրողների խմբակներ: Անմիջականորեն կապված լինելով սոցիալ-դեմոկրատական կազմակերպության հետ, նրանք տարածում էին կուսակցական գրականություն և իրենք էլ ակտիվ մասնակցում կուսակցական մամուլի աշխատանքներին, աշխատավորական լայն խավերի շրջանում ծավալում ագիտացիա, հիմնականում «դաշնակցության կողմից հրահրվող շովինիզմի դեմ, որն այդ տարիներին արմատներ էր գցում... ցարիզմի կողմից հրահրվող հայ-թաթարական ընդհարումների հետևանքով»: Շուշիի այդ խումբը հայ սոցիալ-դեմոկրատական կազմակերպության մի մասն էր, որը հարում էր բոլշևիկյան կուսակցության տակտիկային:

Ուսումնատենչ երիտասարդը 1906 թվականի ամռանը մեկնում է Գերմանիա՝ ուսումը շարունակելու (ուր մնում է մինչև 1918 թվականը): Մինչև 1914 թվականի պատերազմը Գերմանիայի մի շարք քաղաքներում (Ենա, Լայպցիգ, Ցյուրիխ) նա ունկնդրում է փիլիսոփայություն, քաղաքատնտեսություն և գրականություն: Ավարտում է Հայդելբերգի համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետը: Վերահաս պատերազմը խանգարում է նրան հայրենիք վերադառնալ: Հենց պատերազմի սկզբին գերմանական իշխանությունները Հայկ Գյուլիքևխյանին որպես ռուսահպատակ, անհուսալի տարր ձերբակալում և ուղարկում են համակենտրոնացման ճամբար՝ սկզբում իբրև քաղաքացիական գերի, իսկ 1916—1918 թվականներին՝ իբրև ռազմագերի:

Գերմանիայում ուսանելու տարիներին Հայկ Գյուլիքևխյանը կտրված չի եղել քաղաքական, կուսակցական կյանքից: Ճիշտ է, դեռևս լրիվ ուսումնասիրված չէ Գերմանիայում վարած նրա գործունեությունը, բայց հայտնի է, որ Կարլ Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսենբուրգի հետ Հայկ Գյուլիքևխյանը ակտիվ մասնակցել է գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության կազմակերպմանն ու հիմնադրմանը: Նա մասնակցել է գերմանական սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության ձախ՝ հեղափոխական թևի՝ Լայպցիգի, Հայդելբերգի կազմակերպությունների գործունեությանը, Ռուսաստանի բանվորական շարժման և կուսակցական կյանքի մասին հոդվածներ գրել «Laibzigir volkszeitung», «Heidelberger volksblatte» թերթերում: Այդ շրջանում նա կարդում է մարքսիստական գրականությունը, ուսումնասիրում Պլեխանովի, Լենինի գործերը և «Искра»-ի համարները: Պլեխանովի թանգարանում (Լենինգրադում) պահպանված են Գյուլիքևխյանի դեռևս 1910 թվականին Պլեխանովին ուղղած մի քանի նամակները:

Գերմանական համակենտրոնացման ճամբարներում եղած ժամանակ ևս, չնայած գերության ծանր պայմաններին ու դաժան հսկողությանը, ռուսահպատակ ռազմագերիների շրջանում նա վարում է ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք, կարդում դասախոսություններ, ռեֆերատներ, ընթերցումներ կազմակերպում մարքսիստական տեսության տարբեր հարցերի շուրջ, մերկացնում գերմանական սոցիալ-դեմոկրատիայի շովինիստական, դավաճանական դիրքը, բացատրում պատերազմի հակաժողովրդական, իմպերիալիստական բնույթն ու նպատակները: Այդ տարիների մասին նա գրում է. մեր ագիտացիոն աշխատանքները չէին սահմանափակվում ճամբարի սահմաններում: Բոլոր կողմերից շրջապատված լինելով Ռուսաստանից քշված բանվորներով և գյուղացիներով, մենք ավելի ուժեղացրինք աշխատանքները փետրվարյան հեղափոխության շրջանում, որովհետև ճամբարային հոծ մասսան և շրջապատի լեհ գյուղացիությունը պահանջում էին պարզաբանել Ռուսաստանում կատարվող իրադարձությունների քաղաքական իմաստը:

Ճամբարում եղած լրտեսների մատնության հետևանքով մի քանի անգամ ֆիզիկական ծանր խոշտանգումների են ենթարկում նրան, կիսաքաղց վիճակում օրերով նստեցնում ստորերկրյա խոնավ նկուղում:

1918 թվականի օգոստոսին ՌՍՖՍՀ Բեռլինի ներկայացուցիչ Իոֆֆեի միջամտությամբ նրան հաջողվում է դուրս պրծնել այդ ճամբարից և գալ Ռուսաստան: Ֆիզիկապես հյուծված ու վատառողջ, նա մի կերպ հասնում է Մոսկվա, բայց սկզբնական շրջանում ի վիճակի չի լինում աշխատել: Որոշ ժամանակ անց նրան ուղարկում են Աստրախան, որպես 11-րդ բանակի քաղբաժնի պրոպագանդիստ և լեկտոր, բանակային կուսդըպրոցի պետ. միաժամանակ նա խմբագրում է այդ բանակի «Красный воин» թերթը (Գյուլիքևխյանից հետո այդ թերթի խմբագիրն է դառնում չապաևյան դիվիզիայի ականավոր կոմիսար, սովետական հայտնի գրող Դ. Մ. Ֆուրմանովը): Աստրախանում նա աշխատում է նաև Հայկական գործերի կոմիսարիատում և Խումարյանի հետ խմբագրում «Կարմիր բանվոր» հայերեն թերթը:

1920 թվականի հուլիսին ՌԿԿ Կենտկոմի կովկասյան բյուրոյի որոշմամբ Հայկ Գյուլիքևխյանն ուղարկվում է Գրոզնի՝ որպես քաղաքային



կոմիտեի քարտուղար և ագիտբաժնի վարիչ: 1920 թվականի դեկտեմբերին կուսակցության Կենտրոնական կոմիտեն նրան գործուղում է Հայաստան, որը նոր էր սովետականացել: Սկզբում նա նշանակվում է «Коммунист» թերթի խմբագիր. 1921 թվականի փետրվարյան ավանտյուրայի ժամանակ նա Ղամարլուի ռազմաճակատում էր, երկրորդ գնդի քաղղեկը և վենքը ձեռքին կռվում դաշնակների դեմ: Ավանտյուրայի ճնշումից հետո շարունակում է խմբագրել «Коммунист» թերթը: 1921 թվականի մայիսին նշանակվում է ՀԿԿ Ալեքսանդրապոլի (այժմ Լենինական) գավառային կոմիտեի պրոպագանդայի բաժնի վարիչ, միաժամանակ խմբագրելով «Կարմիր Շիրակ» թերթը:

1923 թվականից Հ. Գյուլիքևխյանը տեղափոխվում է Երևան, նշանակվում Կենտկոմի ագիտացիայի և պրոպագանդայի բաժնի վարիչ և ընտրվում քարտուղարության անդամ: Այդ տարիներից էլ նա հրապարակ է գալիս իբրև գիտնական, փիլիսոփա, գրականագետ, հրապարակախոս: Իր հարուստ գիտելիքներով կարճ ժամանակամիջոցում լայն ճանաչում գտած բանիմաց գիտնականը նշանակվում է վերածնվող Հայաստանի գիտության առաջին կաճառի՝ Երևանի պետական համալսարանի պրոռեկտոր՝ գիտական գծով:

Այդ տարիներին աշխարհի ծայրերից այդտեղ էին հավաքվում գիտության բոլոր ճյուղերի ականավոր հայ մասնագետները, որոնցից շատերը եվրոպական կրթություն ստացած անվանի գիտնականներ էին:

Մեծ է նորագույն առաջադեմ գաղափարների պրոպագանդիստի երախտիքը սովետահայ այդ մտավորականության գաղափարական դաստիարակության գործում, չէ՛ որ նոր էր ձևավորվում նրանցից շատերի մարքսիստական աշխարհայացքը: Այստեղ արդեն նա հանդես է գալիս որպես հին սերնդի ներկայացուցիչների գաղափարական ուսուցիչ, փորձված խորհրդատու: Նա կրթել ու դաստիարակել է մի ամբողջ սերունդ մարքսիստ փիլիսոփաներ, արվեստի տեսաբաններ, գրականագետներ ու քննադատներ:

Ամենքը ակնածում էին նրանից: Արտակարգ ընկերասեր, մարդամոտ այդ մարդուն միշտ կարելի էր տեսնել շրջապատված անվանի գրողներով, բժիշկներով, ճարտարապետներով, դերասաններով, ռեժիսյորներով:

Պրոֆեսոր Հայկ Գյուլիքևխյանը բացի հայերենից ու ռուսերենից, հիմնորեն տիրապետում էր գերմաներենին, ֆրանսերենին և անգլերենին, հավասարապես զբաղվում ինչպես եվրոպական, այնպես էլ ռուս և հայ կլասիկ գրականությամբ: Նույնպիսի խորությամբ նա խոսում ու գրում էր ինչպես Գյոթեի ու Հայնեի, այնպես էլ Պուշկինի ու Գորկու, Աբովյանի ու Շիրվանզադեի և այլոց մասին: Նրան մատչելի էին արվեստի ու գրականության համարյա բոլոր ճյուղերն ու ժանրերը:

Եթե եվրոպական, ռուսական և հայկական կլասիկ արվեստի ու գրական ժառանգության հարցերով Գյուլիքևխյանն զբաղվում էր տեսականորեն, ապա սովետական գրականության հարցերով զբաղվում էր և՛ տեսականորեն, և՛ գործնականորեն: Հայաստանի պրոլետարական գրողների ասոցիացիայի հիմնադիրներից, Սովետական Հայաստանի գրական ու թատերական քննադատության առաջնեկներից մեկն էր նա: Գյուլիքևխյանը միշտ էլ անդրադարձել է սովետահայ գրականության նշանակալից երևույթներին, հետևել մեր գրականության ստեղծագործական պրոցեսին, դրվատել լավը, ուրախացել նվաճումներով, քննադատել ու մերժել անընդունելին: Սովետահայ գրաքննադատների ավագ սերունդը շատ բան է սովորել նրանից: 20—30-ական թվականներին բազմաթիվ հրապարակային զեկուցումներ է կարդացել նա, գրել ուսանելի գրականագիտական հոդվածներ: Այդ տեսակետից բնորոշ է 1930 թվականին «Խորհրդային Հայաստան» թերթում զետեղված նրա **Գեղարվեստական գրականության հիմնական խնդիրները** հոդվածաշարքը: Այս և այլ հոդվածներում Հ. Գյուլիքևխյանը պաշտպանում է պրոլետարական գրականությունը, պայքարելով նրա զարգացմանն արգելակողների (պրոլետկուլտականների՝ Վորովսկու, Վարդինի և այլոց) դեմ:

Վերոհիշյալ հոդվածում Հ. Գյուլիքևխյանը շոշափում է սովետական գրականագիտությանն այդ շրջանում հուզող հարցերը, ինչպես ձևի և բովանդակության փոխհարաբերությունը արվեստի մեջ, աշխարհայացքի և աշխարհզգացման տարրերի միասնությունը, ոճն ու լեզուն և այլն, և այլն: Սոցիալիստական էսթետիկայի հիմնական սկզբունքների լուսաբանման տեսակետից Հ. Գյուլիքևխյանի արժեքավոր հոդվածներից է **Ֆորմալիզմի և նատուրալիզմի արտահայտությունները մեր կերպարվեստի մեջ,** որը լույս է տեսել 1936 թվականին «Խորհրդային արվեստ» ամսագրում: Այդ հոդվածում հստակ շարադրված են հեղինակի ճիշտ ըմբռնումները սոցիալիստական ռեալիզմի, ժողովրդայնության ու կուսակցականության մասին:

Կոնկրետացնելով իր միտքը արվեստի կուսակցականության մասին, նա գրել է. «Մեր արվեստը կուսակցական արվեստ է. խոր սոցիալիստական բովանդակությամբ, ճշմարտացի, երևույթները բազմակողմանի ընդգրկող տիպականության դրսևորող»: Ուշագրավ է նաև **Կլասիկ ժառանգությունը և սովետահայ գրականությունը** հոդվածը: Խոսելով այն մասին, թե ժամանակակից սովետահայ պոետներն ինչպես են օգտա-

գործում կլասիկ ժառանգությունն իրենց արվեստը կարգացնելու նպատակով, հոդվածագիրը շատ արժեքավոր ու կոնկրետ դիտողություններ է անում, մասնավորապես, սովետահայ բանաստեղծների և նրանց պոեզիայի մասին, նրա սկզբնավորման օրվանից մինչև Հայրենական պատերազմի շրջանը, Չարենցից, Վշտունուց սկսած մինչև Նաիրի Զարյանն ու Համո Սահյանը:

Հայրենական պատերազմի տարիներին Հ. Գյուլիքևխյանն զբաղվում էր հատկապես սովետական դրամատուրգիայի հարցերով: Ահա նրա այդ ուսումնասիրությունները. **Սովետական հայ դրամատուրգիան 25 տարում, Հայրենական պատերազմի շրջանի սովետական ռուս դրամատուրգիայի չորս պիեսների մասին, Սովետական դրամատուրգիան Հայրենական պատերազմի առաջին շրջանում** և այլն, որոնք ի մի ամփոփված լույս տեսան 1948 թվականին առանձին գրքով՝ **Սովետական դրամատուրգիայի մասին:** Այստեղ զետեղված ուսումնասիրություններն այսօր էլ պահպանում են իրենց տեսական, իմացական նշանակությունը և արժեքավոր աղբյուր են սովետահայ դրամատուրգիայի պատմությունն ու տեսությունն ուսումնասիրողների համար: Ահա և Գյուլիքևխյանի քննադատական հոդվածների ժողովածուն, ուր զետեղված են տարբեր տարիներին գրված նրա հոդվածներն ու ուսումնասիրությունները: Հրատարակված գործերով չի սպառվում նրա թողած գրական ժառանգությունը, կան դեռևս արժեքավոր անտիպ ձեռագրեր, որոնք, հուսով ենք, հետագայում կհրապարակվեն:

Արվեստի և գրականության տարբեր գործիչներին տված նրա գնահատականները շիտակ են, ուղղամիտ, անկեղծ ու օբյեկտիվ, խոր գաղափարայնության և մարքս-լենինյան կուսակցականության արդյունք: Հայկ Գյուլիքևխյանը անդուլ պայքարել է գրականության ու արվեստի բարձր գաղափարայնության համար. «Գաղափարազուրկ արվեստը բարոյալքում է մարդկանց ոգին», հաճախ էր ասում նա:

Լինելով սոցիալիստական ռեալիզմի ջատագովը, 1945 թվականին իր **Սովետահայ դրամատուրգիան 25 տարում** հոդվածում նա գրել է. «Մեր ամբողջ գրականությունը, մասնավորապես դրամատուրգիան տառապում է երկու թեքումով՝ ռոմանտիկական սխեմատիզմով և նատուրալիստական էմպիրիզմով ու դրանք հաղթահարելու գծով էր ճանապարհ հարթում իր համար: Հրամայական խնդիր է մեր դրամատուրգների համար սողացող էմպիրիզմն ու սխեմատիզմը հաղթահարելը, որոնք շարունակում են իրենց գոյությունը: Հակառեալիստական այդ շեղումների հիմքը ընդհանուր առմամբ նույնն է: Երկու դեպքումն էլ դրամատուրգը իրականությունը նեղ, սահմանափակ, անհեռանկար տեսանկյունից է դիտում, երևույթների տակ թաքնված էությունը բացահայտելու կարողությունից զուրկ է լինում»:

Խոշոր է Հայկ Գյուլիքևխյանի՝ արվեստագետի երախտիքը մեր գրականության զարգացման, արվեստի աշխատողների նոր սերնդի դաստիարակության գործում:

ՎԱՐԴԱՆ ՂԱԶԱՆՉՅԱՆ
**Բանասիրական գիտությունների թեկնածու**



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԿԱՐԵՎՈՐ ՊՐՈԲԼԵՄԻ ԱՐԺԵՔԱՎՈՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ *

Արևմտյան Հայաստանի ագրարային հարաբերությունների, ինչպես և կարևոր մի շարք այլ պրոբլեմների ամբողջական, գիտական ուսումնասիրությունը մեզ մոտ սկսվել է վերջերս:

Պատմական գիտությունների թեկնածու Ա. Ս. Համբարյանի Ագրարային հարաբերությունները Արևմտյան Հայաստանում խորագիրը կրող աշխատությունը (որը հեղինակի դոկտորական դիսերտացիան էր) զգալի չափով լրացնում է սովետահայ պատմագրության բացը Արևմտյան Հայաստանի ագրարային հարաբերությունների պատմության ուսումնասիրության բնագավառում: Այն առաջին լուրջ, և պետք է ասել, հաջողված փորձն է՝ տալու գիտական, ամբողջական հետազոտություն, նվիրված այդ չափազանց ակտուալ և կարևոր պրոբլեմի լուսաբանմանը:

Հեղինակը հարուստ փաստական նյութի հիման վրա (որի մի մասը գիտական շրջանառության մեջ է դրվում նրա կողմից առաջին անգամ) հանգամանորեն ուսումնասիրել է իրեն հետաքրքրող պրոբլեմը 1856—1914 թվականներն ընդգրկող ժամանակաշրջանում, Թուրքիայի սոցիալ-տնտեսական պատմության ընդհանուր ֆոնի վրա:

Աշխատության մեջ բազմակողմանի լուսաբանված են թուրքական ռազմա-ֆեոդալական բռնապետության ագրարային քաղաքականությունն ու նրա բնույթը, ագրարային հարաբերությունները, հողատիրության և հողօգտագործման կատեգորիաներն ու ձևերը, հարկային քաղաքականությունը, ֆեոդալական ռենտան ու հարկերը, գյուղացիության ֆեոդալական շահագործման ձևերն ու մեթոդները, տնտեսության ճյուղերը:

Հանգամանորեն ցույց է տրված թուրքական պետության ագրարային քաղաքականության բացասական ազդեցությունը հայ ժողովրդի արևմտյան հատվածի տնտեսական կյանքի վրա: Բացահայտված են երկրի արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների, տնտեսական կյանքի քայքայման ու անկման, հայ ժողովրդի ծանր ու անտանելի վիճակի պատճառները, թուրքական բռնակալության ազգային ու կրոնական քաղաքականությունը, որի վրա և խարսխված էր ոչ մահմեդական ժողովուրդների ու, հատկապես, հայերի նկատմամբ նրա վարած ագրարային քաղաքականությունը: Գիտականորեն լուսաբանվել են նաև այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ իմպերիալիստական պետությունների՝ Թուրքիայի նկատմամբ վարած գաղութային քաղաքականությունը, այն կիսագաղութի վերածելու պրոցեսը, նրանց գաղութային քաղաքականության հետևանքով Արևմտյան Հայաստանի տնտեսական կյանքում տեղի ունեցած տեղաշարժերը և դրանց ծանր հետևանքները:

Ա. Համբարյանի ուսումնասիրությունը հարուստ է գիտական արժեքավոր եզրակացություններով և ընդհանրացումներով, որոնք նոր լույս են սփռում Արևմտյան Հայաստանի XIX դարի երկրորդ կեսի և XX դարի սկզբի՝ ինչպես սոցիալ-տնտեսական, այնպես էլ քաղաքական պատմության շատ կնճռոտ հարցերի գիտական ճիշտ լուսաբանման վրա:

Սկզբնաղբյուրների նկատմամբ ցուցաբերելով պատշաճ գիտաքննադատական մոտեցում, հեղինակը հանգել է այն ճիշտ հետևության, որ թուրքական պաշտոնական աղբյուրները քաղաքական ու ֆինանսական նկատառումներով ճիշտ չեն արտացոլում ժամանակի իրականությունը, շատ հաճախ կեղծում են փաստերը: Եվրոպական, որոշ առումով նաև ռուսական նախասովետական պաշտոնական աղբյուրները, ելնելով իրենց պետությունների գաղութակալական քաղաքականությունից, նույնպես տառապում են միտումնավորությամբ և հիմնականում վկայակոչելով թուրքական պաշտոնական տվյալները,

---

1 Ա. Ս. Համբարյան.—Ագրարային հարաբերությունները Արևմտյան Հայաստանում, 342 էջ, ՀՍՍՀ ԳԱ հրատարակչություն, Երևան, 1965 թ.:

ամեն կերպ արդարացնում են հայերի և Հայաստանի նկատմամբ Թուրքիայի վարած քաղաքականությունը։ «Հակառակ իմպերիալիստական շովինիստական շրջանների,— կարդում ենք աշխատության ութերորդ էջում,— արևմտաեվրոպական և ռուսական դեմոկրատները պատմական հարուստ նյութերով ցույց են տվել հայ ժողովրդի արժանիքները, մերկացրել խոշոր պետությունների գաղութակալական քաղաքականությունը և հատկապես թուրքական կառավարության հայաջինջ ռեժիմը»։

Խոսելով հայկական աղբյուրների մասին, որոնք Արևմտյան Հայաստանի ագրարային հարաբերությունների վերաբերյալ համեմատաբար շատ տեղեկություններ են տալիս, Ա. Համբարյանը դրանց հեղինակներին (ըստ նրանց սոցիալական ու քաղաքական հայացքների և ագրարային հարցի նկատմամբ ունեցած վերաբերմունքի) իրավացիորեն բաժանում է չորս խմբի. կղերա-ֆեոդալական, լիբերալ-բուրժուական, ազգային-պահպանողական և հեղափոխական-դեմոկրատական և ըստ այդմ էլ դրսևորում է իր վերաբերմունքը, գնահատում ագրարային հարցի լուծման ասպարեզում հայ հասարակական-քաղաքական այդ հոսանքների ներկայացուցիչների նշած ուղիները։

Խոսելով թուրքական կառավարության ազգային քաղաքականության մասին, հեղինակն իրավացիորեն նկատում է, որ սուլթանների փորձերը՝ բարենորոգումների ճանապարհով կանխելու պետության քայքայման խորացող պրոցեսը, գրեթե ոչ մի արդյունք չտվին, քանի որ դրանց մեծ մասը չիրականացվեց։ Չիրականացվեցին նաև 1856 թվականի մանիֆեստում և 1876 թվականի սահմանադրության մեջ նախատեսված կետերը՝ կայսրության բոլոր հպատակների (անկախ լեզվից, ազգությունից և կրոնից) իրավահավասարության, անձի և ունեցվածքի ապահովության մասին։ Ընդհակառակը, սուլթանական Թուրքիան XIX դարի երկրորդ կեսից, մանավորապես նրա վերջին քառորդից, ավելի սաստկացրեց հպատակ ոչ մահմեդական ժողովուրդների, հատկապես քրիստոնյաների ազգային կեղեքումը։ Թուրք բռնակալների ազգաջինջ նպատակներ հետապնդող այդ քաղաքականությունն ամենահրեշավոր ձևով ու մեթոդներով իրականացվեց հայ ժողովրդի նկատմամբ։ Համիդյան հայաջինջ քաղաքականության իրագործման ամենակարևոր միջոցը դարձավ քրդական ազատագրական շարժումներին հակահայկական ուղղություն տալը և դրանք իրենց նպատակին ծառայեցնելը։

Խոսելով ռազմա-լենային պայմանական հողատիրության վերացման և կալվածատիրական-սեփականատիրական հողատիրության ստեղծման ուղղությամբ 1830-ական թվականներից սկսած թուրքական կառավարության իրականացրած միջոցառումների մասին, հեղինակն այնուհետև հանգամանորեն բացահայտում է 1858 թվականի ապրիլի 21-ին հրապարակված հողային օրենքով սահմանված հողատիրության հինգ կատեգորիաների էությունը, վերլուծում հողօգտագործման կանոններն ու ձևերը։ Ա. Համբարյանը հանգում է այն ճիշտ եզրակացության, որ այդ օրենքն անխախտ թողեց գոյություն ունեցող պետական, կալվածատիրական ու կրոնական հողատիրության ձևերը, իսկ աշխատավոր գյուղացիությունը չապահովեց հողով։ Սակայն հաստատելով և իրավապես ճանաչելով կալվածատերերի սեփականատիրական և գյուղացիների ծխային հողատիրությունը՝ փաստորեն այն ի չիք դարձրեց պետության գերագույն իրավունքը հողի նկատմամբ։

Հողատիրության բնագավառում բուրժուական ագրարային հարաբերություններ արմատավորելու բոլոր միջոցառումները Թուրքիայի պայմաններում փաստորեն կիսատ-պռատ իրականացվեցին և լուրջ տեղաշարժեր առաջ չբերեցին, անհրաժեշտ արդյունք չտվին։ Ընդհակառակը, ինչպես իրավացիորեն նշում է Համբարյանը, սուլթան Աբդուլ Համիդը ամենուրեք, ինչպես և Արևմտյան Հայաստանում, ամեն կերպ պաշտպանում ու ամրապնդում էր ֆեոդալական հողատիրությունը, քանի որ այն իր հուսալի հենարանն էր տեղական ժողովուրդների սոցիալական ազգային շարժումների դեմ կռվելու համար։

Խոր ու բազմակողմանի վերլուծելով Արևմտյան Հայաստանի ֆեոդալական դասակարգի սոցիալ-ազգային կառուցվածքը, հողատիրության տարածված կատեգորիաները, հեղինակը նկատում է, որ երկրի ֆեոդալական դասակարգի մեծամասնությունը կազմում էին քուրդ հողատերերը, որոնք և տիրում էին հողային ֆոնդի մեծագույն մասին։ Հիմնավորված է նաև հեղինակի այն կարծիքը, թե Արևմտյան Հայաստանում հողատիրության ամենատարածված կատեգորիաներն էին՝ կալվածատիրականը և վակուֆային-վանքապատկանը. ինչ վերաբերում է պետական հողատիրությանը, ապա այն շատ աննշան էր։

Սովետահայ պատմագրական աշխատություններից առաջին անգամ գրախոսվող աշխատության մեջ է հանգամանորեն ուսումնասիրվում թուրք նվաճողների ագրարային քաղաքականությունը Արևմտյան Հայաստանում, ցույց տրվում այդ քաղաքականության ծանր հետևանքները։

Խոսելով Արևմտյան Հայաստանում գյուղացիության ֆեոդալական շահագործման ձևերի և գյուղացիության կատեգորիաների մասին, Ա. Համբարյանը նկատում է, որ ամենատարածված



կատեգորիան և շահագործման ձևը մարաբա ինստիտուտն էր։ Հանգամանորեն տրվում են այդ ինստիտուտի էությունը, դրա տարատեսակները։ Իր ձեռքի տակ եղած վիճակագրական տվյալների մանրազնին ուսումնասիրությամբ հեղինակը տալիս է արևմտահայ գյուղացիության ունեցվածքային շերտավորման պատկերը, գտնում է, որ հայ և ընդհանրապես Արևմտյան Հայաստանի գյուղացիությունը սակավահող էր, որի պատճառը ոչ թե հողային ֆոնդի սահմանափակվածությունն էր, այլ լայն մաշտաբների հասած կալվածատիրական հողատիրությունը։ Գյուղացին, բացի սակավահողությունից, տառապում էր նաև իր հողակտորի կտրտվածությունից, որը, թերևս, ոչ մի տեղ այնպես տարածված չէր, ինչպես Արևմտյան Հայաստանում։

Արևմտյան Հայաստանի ֆեոդալական հասարակությունը բազմազգ ժողովուրդների, ցեղերի ու ցեղախմբերի, տարբեր տնտեսաձևերի, տնտեսական, կուլտուրական, կենցաղային զարգացման տեսակետից տարբեր մակարդակների վրա գտնվող, տարբեր դավանանքների ազգային զանգվածների մի կոնգլոմերատ էր՝ նահապետական հարաբերությունների բազմաթիվ մնացորդներով, որոնք և որոշակիորեն պայմանավորում էին նրա սոցիալ-տնտեսական ու քաղաքական կյանքը, նրա արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների զարգացման ընթացքը։ Այն սոցիալ-տնտեսական ու քաղաքական հարաբերությունների բավական բարդ, խառնիճաղանջ հյուսվածք էր և, բնականաբար, նման իրադրությունը դժվար վիճակի մեջ է դնում ուսումնասիրողին։

Ուսումնասիրելով Արևմտյան Հայաստանի հասարակական կյանքում սոցիալ-տնտեսական ու քաղաքական պրոցեսների փոխազդեցությունը, նա կարողացել է բացահայտել իրեն հետաքրքրող ժամանակաշրջանի առանձնահատուկ պատմական օրինաչափությունները, հասարակական, քաղաքական ու տնտեսական երևույթների ներքին կապը, ցույց տալ գործող սոցիալ-տնտեսական, քաղաքական և իրավական օրենքների ու նորմերի ազդեցությունը երկրի պատմական զարգացման պրոցեսի վրա։ Ա. Համբարյանին հիմնականում հաջողվել է արտացոլել ընդգրկած ժամանակաշրջանի պատմական երևույթների էությունը, որը և նրան հնարավորություն է ընձեռել բացահայտելու տարբեր երևույթների միջև եղած ընդհանրությունը և այդ ընդհանրության սահմանները։

Քննարկվող ժամանակաշրջանում Արևմտյան Հայաստանի հասարակական, սոցիալ-տնտեսական ու քաղաքական կյանքը, տեղի ունեցող երևույթները ճիշտ հասկանալու և կողմնորոշվելու և ընդհանրապես երկրի տնտեսական-քաղաքական դեգրադացիայի պատճառները լուսաբանելու համար կարևոր է հեղինակի եզրակացությունն այն մասին, որ եթե Թուրքիայի եվրոպական մասում, նրա կենտրոնական նահանգներում XIX դարի վերջին նկատվում էին կապիտալիստական զարգացման տենդենցներ, ապա նրա ասիական մասում, ինչպես և Արևմտյան Հայաստանում, տեղի էին ունենում հակառակ պրոցեսներ, որոնք հակասում էին երկրի զարգացման ընդհանուր տենդենցներին։

Այդ պրոցեսներն արդյունք էին, մի կողմից՝ իշխող ազգային զանգվածների պատմական զարգացման օրինաչափության և, մյուս կողմից՝ թուրքական կառավարության վարած քաղաքականության, որոնք ազգային-ազատագրական շարժումների վերելքի պայմաններում համապատասխանում էին թուրք իշխողների շահերին։

Աշխատության մեջ, ինչպես ասվեց, հանգամանորեն լուսաբանվել են նաև Թուրքիայի և Արևմտյան Հայաստանի նկատմամբ իմպերիալիստական պետությունների վարած գաղութակալական քաղաքականությունը և նրանց կիսագաղութի վերածելու պրոցեսը։ Հանգամանորեն վերհանված են երկիրը տնտեսապես նվաճելու և քաղաքական ազդեցությունը տարածելու ուղիները, դրանց իրականացման հետևանքներն ու տեղաշարժերը երկրի ու ժողովուրդների տնտեսական կյանքում։ Խոսելով Թուրքիայի զարգացման գործում իմպերիալիստական պետությունների խաղացած բացասական դերի մասին, հեղինակը հանգում է միանգամայն ճիշտ եզրակացության. «Իմպերիալիստական պետությունները,— կարդում ենք աշխատության 138—139 էջերում,— Թուրքիայի անգամ գյուղատնտեսությանը տվեցին այլանդակ կերպարանք, երբ նրա որոշ ճյուղերի նկատմամբ սահմանեցին իրենց մոնոպոլիան և այդպիսով դանդաղեցրին նրանց զարգացման տեմպերը։ Նրանք չբարելավեցին հողի մշակումը, չներմուծեցին արտադրահարաբերությունների նոր կապիտալիստական ձևը, ընդհակառակը, կոնսերվացրին գոյություն ունեցող ֆեոդալական, անգամ նահապետական արտադրահարաբերությունները և խանգարեցին ագրարային հարաբերությունների էվոլյուցիային... Նրանք ուժեղացրին աշխատավորության սոցիալական ու ազգային ճնշումները և... խաղացին բացարձակապես հետադիմական դեր ազգային-ազատագրական շարժումները ճնշելու գործում»։

Աշխատության մեջ փաստական ու վիճակագրական տվյալների հիման վրա արտացոլված են երկրի տնտեսության ճյուղերի զարգացման վիճակը, գյուղատնտեսության ապրանքային բնույթը, արհեստների քայքայման ու մանուֆակտուրայի առաջացման պրոցեսը։

Ա. Համբարյանին հաջողվել է նաև հարուստ



# ՆՈՐ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՏԻ ՄԱՍԻՆ*

Ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը հնարավոր է միայն հասարակական ամբողջական արդյունքի, ինչպես և ազգային եկամտի, արտադրության, բաշխման ու օգտագործման օրինաչափությունների բացահայտմամբ։ Մինչև 1957 թվականը մեր երկրում ազգային եկամուտն ուսումնասիրվել, հաշվարկվել ու պլանավորվել է միայն ՍՍՀՄ մասշտաբով։ Հետագայում, մասնավորապես պարտիայի XXII համագումարից հետո անհրաժեշտ դարձավ հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի պլանավորումն ու հաշվառումը կատարել նաև միութենական հանրապետությունների մասշտաբով։ Այդ ձևով ազգային եկամտի ուսումնասիրությունը ո՛չ միայն նպաստում է ամբողջ Սովետական Միության էկոնոմիկայի պլանավորմանը, այլև հնարավորություն է ընձեռում համեմատելու քանակական և որակական բազմաթիվ տնտեսական ցուցանիշներ և համապատասխան համամասնություններ սահմանելու այս կամ այն պատմական խնդիրը լուծելիս։

Տնտեսական գիտությունների թեկնածու Ցոլակ Մահտեսյանի ուսումնասիրությունը բաղկացած է առաջաբանից և երեք գլուխներից։

Աշխատության առաջին գլուխը վերնագրված է Միութենական հանրապետությունների ազգային եկամտի արտադրության հաշվարկման մեթոդոլոգիան։ Այստեղ հեղինակը հանգամանորեն վերլուծում է հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի տնտեսական բովանդակությունը։ Համառոտակի շարադրված է մինչմարքսյան քաղաքատնտեսության (մասնավորապես անգլիական բուրժուական կլասիկ քաղաքատնտեսության) պատկերացումները հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի վերաբերյալ։ Մերկացված են բուրժուական վուլգար քաղաքատնտեսության ներկայացուցիչների ռեակցիոն, հակագիտական տեսակետներն ազգային եկամտի մասին։

Հատուկ ուշադրության են արժանի հեղինակի դիտողությունները ազգային եկամտի հաշվարկման մեթոդական հարցերի վերաբերյալ։ Միանգամայն ճիշտ է վարվում ընկ. Մահտեսյանը, նշելով, որ «Համախառն արտադրանքը հաշվարկելիս ներգործարանային շրջանառությունը, որպես կրկնահաշվարկի տարր, չպետք է մտցնել նրա ծավալի մեջ» (էջ 33)։ Համախառն արտադրանքի ծավալն ըստ իրացման վայրի համեմատաբար ճիշտ արտահայտելու, կրկնակի հաշվարկից խուսափելու նպատակով հեղինակն անհրաժեշտ է գտնում «...հանրապետության կամ տնտեսական շրջանի համախառն արտադրանքի ամբողջ ծավալի մեջ նյութական ծախսերի բաժինը որոշելիս հանրապետության սահմաններից դուրս գտնվող ձեռնարկությունների նյութական ծախսերը հաշվի չառնել» (էջ 35)։ Վերջապես, իրավամբ, նշվում է, որ ըստ միութենական հանրապետությունների, ազգային եկամտի հաշվարկումը պահանջում է, որ շրջանառության հարկը հաշվարկվի ո՛չ թե իրացման վայրին, այլ արտադրության տեղին համապատասխան։

Գրքում վերլուծված են նաև այն դժվարությունները, որ գոյություն ունեն գյուղատնտեսության մեջ ստեղծվող ազգային եկամտի հաշվարկման պրոցեսում։ Հատկապես ընդգծվում է գյուղատնտեսական տարբեր սեկտորներում եղած գների խայտաբղետությունը և արտադրանքի ապրանքայնության անհամաչափությունը։

Աշխատության երկրորդ՝ ՀՍՍՀ ազգային եկամտի աճման գործոնները գլխում վերլուծվում են ազգային եկամտի աճման հիմնական գործոնները (հասարակական աշխատանքի արտադրողականության աճը և նյութական արտադրության ճյուղերում աշխատողների թվաքանակի աճը)։ Ցույց են տրվում ազգային եկամտի աճման նշված երկու գործոնների փոխհարաբերությունը և տնտեսական նշանակությունը։

Հասկանալի պատճառով հատուկ ուշադրություն է նվիրվել աշխատանքի արտադրողականության բարձրացման գործոնի ուսումնասիրությանը։

Աշխատության երրորդ գլխում ուսումնասիրվում են ՀՍՍՀ հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճն ու ճյուղային կառուցվածքը։ Շոշափվում են արդյունաբերության զուտ արտադրանքի աճման հարցերը։ Գրքում զետեղված վիճակագրական աղյուսակներն արտացոլում են Հայկական ՍՍՀ արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևոր տեսակների ծավալը, աճման տեմպերը, արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտադրության մեջ, արդյունաբերության զուտ արտադրանքի ճյուղային կառուցվածքը և այլն։ Տնտեսագիտական վերլուծության են ենթարկվում արդյունաբերության մեջ հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճման ուղիները։ Անհրաժեշտ ուշադրության են արժանացել արտադրության որակական ցուցանիշների ուսումնասիրությունն ու վերլուծությունը։

Արդյունաբերությունից հետո ուսումնասիրվում և վերլուծվում են գյուղատնտեսության զուտ արտադրանքի աճման օրինաչափությունները։

Աշխատության երրորդ գլուխն ամփոփվում է ՀՍՍՀ ազգային եկամտի աճի ու ճյուղային կառուցվածքի շարադրանքով։ Հեղինակն այստեղ ցույց է տալիս ինչպես ՍՍՀՄ, այնպես էլ ՀՍՍՀ ազգային եկամտի աճման բարձր տեմպերը առաջավոր կապիտալիստական երկրների համեմատությամբ։ Այդ տեսակետից ուշագրավ է, հատկապես, 152 էջի աղյուսակը, որը բացահայտում է ՀՍՍՀ հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճման տեմպերը 1955—1963 թվականներին։

Քննարկելով Հայկական ՍՍՀ ազգային եկամտի կառուցվածքն ըստ տնտեսության սոցիալական ձևերի, ընդգծվում է, որ 1963 թվականին հանրապետության հասարակական արդյունքի 93,6 և ազգային եկամտի 90,7 տոկոսը բաժին էին ընկնում պետական ու կոոպերատիվ-կոլտնտեսային ձեռնարկություններին, իսկ բնակչության անձնական օժանդակ տնտեսություններին՝ համապատասխանաբար՝ 6,4 և 9,3 տոկոսը։

Հետաքրքրությամբ կարդացվող այս աշխատությունը մի հետազոտություն է, որտեղ փաստերի վիճակագրական ուսումնասիրությունը և տնտեսագիտական վերլուծությունը զուգորդված են դրանց տեսական ընդհանրացումներով։

Գրքում հեղինակն անում է քննադատական բազմաթիվ դիտողություններ և արժեքավոր առաջարկություններ։ Միաժամանակ կցանկանայինք գրախոսվող աշխատության առանձին դրույթների շուրջ մի քանի դիտողություն անել։

Մեր կարծիքով, պարզորոշ չէ շահույթի և շրջանառության հարկի ընդհանուր և տարբերիչ կողմերի բացատրությունը։ 21-րդ էջում կարդում ենք. «Չնայած նրան, որ շահույթի և շրջանառության հարկի սոցիալ-տնտեսական էությունը նույնն է, բայց և այնպես նրանց միջև գոյություն ունեն որոշակի տարբերություններ։ Շրջանառության հարկը հանդիսանում է պետության կենտրոնացված եկամուտը, իսկ շահույթը՝ պետական տնտհաշվարկային ձեռնարկությունների զուտ եկամուտը»։

Հայտնի է, որ տնտհաշվարկային ձեռնարկությունների զուտ եկամուտ է ո՛չ միայն շահույթը, այլև շրջանառության հարկը։ Այն հանգամանքը, որ դա ամբողջովին չի ստեղծվում արտադրության այն ճյուղում կամ ձեռնարկությունում, որտեղ իրացվում է, բոլորովին չի ժխտում դրա տնտհաշվարկային եկամուտ լինելը։ Երկրորդ, պետության կենտրոնացված եկամուտ է ո՛չ միայն շրջանառության հարկը, այլև շահույթը (մասհանումների ձևով), ուստի տրված սահմանազատումը չի արտացոլում շահույթի և շրջանառության հարկի միջև եղած իրական տարբերությունները։

Շահույթի և շրջանառության հարկի ընդհանրությունն այն է, որ երկուսն էլ սոցիալիստական հասարակության զուտ եկամտի դրսևորման պատմականորեն գոյություն ունեցող երկու ձևեր են։ Այդ նշանակում է, որ և՛ շահույթի, և՛ շրջանառության հարկի հիմքը հասարակության զուտ եկամուտն է, որի աղբյուրը հավելյալ արդյունքն է։

Գրքում հստակ չի պարզաբանվել նաև շահույթի, շրջանառության հարկի և հավելյալ արդյունքի փոխհարաբերությունը։ 22-րդ էջում կարդում ենք. «Շահույթը և շրջանառության հարկը հանդիսանում են սոցիալիստական հասարակության հավելյալ արդյունքի հիմնական մասը։ Եթե շահույթը հանդես է գալիս միայն որպես հավելյալ արդյունքի բաշխման ձև, ապա շրջանառության հարկը իր մեջ պարունակում է նաև վերաբաշխման տարրեր» (ընդգծումը մերն է— Գ. Ղ.)։

Նախ՝ շրջանառության հարկը ո՛չ թե վերաբաշխման տարրեր է պարունակում, այլ ինքն ամբողջովին հանդիսանում է ազգային եկամտի վերաբաշխման լծակ։ Բայց այս չէ կարևորը տվյալ դեպքում, այլ այն, որ հեղինակը շահույթը և շրջանառության հարկը դիտում է միայն որպես հավելյալ արդյունքի բաշխման և վերաբաշխման ձևեր։ Մինչդեռ, իրականում այդպես չէ։ Շահույթը և շրջանառության հարկը սոցիալիստական հասարակության զուտ եկամտի դրսևորման ձևերն են։ Եվ, չնայած հասարակության զուտ եկամտի մեծ մասը կազմում է հավելյալ արդյունքը, դրանք տարբեր տնտեսական կատեգորիաներ են։ Բաշխման սոցիալիստական հարաբերությունները, ինչպես նաև արտադրանքի

* Ց. Ծ. ՄԱՀՏԵՍՅԱՆ, Ազգային եկամտի արտադրությունը Հայկական ՍՍՀ-ում, «Հայաստան» հրատարակչություն, Երևան, 1965 թ., 160 էջ։

ապրանքային բնույթը, մասնավորապես փողի առկայությունը որոշ չափով կերպարանափոխում, շրջված ձև են տալիս ազգային եկամտի առանձին մասերի օբյեկտիվ շարժմանը, շեղում դրանց անմիջապես տեսանելի ձևը իրական բովանդակությունից: Հասարակության զուտ եկամուտը, ինչպես նաև դրա բաղադրամասերը կազմող շահույթը և շրջանառության հարկը իրենց արտաքին ձևով, դրսևորման անմիջական բնույթով, հանդես են գալիս միայն որպես հավելյալ արդյունք: Իրականում, ազգային եկամտի օգտագործման փուլում դրանց մի մասն իրացվում է որպես անհրաժեշտ արդյունք:

Հստակ չէ նաև բնակչության ռեալ եկամուտների սահմանումը: 26-րդ էջում կարդում ենք. «Բնակչության վերջնական կամ ռեալ եկամուտները հավասար են ազգային եկամտի բաշխումից և վերաբաշխումից ստացված անվանական եկամուտների ու հարկային վճարումների և ոչ ապրանքային ծառայությունների դիմաց կատարված ծախսերի տարբերությունը» (ընդգծումը մերն է— Գ. Ղ.): Նախ՝ բնակչության ռեալ եկամուտները ճիշտ չէ արտահայտել միայն անվանական եկամուտներով, առանց նկատի ունենալու անձնական սպառման առարկաների գների շարժումը: Այդ դեպքում խոսք կարող է լինել միայն բնակչության համախառն անվանական եկամուտների մասին: Երկրորդ, մենք համամիտ չենք այն բանին, որ ոչ ապրանքային ծառայությունների դիմաց վճարումները հանվում են բնակչության ռեալ եկամուտներից, չնայած այդպես են վարվում պաշտոնական վիճակագրությունը, ինչպես նաև տնտեսագետների գերակշռող մեծամասնությունը: Երբ տվյալ ոչ ապրանքային ծառայությունը դառնում է կյանքի, հետևաբար և աշխատուժի վերարտադրության կենսականորեն անհրաժեշտ պայման (բժշկի, ուսուցչի, վարսավիրի ծառայությունը և այլն), ապա նման ծառայության դիմաց վճարը չպետք է հանել ծառայությունն սպառողի ռեալ եկամուտներից: Այստեղ կատարվում է մարդկային գործունեության մի յուրահատուկ փոխանակություն, երբ մեկից որոշ եկամուտ է օտարվում փողի ձևով (ծառայություն ընդունողից), բայց փոխարենը նա սպառում է (նրա համարժեքի չափով) որևէ օգտակար ծառայություն:

Այնուհետև, ցանկալի էր, որ աշխատության մեջ շոշափվեին և պատշաճ ձևով պարզաբանվեին նաև աշխատանքի ինտենսիվության հարցերը:

Նշելով, որ սոցիալիզմը վերացնում է գործազրկությունը որպես սոցիալական երևույթ, լավ կլիներ, որ ընկ. Մահտեսյանը վերլուծեր նաև այն դժվարությունները, որոնք առաջանում են աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածությունն ապահովելու պրոցեսում: Մեր կարծիքով, արտադրության պրոցեսների մեխանիկացման ու հետևողական ավտոմատացումն ու կոմպլեքսային մեքենայացումը այս կամ այն ձեռնարկությունում կամ ճյուղում (անգամ տնտեսական շրջանում) պետք է որոշ քանակությամբ աշխատուժ ազատի: Այդ երևույթն ավելի կծավալվի, քանի որ նոր տնտեսական ռեֆորմով աշխատողների թվաքանակի ցուցանիշը դադարում է պարտադիր ցուցանիշ լինելուց և չի պլանավորվելու: Հետևապես, երկրի այս կամ այն շրջանում, անգամ սոցիալիզմի պայմաններում, հավանաբար, կգոյանա աշխատուժի որոշ ավելցուկ, որը պետք է նկատի ունենալ:

Արված դիտողությունները (որոնց մի մասը հարցադրման և վիճարկման բնույթի են) բոլորովին չեն նսեմացնում այդ հետաքրքրական աշխատության գիտական արժանիքները:

Գ. ՂԱՐԻԲՅԱՆ
Տնտեսական գիտությունների
թեկնածու

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ.
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԻՐՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 06857 | Պատվեր 1686 | Տիրաժ 9850 | Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ | Ստորագրված է տպագրության 25/VII 1966 թ.:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կոմունիզմի կառուցումը և հասարակական հարաբերությունների զարգացումը: *Մ., «Наука» հրատ., 1966, 412 էջ:*

*Կոլեկտիվ այս աշխատության մեջ հետազոտման են ենթարկվել հասարակական հարաբերությունների փոփոխությունների օրինաչափությունները, որոնք զարգանում են սովետական սոցիալիստական հասարակության տնտեսական հիմքի վրա:*

Դասախոսություններ ՍՄԿԿ պատմության շուրջ: *Պրակ 1-ին: «Мысль» հրատ., 1966, 654 էջ:*

*ՍՄԿԿ Կենտկոմին կից կուսակցական բարձրագույն դպրոցի հրատարակած այս դասընթացը դասախոսությունների երեք պրակներից առաջինն է, որ նկատի ունի պրոպագանդիստներին, դասախոսներին, ունկնդիրներին և ուրիշներին:*

Դասակարգային մարտերը կապիտալիստական զարգացած երկրներում: *Մ., «Мысль» հրատ., 1966, 224 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված հոդվածներում հեղինակները շարադրում են բանվորական շարժման վերելքի, Անգլիայի, ԱՄՆ-ի, ԳՖՀ-ի, Ճապոնիայի և այլ զարգացած երկրների բանվորական ու կոմունիստական շարժման միասնության, խաղաղության, աշխատավորների համախմբվածության համար կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ծավալուն պայքարի հարցերը:*

ԳՈՐՈԽՈՎ Ի. Մ. ԵՎ ՈՒՐԻՇՆԵՐ—Գ. Վ. Չիչերին—Լենինյան դպրոցի դիվանագետը: *Մ., Քաղհրատ, 1966, 112 էջ:*

*Հեղինակները հանգամանորեն շարադրել են սովետական իշխանության առաջին դիվանագետի կյանքն ու գործունեությունը: Վ. Ի. Լենինի գնահատմամբ՝ «Չիչերինը հոյակապ, բարեխղճագույն, իմաստուն, գիտակ աշխատող է: Այդպիսի մարդկանց պետք է պահպանել»:*

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության պատմություն 1917—1966 թթ., *երկու մասից. մասն առաջին, 1917—1945 թթ., Մ., «Наука» հրատ., 1966, 478 էջ:*

*Հեղինակային կոլեկտիվը շարադրել է ՍՍՀՄ արտաքին քաղաքականության պատմությունը սկսած Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից մինչև 1945 թվականը: Այդ ժամանակաշրջանի առաջին սոցիալիստական երկրներն էին ՍՍՀՄ-ը և Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը:*

Գիտական կոմունիզմը *(Ուսումնական ձեռնարկ): Ե., «Միտք» հրատ., 1966, 440 էջ:*

*Այս ձեռնարկը գրել են «Գիտական կոմունիզմ» առարկան դասավանդող մի խումբ դասախոսներ: Գիրքը լուսաբանում է գիտական կոմունիզմի էությունը, նրա հիմնավորումը, զարգացումն ու իրագործումը սոցիալիստական երկրներում, պայքարը հակակոմունիզմի և բուրժուական այլ գաղափարախոսությունների դեմ:*

ԻՎԻԶ ԱԼ.— Գյուտարարական արկածներ: *Ե., «Հայաստան» հրատ., 1966, 322 էջ:*

*Հեղինակը պատկերավոր պատմում է աշխարհի խոշորագույն գյուտերի (մեքենաների և շարժիչների, նավարկության և օդագնացության, ռադիոյի և ատոմային էներգիայի և այլն) և գյուտարարների կյանքի ու նրանց ճակատագրի մասին:*

ԼԵՈ—Երկերի ժողովածու: *Տասը հատորով: Առաջին հատոր, Ե., «Հայաստան» հրատ., 1966, 568 էջ:*

*Այստեղ զետեղված է հեղինակի Հայոց պատմության առաջին հատորը, որն ընդգրկում է հայ ժողովրդի հնագույն դարաշրջանը և հասնում մինչև մ. թ. հինգերորդ դարը:*